## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս
ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենա-
գրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդ-
վածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի
տեսությունները՝ 6—8 էջ։
Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հա-
յաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան
ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։
Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հե-
ղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը,
հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդ-
վածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է
ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։
Սույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք։
Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание





# ՎՃՌԱԿԱՆ ԲԵԿՈՒՄ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

ՍՄԿԿ XXIV համագումարը, նոր հնգամյակի գլխավոր խնդիր համարելով ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելքի ապահովումը, նշեց երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այդ թվում և գյուղատնտեսության հետագա արագ զարգացման ուղիները: Համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցական, սովետական, գյուղատնտեսական օրգանների կարևորագույն խնդիրը համարեց գյուղատնտեսության բնագավառում մի այնպիսի պրոբլեմի լուծումը՝ ինչպիսին անասնապահական մթերքների արտադրության աճի ապահովումն է:

Ելնելով կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումներից և հաշվի առնելով հանրապետության աշխատավորության հարաճուն պահանջները, վերջերս ՀԿԿ Կենտկոմի պլենումը լսեց և քննարկեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանի՝ «Հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրները անասնաբուծության հետագա զարգացման գործում ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների լույսի տակ» զեկուցումը և մշակեց այդ բնագավառում հանրապետության կուսակցական, սովետական կազմակերպությունների ու գյուղատնտեսական օրգանների առաջիկա տարիների կոնկրետ անելիքները:

Պլենումը վերլուծության ենթարկելով անցած տարիներին կատար-
ված աշխատանքների արդյունքները, ոչ միայն միջոցառումներ մշակեց
անասնապահության զարգացման գործում եղած թերությունները վերաց-
նելու, այլև նոր ուղիներ նախանշեց նրա շեշտակի վերելքն ապահովելու
և նոր հնգամյակի պլանային առաջադրանքները կատարելու ու գերակա-
տարելու համար: Իսկ նոր հնգամյակի խնդիրները լուրջ են ու պատաս-
խանատու: Բավական է նշել, որ 1975 թվականին, 1970 թվականի հա-
մեմատությամբ, մսի արտադրությունը (կենդանի քաշով) նախատես-
վում է հանրապետությունում ավելացնել 40 հազար տոննայով կամ 48
տոկոսով, այդ թվում կոլտնտեսություններում և պետական տնտեսու-
թյուններում՝ 33,2 հազար տոննայով կամ 64,8 տոկոսով: Կաթի արտա-
դրությունը կաճի 130 հազար տոննայով կամ 36,6 տոկոսով, որից հան-
րային սեկտորում՝ 91 հազար տոննայով կամ 39 տոկոսով: Ձվի արտա-
դրությունը 238 միլիոն հատից կհասնի 400 միլիոն հատի կամ կավելանա
71 տոկոսով: Հնգամյակի տարիներին անասնապահական մթերքների ար-
տադրությունը պետք է ավելանա աննախընթաց արագ տեմպերով: Դրա-
նում, իհարկե, մեծ դեր կխաղան մեր երկրում արդեն լայն ճանաչում
ստացած արդյունաբերական հիմունքներով գործող թռչնաբուծական
ֆաբրիկաները և անասնաբուծական կոմպլեքսները, որոնց տեսակարար
կշիռը անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գոր-
ծում սիստեմատիկաբար կաճի:

Իսկ ինչպիսի՞ խնդիրներ, ի՞նչ միջոցառումներ են անհրաժեշտ կեն-
սագործել անասնապահական մթերքների արտադրության նման աճի
ապահովման համար: Դրանց լուծման պատասխանը տրված է ՀԿԿ Կենտ-
կոմի պլենումի որոշման մեջ, որի կենսագործման համար ներկայումս
հանրապետության կուսակցական, սովետական կազմակերպությունները,
գյուղատնտեսական օրգանները քաղաքական ու կազմակերպական լայն
աշխատանքներ են ծավալել:

Ընթացիկ հնգամյակում հանրապետության անասնաբուծության զարգացումը կընթանա տնտեսությունների մասնագիտացման, անասունների

գլխաքանակի, մասնավորապես, մայրական կազմի աճի, հոտի բուն
կազմի բարելավման, անասունների մթերատվության բարձրացման ուղ-
ղությամբ:
Հնգամյակի տարիներին նախատեսվում է կոլտնտեսություններում և
սովխոզներում կովի կաթնատվությունը հասցնել միջին հաշվով 1765 կգ
կամ ավելացնել 264 կիլոգրամով, ածան հավի ձվատվությունը՝ 160 հա-
տի, ոչխարի բրդատվությունը՝ 2,3 կգ-ի: Իհարկե, ըստ առանձին տնտե-
սական գոտիների, շրջանների ու տնտեսությունների՝ այդ ցուցանիշները
տարբեր են: Վերը նշված խնդիրների ապահովման համար հանրապե-
տության գյուղատնտեսական օրգանները, կոլտնտեսությունները, սով-
խոզները պարտավոր են բարեխղճորեն կազմակերպել անասունների կե-
րակրման ու խնամքի, նրանց մթերատու հատկությունների բարելավման,
կոռանասնաբուժական սպասարկման գործը:
Անասունների գլխաքանակի աճի և մթերքների արտադրության ավե-
լացման գլխավոր պայմանը, ինչպես հայտնի է, կերի բազայի ըստ ամե-
նայնի ստեղծումն ու ամրապնդումն է: Ահա թե ինչու պլենումի կողմից
անասնաբուծության հետագա զարգացման նպատակով մշակված մի-
ջոցառումների մեջ մեծ տեղ է հատկացված կերի արտադրության կազ-
մակերպման ու դրա արդյունավետ օգտագործման հարցերին: Նախա-
տեսվում է 1975 թվականին կերի արտադրությունը կերամիավորներով
հասցնել 1.830 հազար տոննայի, 1970 թվականի 1277 հազար տոննայի
դիմաց: Ընթացիկ հնգամյակում հացահատիկային կուլտուրաների բեր-
քատվության բարձրացման միջոցով զգալիորեն կավելանա հացահատի-
կի արտադրությունը և փուրաժային կերերի արտադրությունը կհասցվի
80 հազար տոննայի: Լուրջ ուշադրություն դարձնելով ոռոգվող ցանքա-
տարածությունների ընդարձակմանը, ջրովի վարելահողերի մի մասը,
մասնավորապես նախալեռնային և լեռնային գոտու տնտեսություններում,
կօգտագործվի բարձր բերքատու կերային կուլտուրաների մշակության
համար: Պետք է ուշի-ուշով հետևել կերային կուլտուրաների զբաղեցրած
տարածությունների պարարտացմանը, ցանքերի ճիշտ ու ժամանակին
մշակությանը, ջրմանն ու խնամքին: Դրա հետ մեկտեղ պետք է հաշվի
առնել այն հանգամանքը, որ հնգամյակի տարիներին հանրապետությա-
նը հատկացվող հանքային պարարտանյութերի քանակը հնարավորու-
թյուն է տալիս հոգալու նաև կերային կուլտուրաների ցանքատարածու-
թյան պարարտացման համար:
Նկատի ունենալով բնական խոտհարքների ու արոտավայրերի խոշոր
տնտեսական նշանակությունը և, մասնավորապես, նրանց անմխիթարա-
կան վիճակը, նախատեսվում է հնգամյակում կիրառել արոտների ու խոտ-
հարքների բարելավման մի շարք կուլտուր-տեխնիկական միջոցառումներ:
Հնգամյակի տարիներին կջրարբիացվեն 130 հազար հեկտար արոտավայ-
րեր: 200—250 հազար խոտհարքներ ու արոտավայրեր կպարարտացվեն,
5000 հեկտար տարածության վրա կստեղծվեն ցանկապատված կուլտու-
րական արոտներ: Լուրջ ուշադրություն կնվիրվի արոտա-մարգագետնա-
յին խոտաբույսերի ու կերային մյուս կուլտուրաների սերմնաբուծության
կազմակերպմանը:
Կերի բալանսում որպես հիմնական տեսակ համարելով խոտը, հե-
տևողական աշխատանք կկատարվի նրա որակական հատկանիշների պահ-
պանման համար: Խոտի բարձր կերային արժեքների պահպանման
նպատակով նախատեսվում է մեծ թափ հաղորդել խոտալյուրի պատ-
րաստմանը: Այդ գործում կարող է օրինակ ծառայել Կալինինոյի շրջանի
Կալինինի անվան սովխոզի փորձը: 1971 թվականին հանրապետությու-
նում կպատրաստվի 3 հազար տոննա, իսկ 1975 թվականին 15 հազար
տոննա խոտալյուր: Անասունների մթերատվությունը բարձրացնելու նը-
պատակով առավել ուշադրություն կնվիրվի հյութալի կերերի՝ սիլոսի, կերի
արմատապտուղների ավելացման վրա: Երկրի առաջավոր տնտեսություն-
ների օրինակով այս տարվանից մեկ մոտ նույնպես որոշ աշխատանք



կտարվի սենաժի պատրաստման, խոտի և մյուս կերային կուլտուրաների
պահպանման առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման ասպարեզում:
Հնգամյակի տարիներին հանրապետությունում կկրկնապատկվի հա-
մակցված կերերի արտադրությունը, շահագործման կհանձնվեն Սպիտակի
և Սևանի նորակառույց ալրաղաց կոմբինատների համակցված կերերի
արտադրամասերը: Կերերի ռեսուրսների ավելացման նպատակով մշակ-
ված միջոցառումների մեջ նկատի է առնված նաև առավելագույն չափե-
րով ավելացնելու սննդի մնացորդների օգտագործումը: Նախատեսված
է հասարակական սննդի օբյեկտներից և քաղաքների բնակիչներից հա-
վաքվող սննդի մնացորդների բազայի վրա կազմակերպել խոզագիրաց-
ման տնտեսություններ, որոնք արդեն 1975 թվականին կարտադրեն 1500
տոննա միս: Կերի բազայի ընդլայնման նպատակով լայն չափերով կօգ-
տագործվեն նաև սննդի արդյունաբերության մնացորդները:
Հաշվի առնելով անասունների ֆիզիոլոգիական, կենսաբանական
պահանջները, միջոցներ են ձեռնարկվում կերը բոլոր կոմպոնենտներով
ապահովելու համար: Միկրոէլեմենտների արդյունաբերության կազմա-
կերպումը մեկ մոտ լուրջ խթան կհանդիսանա հանրապետության անաս-
նաբուծության զարգացման համար:
Ընթացիկ հնգամյակում մոտ 100 միլիոն ռուբլու կապիտալ միջոցներ
կներդրվեն արդյունաբերական հիմունքներով խոշոր թռչնաբուծական
ֆաբրիկաների ու անասնապահական կոմպլեքսների շինարարության հա-
մար, որոնք 1975 թվականին կարտադրեն 10,5 հազար տոննա թռչնի
միս, 5 հազար տոննա կաթ և 205 միլիոն հատ ձու: Ներկայումս կառուց-
ման ընթացքի մեջ են և առաջիկա տարիներին շահագործման կհանձնվեն
Սովետաշենի, Բարձրաշենի թռչնաբուծական և Սովետաշենի խոզաբուծա-
կան՝ արդյունաբերական հիմունքներով ֆաբրիկաները: Արագացվելու է
Սևանի, Լենինականի, Կիրովականի, Նորխարբերդի, Վարդենիսի, Երե-
վանի խոշոր թռչնաբուծական ֆաբրիկաների կառուցումը: Դրանց մի մա-
սի շինարարությունն արդեն սկսված է, իսկ մյուս մասի համար պատ-
րաստվում են նախագծային-նախահաշվային փաստաթղթերը: Շուտով
կսկսվի նաև Հրազդանի, Արտաշատի, Թալինի, Աշտարակի անասնապա-
հական կոմպլեքսների շինարարությունը:
Ընթացիկ հնգամյակի տարիներին հանրապետության գյուղատըն-
տեսությանը հատկացվող 840 միլիոն ռուբլու կապիտալ միջոցների մի
զգալի մասը կներդրվի անասնաբուծության մեջ: Այդ հսկայական կապի-
տալ ներդրումների իրացման համար շինարարական կազմակերպություն-
ները և տրեստները պետք է հիմնովին փոխեն իրենց վերաբերմունքը
գյուղի կառույցների նկատմամբ, որովհետև այդ գործում անհանգստա-
նալու, մտահոգվելու շատ հիմքեր կան: Չէ որ անցած հնգամյակում շարք
չմտան մեծ թվով գյուղատնտեսական արտադրական օբյեկտներ, թերա-
կատարվեցին գյուղական շինարարության պլանային առաջադրանքները:
Դրությունն առանձնապես չի փոխվել նաև ընթացիկ տարվա անցած ժա-
մանակաշրջանում:
Մսի արտադրության ավելացման նպատակով լուրջ ուշադրություն
կնվիրվի անասնաբուծության մի այնպիսի վաղահաս ճյուղի զարգաց-
մանը, ինչպիսին ճագարաբուծությունն է:
Շոշափելի աշխատանք կկատարվի նաև կոլտնտեսականների, բան-
վոր-ծառայողների ընտանիքներին օրենքով սահմանված քանակի սեփա-
կան անասուններով, մասնավորապես կովերով ապահովելու ասպարեզում:
Իհարկե, վերը նշված խնդիրների իրականացումը ներկա գիտա-
տեխնիկական առաջընթացի դարաշրջանում դժվար է պատկերացնել ա-
ռանց կերահայթայթման և անասնապահության աշխատատար պրոցեսնե-
րի մեքենայացման ու էլեկտրիֆիկացման, գիտության նվաճումների ու
առաջավոր փորձի ներդրման: Մշակված միջոցառումներով նախատես-
վում է կովերի էլեկտրակիթը ավելացնել 3,6 անգամ, կերի մեքենայացված
բաշխումը՝ 4,6 անգամ, գոմաղբի հեռացումն ու ջրումը՝ 2,5 անգամ,

խոտի հավաքումը և մամլումը՝ 2,1 անգամ: Այս գործում, բացի գյուղատնտեսական օրգաններից, լուրջ անելիքներ ունեն նաև հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները:

Պլենումի կողմից մշակված միջոցառումների մեջ առանձնահատուկ տեղ է հատկացված գիտությանը: Ընթացիկ հնգամյակի տարիներին անասնաբուծության զարգացման պլանային առաջադրանքների կատարումն ապահովելու համար հանրապետության գիտահետազոտական հիմնարկությունների աշխատանքը ուղղված կլինի անասունների մթերատու հատկությունների, կերային կուլտուրաների բերքատվության բարձրացման, կերերի արտադրության, պահպանման բարձր արդյունավետության, անասնապահությունը գիտական հիմունքներով կազմակերպելու նպատակին: Գյուղատնտեսության բնագավառի մասնագետները և տնտեսությունների ղեկավարները պետք է հետևողական պայքար տանեն գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման ու այդ գործում եղած թերությունների վերացման համար:

Անասնաբուծության զարգացման՝ հնգամյա պլանով սահմանված առաջադրանքների կատարումը հանրապետության կուսակցական, սովետական կազմակերպություններից, գյուղատնտեսական օրգաններից, գյուղի մեր բոլոր աշխատողներից լուրջ ջանքեր ու լարված պայքար է պահանջում: Չպետք է մոռանալ, որ հանրապետության շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում դանդաղ է աճում հանրային անասունների գլխաքանակը, պատշաճ ուշադրություն չի նվիրվում կերի բազայի ամրապնդմանը: Բավական է ասել, որ նախորդ հնգամյակում Գորիսի, Շամշադինի, Սպիտակի, Թալինի, Ղափանի շրջաններում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը համարյա չի աճել, իսկ Եղեգնաձորի, Թումանյանի, Ամասիայի, Հրազդանի և մի քանի այլ շրջանների շատ տնտեսություններում նույնիսկ պակասել է: Արարատի, Անիի և այլ շրջանների առանձին կոլտնտեսություններում նվազել է կովերի գլխաքանակը, իսկ Ստեփանավանի, Կալինինոյի, Կրասնոսելսկի, Գուգարքի, Թալինի շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, պակասել է ոչխարների գլխաքանակը:

Եթե այս բոլորին ավելացնենք, որ հանրապետության շատ տնտեսություններում դեռևս ցածր է կովերի կաթնատվությունը, պետությանը վաճառվող անասունների կենդանի քաշը և բտվածության աստիճանը, պարզ կդառնա, թե ինչպիսի լուրջ միջոցառումներ ու լարված աշխատանք է պահանջվում անասնաբուծության հետագա վերելքի համար:

Անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների հետագա ավելացումը նոր խնդիրներ է դնում մթերող և վերամշակող կազմակերպությունների առջև: Այդ կազմակերպությունները պետք է ուժեղացնեն հսկողությունը, խստորեն պահպանեն մթերքների որակի և արժեքի գնահատման սահմանված կարգը: Հարկավոր է գործն այնպես կազմակերպել, որպեսզի հումք վերամշակող ձեռնարկությունները հնարավորություն ունենան ամառային շրջանում զգալիորեն ավելի շատ արտադրվող անասնաբուծական մթերքները ժամանակին ընդունեն և արդյունաբերական մշակման ենթարկեն:

«Անասնաբուծության հետագա զարգացումը,— պլենումում ասաց ընկ. Քոչինյանը,— պետական մեծ կարևորություն ունեցող համաժողովրդական գործ է, որը պետք է մշտապես գտնվի բոլոր կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում»: Հանրապետության գյուղական կուսկազմակերպություններն այժմ առավել հետևողականորեն պետք է խորամուխ լինեն անասնաբուծության զարգացման հարցերի մեջ, բացահայտեն այդ բնագավառի թերությունները, ընդհանրացնեն ու տարածեն առաջավոր տնտեսությունների արժեքավոր և ուսանելի փորձը: Ներկայումս հնարավոր չէ անասնաբուծությունը վարել նախկին եղանակներով: Կուսակցության առաջադրած նոր խնդիրների ըստ ամենայնի



լուծումը կուսկազմակերպություններից, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներից, գյուղատնտեսական մարմիններից պահանջում է ապահովել գյուղատնտեսական գիտության և արտադրության սերտ կապը, գիտության նվաճումները և երկրի առաջավոր տնտեսությունների ու անվանի անասնապահների լավագույն փորձը ծառայեցնել հանրային արտադրության շահերին, նրա անշեղ վերելքին:

Ներկայումս առաջնակարգ նշանակություն է ստանում անասնաբուծության կադրերի հարցը: Այս ասպարեզում ևս կուսկազմակերպություններն ունեն չափազանց մեծ անելիքներ: Կոլտնտեսություններում ու սովխոզներում անասնապահական ֆերմաները պետք է վստահել գործիմաց ու բարեխիղճ մարդկանց, հեղինակություն վայելող կոմունիստների: Հարկավոր է ամենուրեք ամրապնդել անասնաբուծության բնագավառի կադրերը, ամեն կերպ բարձրացնել նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ: Կուսկազմակերպությունները պարտավոր են բացառիկ հոգատարություն ցուցաբերել անասնապահների ու կթվորների նկատմամբ, որոնք դժվարին պայմաններում անձնուրացաբար պայքարում են նյութական բարիքների արտադրության ավելացման, երկրին այնքան կենսական նշանակություն ունեցող և մեծ պահանջարկ ներկայացնող մթերքներ տալու համար: Հարկավոր է մարդկանց խրախուսել իրենց գործադրած ջանքերի ու հայրենանվեր աշխատանքի արդյունքներով: Նյութական ու բարոյական խթանը պետք է մշտապես գտնվի կուսկազմակերպությունների ու տնտեսությունների ղեկավարների ամենօրյա ուշադրության կենտրոնում:

Աշխատավորների հոգևոր պահանջմունքների բավարարման հարցը կուսկազմակերպությունների գործունեության անկապտելի մասն է: Հեռագնաց արոտավայրերում աշխատող անասնապահը ևս մեծ ցանկություն ունի հաղորդակից լինելու մեր երկրում և աշխարհում տեղի ունեցող անցքերին, ծանոթանալու գիտության ու տեխնիկայի նվաճումներին: Հետևաբար, կուսկազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է՝ իրենց տեսադաշտում պահել անասնապահների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ընդգծեց անասնապահների աշխատանքային, կոմունալ-կենցաղային պայմանները արմատապես բարելավելու, կուլտուրական սպասարկումը պատշաճ ձևով կազմակերպելու կարևորությունը: Իններորդ հնգամյակի տարիներին լեռնային արոտավայրերում կկառուցվեն անասնապահների բարեշեն կացարաններ, բնակելի տներ, կստեղծվեն կուլտուր-կենցաղային հարմարություններ, կբացվեն նոր բարեկարգ ճանապարհներ, կկարգավորվի ջրամատակարարման գործը:

ՀԿԿ Կենտկոմի պլենումի մշակված միջոցառումների նպատակն այն է, որպեսզի խելացիորեն օգտագործենք մեր կուսակցության կողմից ձեռնարկվող միջոցառումները, քաղաքական-կազմակերպական-մասսայական աշխատանքի ծավալման միջոցով ապահովենք հանրապետության անասնաբուծության արտադրանքի զգալի ավելացումը և այդ պրոբլեմը լուծենք հնարավորին չափ արագ, հենց առաջիկա տարիներին: Դա գյուղատնտեսության կարևորագույն բնագավառն է, ուր պետք է վճռական բեկում ստեղծել:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ակադեմիկոս Տ. Ս. ԽԱՉԱՏՈՒՐՈՎ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարն ընդունեց ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանը կազմելու Դիրեկտիվները: Նոր հնգամյակում մեր էկոնոմիկան է՛լ ավելի կզարգանա կոմունիզմի ուղիով, է՛լ ավելի կբարձրանա արտադրաուժերի մակարդակը, ավելի կկատարելագործվեն սոցիալիստական արտադրահարաբերությունները:

Ութերորդ հնգամյակում, որ կարևոր էտապ հանդիսացավ սովետական ամբողջ էկոնոմիկայի պրոգրեսիվ շարժման մեջ, տնտեսական զարգացման տեմպը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, արագացավ: Բարձրացավ հասարակական համախառն արտադրանքի և ազգային եկամտի, հասարակական աշխատանքի արտադրողականության աճման տեմպը, ավելացան բնակչության իրական եկամուտները: Ազգային եկամտի տարեկան աճը 1970 թվականին կազմեց 8,5 տոկոս: Արդյունաբերական արտադրանքի թողարկումը 1966—1970 թթ. ավելացավ 1,5 անգամ: Հնգամյակի վերջին տարում հավաքվեց հացահատիկի, բամբակի՝ մեր երկրի ամբողջ պատմության մեջ ամենամեծ բերքը: Զգալիորեն ընդլայնվեց տրանսպորտի աշխատանքի ծավալը: Այս բոլոր նվաճումներն ամուր հիմք են ստեղծում ՍՍՀՄ էկոնոմիկայի հետագա զարգացման համար:

Իսկ ի՞նչ ուղղությամբ այն պիտի ընթանա: Կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը
սաց. «...այն գլխավորը, որի վրա մենք պետք է հույս դնենք, արտադրու-
թյան արդյունավետության բարձրացումն է: Եթե ավելի պարզ խոսելու լի-
նենք, պրոբլեմի էությունն այն է, որպեսզի աշխատանքային, նյութական և
ֆինանսական ծախսումների յուրաքանչյուր միավորի հաշվով էապես մեծաց-
վի արտադրության և ազգային եկամտի ծավալը: Դա էլ, վերջին հաշվով, հան-
րային աշխատանքի արտադրողականության բարձրացումն է»: Այսպիսով, կու-
սակցությունը և կառավարությունը ժողովրդի առաջ դրել են հասարակական
արտադրության տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու խնդիրը,
որի լուծումը պահանջում է ինտենսիվացնել տնտեսության բոլոր ճյուղերը,



լրիվ օգտագործել նրա մեջ եղած ռեզերվները, ավելացնել, ինչպես կենդանի,
այնպես էլ անցյալ աշխատանքի ծախսումների հատուցումը: Մատնանշված
խնդրի բուն դրվածքը վկայում է սոցիալիստական էկոնոմիկայի հասունու-
թյունը, քանի որ դրա կատարումը հնարավոր է միայն արտադրաուժերի զար-
գացման բավականաչափ բարձր մակարդակի և ժողովրդական տնտեսության
կառավարման հուսալի, ճկուն սիստեմի առկայությամբ:

Առաջադրված խնդրի լուծման կոնկրետ ուղիների ընտրությունը պահան-
ջում է գիտական վերլուծություն և հիմնավորում, որ պետք է տա սոցիալիս-
տական վերարտադրության տեսությունը: Գոյություն ունի տնտեսական զար-
գացման երկու հնարավոր ուղղություն— էքստենսիվ և ինտենսիվ: Էքստենսիվ
ուղղությունը, որ բնորոշ է ինդուստրիալ աճման նախնական փուլերի համար,
այն է, երբ էկոնոմիկան զարգանում է ընդլայնվելով, երբ կառուցվում են նո-
րանոր ձեռնարկություններ, ստեղծվում են նորանոր աշխատատեղեր՝ գլխա-
վորապես եղած տեխնիկայի կիրառման հիման վրա: Այդ ժամանակ արտա-
դրանքն աճում է արտադրական կարողությունների ընդլայնման և լրացուցիչ
աշխատանքային ուժի ներգրավման հաշվին:

Տնտեսական աճման ինտենսիվ ուղին յուրահատուկ է էկոնոմիկայի զար-
գացման ավելի բարձր էտապներին, երբ ժողովրդական տնտեսության բոլոր
ճյուղերում արտադրական հիմնական ֆոնդերը հասնում են մեծ չափերի: Վեր-
արտադրության ինտենսիվ ձևի ժամանակ արտադրությունը զարգանում է նրա
տեխնիկական մակարդակը և աշխատանքի արտադրողականությունը բարձ-
րացնելու, նոր, պրոգրեսիվ տեխնիկա կիրառելու շնորհիվ, երբ բանվորների
թիվը չի փոխվում, իսկ եթե փոխվում է, ապա՝ աննշան չափով: Տնտե-
սական զարգացման ձևերի նման սահմանագծումը որոշ չափով պայմա-
նական է: Իրականության մեջ դրանք սովորաբար գոյակցում, զուգորդվում են,
փոխադարձաբար խաչաձևվում՝ դրանցից մեկն ու մեկի գերակշռմամբ: Մի
կողմից, նոր ձեռնարկությունների շինարարությունը, նոր կարողությունների
գործարկումը, նոր աշխատատեղերի ստեղծումը սովորաբար տեղի է ունենում
ո՛չ թե հին, այլ նոր տեխնիկական հիմքի վրա: Մյուս կողմից, վերարտադրու-
թյան ինտենսիվ ձևը չի բացառում նոր ձեռնարկությունների կառուցումը և նոր
աշխատատեղիների ստեղծումը, գլխավորապես հետապնդելով նոր արտադրու-
թյուններ զարգացնելու, օգտակար հանածոների նոր հայտնաբերված հանքա-
վայրերն օգտագործելու, սակավ զարգացած շրջանների էկոնոմիկան բարձ-
րացնելու նպատակը և այլն:

Մեր գրականության մեջ արդեն ասվել է (օրինակ, Ա. Ն. Նոտկինի կող-
մից), որ գոյություն ունի էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման երկու տեսակ:
Դրանցից առաջինը բնութագրվում է ֆոնդատարության կրճատմամբ, իսկ երկ-
րորդը՝ նրա բարձրացմամբ: Ինչ վերաբերում է ֆոնդատարության կրճատմա-
նը, ապա դա տեղի է ունենում այն դեպքերում, երբ սարքավորման գինը (կամ
թե ընդհանրապես արտադրական ֆոնդերի ծավալը) սարքավորման արտա-
դրողականությունից ավելի դանդաղ է աճում: Այսպես, եթե կրկնակի արտա-
դրողականություն ունեցող նոր հաստոցի գինը ավելանա ընդամենը 1,5 ան-
գամ, ապա նոր հաստոցից (այն լրիվ աշխատեցնելու ժամանակ) կախում
ունեցող արտադրանքի ֆոնդատարության բաժինը կպակասի 25 տոկոսով: Իսկ
այն դեպքում, երբ նոր հաստոցի արտադրողականությունն ավելի պակաս չա-
փով է աճում, քան նրա գինը, արտադրանքի ֆոնդատարությունը բարձրանում
է: Դա սովորաբար համարվում է անբարենպաստ ցուցանիշ, թեև խստիվ ասած,
նոր հաստոցը կարող է արդյունավետ լինել այն դեպքում, եթե արտադրու-
թյան ընթացիկ ծախսերի խնայողությունը թույլ տա բանական (նորմատիվ)
ժամկետի ընթացքում ծածկել նրա գինը: Ըստ էության նման համադրումների
է հանգում կապիտալ ներդրումները ընթացիկ ծախսերի խնայողության հաշվին
ծածկելու հաշվարկների մեծ մասը:

Արտադրանքի ֆոնդատարության ավելացումը կարող է տեղի ունենալ
նաև ձեռքի աշխատանքը մեխանիզմներով փոխարինելու առաջին շրջանում,
երբ նոր սարքավորումը լրիվ չի բեռնավորվում: Օրինակ, գյուղատնտեսական

արտադրության մեխանիզացիան սովորաբար առաջ է բերում ֆոնդատարության աճում։ Դա բացատրվում է այն բանով, որ գյուղատնտեսության մեջ մեքենաներն օգտագործվում են տարվա աննշան ժամանակամիջոցում միայն, իսկ նրանք թանկ արժեն։ Եվ թեև մեքենաների կիրառումը նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրանքի ինքնարժեքի իջեցմանն ու դրա թողարկման ծավալի ավելացմանը, արտադրանքի ֆոնդատարությունը տվյալ դեպքում աճում է։ Տրանսպորտում նոր ուղիների, նավահանգիստների կառուցումը և այլն սկզբում հանգեցնում են ֆոնդատարության ավելացմանը, բայց այնուհետև, փոխադրումների ծավալի ընդլայնմանը զուգընթաց, ֆոնդատարությունը կրճատվում է։ Հայտնի է նմանապես, որ ավտոմատ հաստոցների կիրառումը մեքենաշինության, տեքստիլ արդյունաբերության մեջ, այն դեպքերում, երբ դրանց գինը բարձր է լինում կամ թե դրանք վատ են օգտագործվում, հաճախ ֆոնդատարության բարձրացում է առաջ բերում[1]։

ՍՍՀՄ-ում վերջին տարիների ընթացքում արտադրանքի ֆոնդատարության աճ է նկատվում ինչպես արդյունաբերության, այնպես էլ ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ։ Այդ երևույթը մի քանի պատճառ ունի.— առաջին ստորաբաժանման ֆոնդատար ճյուղերի (էներգետիկա, մետալուրգիա, քիմիական արդյունաբերություն) արագացված զարգացման հետևանքով փոփոխվել է արտադրության կառուցվածքը, հումքի օգտակար բաղադրամասի պակաս պարունակություն ունեցող կամ թե ավելի հեռավոր հանքավայրերի օգտագործման անցնելը, արտադրության զարգացումը նոր շրջաններում։ Ֆոնդատարության ավելացման մեջ փոքր դեր չեն խաղում նաև այնպիսի պարագաներ, ինչպես սարքավորման գների բարձրացումը, սարքավորման ծառայության նորմատիվ ժամկետի կրճատումը՝ մաշված սարքավորումը նորով ավելի շուտ փոխարինելու նպատակով փոխունության գործակցի կրճատումը։ Որոշ դեպքերում նույնիսկ այնպիսի առաջադիմական միջոցառումներ, ինչպես արտադրության մեքենայացումը և ավտոմատացումը, ինչն արդեն ասվել է, կարող են ֆոնդատարության բարձրացում առաջ բերել։

Սակայն այդ պատճառներից շատերը կարելի է վերացնել արտադրության ներքին ռեզերվներն ավելի լրիվ օգտագործելու, արտադրության մեջ առաջավոր տեխնիկա և տեխնոլոգիա արմատավորելու, արտադրությունն ու աշխատանքն ավելի լավ կազմակերպելու շնորհիվ։ Դրա համար էլ հազիվ թե ճիշտ լինի հավասարության նշան դնել ինտենսիֆիկացման երկու ուղու միջև, որքան որ ֆոնդատարության բարձրացումը շատ դեպքերում առաջ է գալիս թերությունների, դիսպրոպորցիայի պատճառով. չի կարելի չընդունել, որ ինտենսիֆիկացումը, երբ ֆոնդատարությունը նվազում է, ավելի ցանկալի է և ավելի է համապատասխանում հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու խնդիրներին։ Այդ արդյունավետության ընդհանրացնող ցուցանիշը ազգային եկամտի հարաբերությունն է նրա ստացման ծախսերին։ Ազգային եկամուտը որպես սոցիալիստական արտադրության էֆեկտ դիտելը որոշվում է նրանով, որ այն ինչպես նյութական արտադրության ընդհանուր արդյունքն է, այնպես էլ սպառման ու կուտակման համար հասարակության բոլոր ծախսումների, ժողովրդի նյութական բարեկեցությունը բարձրացնելու և արտադրության հետագա աճման աղբյուրը։ Վերջին 10 տարիների ընթացքում ազգային եկամուտը ՍՍՀՄ-ում աճել է 98,5 տոկոսով, այսինքն՝ համարյա եր-

[1] Արդյունաբերական տեսակետից այնպիսի զարգացած կապիտալիստական երկրում, ինչպիսին ԱՄՆ է, XIX դարում արտադրության մեքենայացման արագացված պրոցեսի և ձեռքի աշխատանքը մեքենաներով փոխարինելու հետևանքով ճյուղերի մեծ մասում տեղի էր ունենում ֆոնդատարության աճում. հետագայում, XX դարում, ֆոնդատարությունը նվազեց։ Այնուհետև, երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակամիջոցում արտադրանքի ֆոնդատարությունը նորից բարձրացավ, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, տեխնիկական պրոգրեսի արագ տեմպի հետևանքով, սկսեց կրճատվել։



կու անգամ, այնինչ ԱՄՆ-ում նույն ժամանակամիջոցում ազգային եկամուտն աճել է 50-ից փոքր-ինչ ավելի տոկոսով։ Նոր հնգամյակում, ըստ ՍՄԿԿ XXIV համագումարի Դիրեկտիվների, ազգային եկամուտը կաճի 37—40 տոկոսով։ Սակայն կարևոր է ազգային եկամտի ո՛չ միայն ծավալը, այլև նրա նյութեղեն կազմը, որը պետք է համապատասխանի հասարակության պահանջմունքներին և նրա զարգացման հեռանկարներին։

Երբեմն այն կարծիքն է հայտնվում, թե իբր հասարակական արտադրության արդյունավետության ցուցանիշ է ծառայում ազգային եկամտի տեսակարար կշիռը հասարակական համախառն արտադրանքի մեջ։ Այդ դրույթի հետ չի կարելի համաձայնել ահա թե ինչ պատճառներով։ Նախ, արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման հետևանքով առաջացած տեխնիկական պրոգրեսը պայմանավորում է, արտադրանքի մեկ միավորի վրա աշխատանքի ընդհանուր ծախսումների կրճատման դեպքում, անցյալ աշխատանքի ծախսումների տեսակարար կշռի ավելացում և կենդանի աշխատանքի ծախսումների պակասեցում։ Այս ամենի հետևանքով հասարակական արտադրանքի մեջ նյութական ծախսումների բաժինն աճում է, իսկ ազգային եկամուտը, որի մեջ մարմնավորված է կենդանի աշխատանքը, կրճատվում է։ Երկրորդ, հասարակական համախառն արտադրանքի մեծությունը, այն հաշվառելու ներկայիս (գործարանային) մեթոդի դեպքում, կարող է փոխվել պարզապես կարգահամարային հաշվառքը ձևականորեն փոխելու հետևանքով։ Օրինակ, եթե արտադրական պրոցեսի առանձին փուլեր վերածվում են ինքնուրույն միավորների և հաշվետվություն ներկայացնող ձեռնարկությունների քանակը դրանով իսկ ավելանում է, համախառն արտադրանքի արժեքային արտահայտությունը կրկնակի հաշվառման հետևանքով աճում է։ Եվ, ընդհակառակը, ձեռնարկությունների մեքենայացման դեպքում այդ արտահայտությունը նվազում է։

Վերջին տարիներս տնտեսագետների շրջանում բավական լայն տարածում է գտել այն տեսակետը, որի համաձայն հասարակական արտադրության արդյունավետությունը պետք է որոշել ազգային եկամտի տարեկան աճը նյութեղենացած և կենդանի աշխատանքի տարեկան աճի գումարի հետ համադրելու միջոցով։ Այդ կարծիքն առաջին հայացքից համոզիչ է թվում։ Համենայն դեպս, հազիվ թե կարելի լինի առարկել ոչ միայն անցյալ, այլև կենդանի աշխատանքի ծախսումները հաշվի առնելու անհրաժեշտությունը։ Սակայն ծախսումների գումարման առաջարկված եղանակի հետ համաձայնել չի կարելի գումարվող մեծությունների չափականության տարբերությունների պատճառով։ Իսկապես որ կապիտալ ներդրումները միանվագ ծախսումներ են, որոնք ստեղծում են արտադրական մի շարք ցիկլերի ընթացքում ծառայող հիմնական ֆոնդեր։ Իսկ բանվորների աշխատավարձը, ինչպես նաև հումքի, վառելանյութի և այլ ծախքերը ընթացիկ ծախսումներ են, որոնք կապիտալ ներդրումների հետ գումարելն անօրինական է անկախ այն բանից, թե խոսքը վերաբերո՞ւմ է արդյոք այդ ծախսումների լրիվ մեծությանը կամ թե տարվա ընթացքում դրանց աճին։ Կապիտալ ներդրումների հետ կարելի է գումարել միայն շրջանառու ֆոնդերի (բայց, իհարկե, ոչ տարեկան նյութական ծախսումների) աճը, որքան որ այն միանվագ է, ինչպես նաև նյութական արտադրության աշխատողների աշխատավարձի ֆոնդի միանվագ ավելացումը, բայց ոչ տարեկան ֆոնդի, այլ «շրջանառու» ֆոնդի կամ թե, ավելի ճիշտ, փոխանցիկ միջոցների, որոնք ավանսավորվում են աշխատավարձի վճարման համար՝ մեկ լրիվ շրջանառության ժամանակ։ Ծախքերի այդ երեք տեսակի գումարը հիմնականում սպառում է արտադրության ընդլայնման ծախսումները, որոնց շնորհիվ, որպես այդ ծախսումների արդյունք, գոյանում է ազգային եկամտի տարեկան աճը։ Ազգային եկամտի այդ հարաբերությունը տարվա ընթացքում կատարված ծախսումների աճի մատնանշված գումարին՝ կարելի է դիտել որպես հասարակական արտադրության արդյունավետության ավելի լիակատար ցուցանիշ (մենք այստեղ մի կողմ ենք թողնում ժամանակավոր լագի* հարցը, որը պահանջում է հատուկ վերլուծություն)։

* Նավի անցած տարածությունը չափող գործիք։

չափ լայնորեն մեքենայացնելու դեպքում, աշխատանքի արտադրողականության աճման ընդհանուր տեմպն էապես կբարձրանա արդյունաբերության մեջ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը կնպաստի նաև հին սարքավորման նորացումը։ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ մաշված սարքավորումը դուրս հանելը կազմում է տարեկան 2—3 տոկոս. այդ պատճառով էլ գործող սարքավորման զգալի մասը հնացած է. դրա ոչ փոքր բաժինը 20 և ավելի տարեկան է։ Այդ սարքավորումն օգտագործելու ժամանակ աշխատանքի արտադրողականությունը երբեմն 3—4 անգամ պակաս է, քան ժամանակակից սարքավորում կիրառելու ժամանակ։

Աշխատանքի արտադրողականության աճման վրա մեծ ազդեցություն է գործում արտադրության ստրուկտուրայի կատարելագործումը— տեխնիկական տեսակետից պրոգրեսիվ ճյուղերի ավելի արագ զարգացումը, ինչպես նաև նոր, ավելի խնայողական նյութերի գործածումը, որոնք պայմանավորում են հասարակական աշխատանքի ծախսերի կրճատում։ Խոսքը վերաբերում է մետաղները պլաստմասսաներով փոխարինելուն, բնական թելը՝ սինթետիկով, ածուխը՝ նավթով, գազով և դրանց վերամշակման արտադրանքներով և այլն։ Անշուշտ, այդպիսի փոխարինումը կարող է իրագործվել այն չափով, որ փոխարինող նյութերը համապատասխանեն պահանջմունքների որոշ տեսակներին (օրինակ, մեքենաների առանձին դետալներ, ավտոմոբիլների անվադողեր, կորդ, վարագուրման գործվածքներ թողարկելու համար և այլն). այդ փոխարինումը պահանջում է կատարել մի շարք էկոնոմիկական հաշվարկումներ և համադրումներ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը մեծ չափով նպաստում է աշխատանքի կազմակերպման բարելավումը։ Շատ ձեռնարկություններ աշխատանքային ուժի զգալի ռեզերվներ ունեն. դա վկայում է, որ աշխատանքային ռեսուրսները բավարար չափով չեն օգտագործվում։ Մինչդեռ, ինչպես ցույց է տալիս Շչեկինի կոմբինատի և այդ էքսպերիմենտը կատարած մյուս ձեռնարկությունների փորձը, արտադրության ծավալը կարելի է մեծացնել նաև բանվորների թիվը կրճատելու ժամանակ— աշխատանքի արտադրողականության աճման հաշվին՝ աշխատողների նյութական շահագրգռվածությունն ուժեղացնելու դեպքում։ Տեխնիկական պրոգրեսի և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու հետևանքով ազատված բանվորները պետք է վերաբաշխվեն աշխատուժի պակաս ունեցող մյուս ձեռնարկությունների վրա։ Աշխատուժի օգտագործումը ձեռնարկություններում բարելավելու և նրա պլանաչափ վերաբաշխման հարցերը տնտեսական հետազոտությունների կարևոր թեմա է։

Գիտա-տեխնիկական պրոգրեսի բարձր տեմպը թելադրում է որակյալ աշխատուժի պատրաստման և վերապատրաստման սիստեմը կատարելագործելու անհրաժեշտությունը, առանց այդ սիստեմի կատարելագործման չի կարելի ապահովել աշխատանքի արտադրողականության աճումը։ Գնալով ավելի բարդ սարքավորման կիրառման հետ զուգընթաց ուժեղանում է միջնակարգ մասնագիտական և նույնիսկ բարձրագույն կրթություն ունեցող բանվորական կադրերի պահանջը։ Կառավարման ավտոմատացված սիստեմների, էլեկտրոնային-հաշվողական տեխնիկայի տարածումը պահանջում է պատրաստել ծրագրողներ և այլ մասնագետներ, որոնք ընդունակ լինեն կառավարելու ավտոմատիկ սարքերը, իրագործել դրանց կարգավորումն ու վերանորոգումը։ Գնալով ավելի հրատապ է դառնում նաև այնպիսի մասնագետների պահանջը, որոնք աշխատեն ավտոմատ գծերի, ծրագրային կառավարում ունեցող հաստոցների վրա։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը էապես կախում ունի աշխատանքի նկատմամբ նյութական և բարոյական խթանների օգտագործման աստիճանից։ Աշխատանքի վարձատրության ներկայումս կիրառվող սիստեմները բարելավման կարիք ունեն։ Աշխատավարձը պետք է աշխատողներին առավելագույն չափով շահագրգռի բարձր որակավորում ձեռք բերելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրության ծախքերը



կրճատելու, արտադրանքի որակը բարձրացնելու գործում։ Նյութական շահագրգռվածությունն ուժեղացնելու հետ միասին գնալով ավելի մեծ նշանակություն ունեն աշխատանքի նկատմամբ բարոյական խթաններն ամեն կերպ ամրապնդելու դերը, սոցիալիստական մրցության զարգացումը, լավագույն աշխատողների խրախուսումը՝ նրանց անունները պատվո տախտակի վրա գրանցելու միջոցով, շքանշաններով և մեդալներով պարգևատրելը. պատվավոր կոչումներ շնորհելը և այլն։

Հասարակական աշխատանքի արտադրողականության աճումն անմիջականորեն կապված է ձեռնարկությունների, ճյուղերի, ամբողջ ժողովրդական տնտեսության կառավարման կազմակերպությունը բարելավելու հետ։ Էկոնոմիկայի զարգացման բարձր մակարդակի, գիտա-տեխնիկական պրոգրեսի բարձր տեմպի, բարդացող տնտեսական կապերի պայմաններում հսկայական չափով աճում է վերամշակման ենթակա ինֆորմացիայի ծավալը, ուժեղանում է որոշումներն արագ կայացնելու անհրաժեշտությունը, մեծանում է սխալ որոշումների հետևանքով ստացվող վնասի չափը և այլն։ Նախկին մեթոդներով կառավարումն այլևս չի համապատասխանում այդ նոր պայմաններին։ Բացարձակապես պարտադիր է դառնում ժամանակակից պահանջներին համապատասխանող նոր մեթոդների օգտագործումը— կառավարման նոր միջոցներ և ամենից առաջ կառավարման ավտոմատացված սիստեմներ (ԿԱՍ)։ Մեր երկրում արդեն կան հարյուրավոր ձեռնարկություններ, որտեղ այս կամ այն չափով կիրառվում են արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կառավարման ավտոմատացված սիստեմներ (ԱԿԱՍ), ավելի քան 700 հաշվողական կենտրոններ։ Բայց դա միայն սկիզբն է. ԿԱՍ-ն ու ԱԿԱՍ-ը պետք է շատ ավելի մեծ չափով զարգանան, ընդգրկեն խոշոր ձեռնարկությունները և ամբողջ ճյուղեր[1]։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի Դիրեկտիվների համաձայն՝ հաշվողական տեխնիկայի միջոցների թողարկումը հնգամյակում կավելանա 2,4 անգամ, այդ թվում ԷՀՄ-ինը՝ 2,6 անգամ։ Կավելանա հաշվողական կենտրոնների թիվը, կբարելավվեն ինֆորմացիայի սիստեմը, կապի սիստեմը, ինչպես նաև կիրագործվեն այլ միջոցառումներ, որոնց նպատակն է պլանավորման և կառավարման միասնական ավտոմատացված սիստեմ ստեղծել ժողովրդական տնտեսության մեջ։ Այդ կապակցությամբ տնտեսագիտության առաջ ծառանում են շատ կարևոր խնդիրներ— տնտեսագիտությունը պետք է կոնկրետ հանձնարարություններ մշակի և առաջարկի պլանավորման և կառավարման մեջ էկոնոմիկա-մաթեմատիկական մեթոդներ և էլեկտրոնային հաշվողական տեխնիկա կիրառելու, պլանավորումը վերակառուցելու, ինչպես նաև հաշվետվությունը փոխելու միջոցառումների, որոնք անհրաժեշտ են ժողովրդատնտեսական այդ վիթխարի խնդրի լուծման համար։

Մեծ նշանակություն ունի արտադրության կառավարման կազմակերպական ձևերի կատարելագործումը և, մասնավորապես, արտադրական միավորումների ստեղծումը։ Ձեռնարկությունների միավորումները մի շարք լուրջ առավելություններ են ընձեռում առանձին ձեռնարկությունների համեմատությամբ։ Դրանք մեծ ճկունություն և մանևրունակություն են ապահովում ընդհանուր միջոցները տնօրինելու գործում. միավորումների համար զգալիորեն հեշտանում է պայմանագրերի կնքումը հայթայթողների և սպառողների միջև (քանի որ կոնտրագենտների թիվը կրճատվում է), ավելանում են վարկն օգտագործելու հնարավորությունները՝ կապիտալ ներդրումների, ներառյալ նոր ձեռնարկությունների շինարարության ներդրումների համար, հեշտանում է նոր

1 ԱՄՆ-ում ԿԱՍ-ի լայն արմատավորումը և ԷՀՄ-ի կիրառումը հանդիսացան այն կարևոր գործոններից մեկը, որն ապահովեց ԱՄՆ-ի տեխնիկա-տնտեսական գերակշռությունը Եվրոպայի կապիտալիստական երկրների նկատմամբ։ Որոշ գնահատումների համաձայն էլեկտրոնային-հաշվողական մեքենաների կիրառումը թույլ է տվել աշխատանքի արտադրողականության մակարդակն ԱՄՆ-ում բարձրացնել ոչ պակաս, քան 10—15 տոկոսով։

տեխնիկայի, մասնավորապես ԿԱՍ-ի և ԱԿԱՍ-ի արմատավորումը։ Բարձրանում է դրանց օգտագործման արդյունավետությունը և այլն։

Ժողովրդական տնտեսության կառավարումը բարելավելու հետ կապված կարևոր հարց է ղեկավար կադրերի, արտադրության կազմակերպիչների-կառավարիչների, դիրեկտորների պատրաստումն ու վերապատրաստումը։ Տեխնիկայի պրոգրեսը, ԷՀՄ-ի, ԿԱՍ-ի կիրառումը պահանջում են տիրապետել կառավարման նոր մեթոդները։ Շատ դժվար է հույսը դնել այն բանի վրա, որ այդ մեթոդները կարող են յուրացվել գործնական աշխատանքի ընթացքում, աշխատանքի պրոցեսում։ Այդ դեպքում հնարավոր հանդիսացող սխալները շատ ավելի թանկ կնստեն, քան մասնագիտական ուսուցման և ղեկավարման այլ մեթոդների յուրացման ծախսերը։ Ղեկավար կադրերի վերապատրաստումը կատարվում է հատուկ ֆակուլտետներում, դասընթացներում։ Գիտության և տեխնիկայի պետական կոմիտեին կից այդ նպատակով ստեղծված է և սկսել է գործել կառավարման ինստիտուտը։

Հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գլխավոր ուղիներից մեկը արդյունքի նյութատարության կրճատումն է (օրինակ, մեկ ձիաուժի շարժիչի քաշը, մեկ կիլովատժամ էլեկտրաէներգիայի ըստացման համար պայմանական վառելանյութի ծախսումը և այլն)։ Բարձր նյութատարությունը վկայում է, որ ելակետային հումքից և վառելանյութից ստացվող պատրաստի արտադրանքը բավարար չէ։

Մեր ժողովրդական տնտեսության մեջ արդյունահանող արդյունաբերության (գյուղատնտեսության հետ միասին) տեսակարար կշիռը մեծ է. այնտեղ զբաղված է բոլոր աշխատողների 40 տոկոսը և այնտեղ գործում է արտադրական ֆոնդերի ավելի քան 25 տոկոսը։ Մենք հումք գրեթե չենք ներմուծում, այլ, ընդհակառակը, այն արտահանում ենք՝ հատկապես դեպի սոցիալիստական երկրները։ Դրա համար էլ մենք հարկադրված ենք զարգացնելու արդյունահանող արդյունաբերություն՝ հակառակ նրա բարձր ֆոնդատարությանը։ Այսպես, վառելանյութային արդյունաբերության մեջ արտադրանքի մեկ ռուբլուն ընկնում է մեկ ռուբլի 50 կոպեկ արտադրական հիմնական ֆոնդ, սև մետալուրգիայի մեջ՝ 1,03 ռուբլի, շինանյութերի արդյունաբերության մեջ՝ 0,9 ռուբլի, արդյունաբերության մեջ՝ միջին հաշվով ընդամենը 0,6 ռուբլի։ Այս ամենն ապացուցում է ամեն կերպ հումքի խնայողություն կատարելու անհրաժեշտությունը, որի համար մենք շատ մեծ հնարավորություններ ունենք։ Ամենից առաջ հումքի զգալի քանակը մնում է ընդերքում (նավթի 50—65 տոկոսը, գազի 50 տոկոսը, ածխի 30—50 տոկոսը)։ Օգտակար հանածոները ոչ-կոմպլեքսային եղանակով օգտագործելու հետևանքով նրանց բազմաթիվ արժեքավոր կոմպոնենտներ գնում են թափոնի հետ (կույտերը երբեմն անվանում են մակերեսային հանքեր)։ Չեն օգտագործվում հսկայական քանակությամբ նեֆելինները, տարբեր տեսակի գունավոր մետաղները, ցնդող գազերը և այլն։ Նման դրության պատճառները մեծ մասամբ հնարավոր է վերացնել. դրա համար անհրաժեշտ միջոցառումներ հայտնի են, սակայն դրանք հիմնավորելու համար անհրաժեշտ են տնտեսական հաշվարկումներ։ Կողմնակի արտադրանքների օգտագործումը մի շարք դեպքերում կապված է էական ծախսերի հետ։ Այսպես, նավթի հանույթի ժամանակ ստացվող համընթաց գազի ուտիլիզացիան պահանջում է անցկացնել խողովակներ, կառուցել լրացուցիչ տարողություններ և այլն։ Այդ պատճառով էլ դրա օգտագործման շահավետության աստիճանը որոշելու համար պետք է անհրաժեշտ ծախսումները համեմատել այն արդյունքի հետ, որ կարող է ստացվել։ Նմանօրինակ տնտեսական հաշվարկումներ պետք է կատարել կույտերի, պոչերի և այլն ուտիլիզացիայի նպատակահարմարությունը պարզելու համար։

Նյութատարության կրճատմանը կարող է նպաստել հումքի ավելի խոր վերամշակումը, օգտակար կոմպոնենտների կոմպլեքսային օգտագործումը, բնական հումքը սինթետիկով փոխարինելը և այլն։

Նյութատարության կրճատման վրա ազդում է նմանապես ավելի բարձր աստիճանի պատրաստ արտադրանքի թողարկումը. դրա օրինակ կարող է



ծառայել այսպես կոչված «չորրորդ վերաբաժանքը» մետալուրգիայի մեջ։ Խոսքը վերաբերում է արտադրվող գլանվածքի, կորացրած և ձևավոր պրոֆիլների, ջերմամշակված գլանվածքի, սառը գլանված թիթեղի և այլ ասորտիմենտի ավելացմանը, որոնք հարկավոր են մեքենաշինությանը. այդ կիսապատրաստի մետաղեղենները մեքենաշինությանը հնարավորություն են տալիս կրճատելու վերամշակման ծախսերը։ Մեքենաշինության մեջ մետաղի կորուստները, որն այժմ կազմում է տարեկան 12 միլիոն տոննա, կարող են խիստ կրճատվել նաև հատումը լայնորեն շտամպով փոխարինելով, կիրառելով ձուլման, էլեկտրաձուլման այլ ավելի կատարյալ մեթոդներ։ Նոր հնգամյակում նախագծված է սև մետալուրգիայի մեջ զգալիորեն զարգացնել «չորրորդ վերաբաժանքը», մեքենաշինության մեջ արմատավորել ավելի կատարյալ տեխնոլոգիա. դա թույլ կտա կրճատելու արտադրանքի մետաղատարությունը։

Մեծ արդյունք կարող է ստացվել անտառային հարստությունների ավելի ռացիոնալ օգտագործումից։ Անտառամթերման ծավալով Սովետական Միությունն առաջին տեղն է գրավում աշխարհում։ Անտառամթերումները տարեցտարի ավելանում են։ Այնուամենայնիվ, փայտանյութը մեր երկրում դեռևս դեֆիցիտային նյութերից մեկն է. պատճառը փայտամշակման և անտառաքիմիական արդյունաբերության կարողությունների անբավարար զարգացումն է։ Նոր հնգամյակում նախագծված է խիստ ավելացնել փայտե սալերի, խավաքարտի, թղթի, անտառաքիմիայի արտադրանքների թողարկումը, բարելավել փայտանյութի կոմպլեքսային օգտագործումը։ Դրա համար անհրաժեշտ է, մասնավորապես, ընդլայնել փայտանյութի մնացորդների օգտագործումը՝ նրա մթերման և վերամշակման տեղերում։ Պետք է վերամշակել կոճղերը, ճյուղերը, կեղևը, տաշեղները և այլն։ Շատ կարևոր է կրճատել գետային լողարկումը. դա հնարավորություն կտա ոչ միայն պակասեցնելու գերանների կորուստը, այլև կկանխի գետերի խցանակալումը։ Այդ ամենը թույլ կտա առանց անտառամթերումներն զգալիորեն ընդլայնելու ավելի լրիվ բավարարել ժողովրդական տնտեսության պահանջմունքները անտառանյութերի և դրանց վերամշակման արտադրանքների նկատմամբ։ Նշված խնդիրների կատարումը պահանջում է փայտամշակման և անտառաքիմիական արդյունաբերության մեջ լրացուցիչ կապիտալ ներդրումներ և ընթացիկ ծախսերի ավելացում, սակայն դրանք արագորեն կարդարացնեն իրենց, քանի որ կկրճատվի անտառամթերման ծախսերի աճման տեմպը։

Շատ կարևոր պրոբլեմ է գյուղատնտեսական արտադրանքի կորուստների կրճատումը, որի լուծումից է կախված հասարակական ամբողջ արտադրանքի արդյունավետության բարձրացումը։ Մեր երկիրը մեծ միջոցներ է ծախսում գյուղատնտեսության վերելքի համարը, որը հսկայական նշանակություն ունի արտադրության հետագա զարգացման և ժողովրդի բարեկեցության աճման համար։ Դրա համար էլ անթույլատրելի է, երբ գյուղտնտեսական արտադրանքի — հացահատիկի, կարտոֆիլի, բանջարեղենների, մրգերի, մսի ոչ փոքր մասը կորչում է բերքահավաքի, պահպանման, փոխադրության և վերամշակման ժամանակ։ Նման կորուստները հետևանք են այն բանի, որ գյուղատնտեսությունը բավարար չափով հագեցված չէ տեխնիկայով, պակասում են էլևատորներ, սառնարաններ, պահեստներ, ետ ենք մնում արտադրանքի վերամշակման գործում։ Ինչպես ցույց են տալիս հաշվարկումները, պահեստներ կառուցելու, տրանսպորտի զարգացման, վերամշակող արդյունաբերության կարողությունների ավելացման ծախսերը, կարող են կարճ ժամանակամիջոցում հատուցվել գյուղատնտեսական արտադրանքի կորուստների վերացման հաշվին։

Արտադրանքի նյութատարությունը կրճատելու եղանակների համեմատությունը, հումքի, նյութերի և պատրաստի արտադրանքի կորուստների վերացումը, որ հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու կարևոր միջոցն է — շատ հրատապ խնդիր է տնտեսագիտության համար։

Սոցիալիստական հասարակական արտադրության արդյունավետության աճումն անհնարին է առանց նրա ինտենսիֆիկացման, որի ժամանակ անհրա-

անհրաժեշտ ծախսերը և, վերջապես, կազմել ըստ ժամկետների և գործադիր-
ների կապակցված ամբողջ առաջադրանքը կատարելու գրաֆիկը։
Պլանը կազմելու համար սիստեմային մոտեցումը ենթադրում է պլանի
օպտիմալություն։ Մեր երկրում գործող պլանավորման սիստեմին երբեմն հա-
կադրվում է իբրև թե նրանից տարբեր օպտիմալ պլանավորումը, ինչը հիմնո-
վին սխալ է։ Այդ առնչությամբ չի կարելի չհամաձայնել Վ. Ն. Նովոժիլովի
հետ, որն իրավացիորեն նշում էր ժողովրդատնտեսական պլանավորումը օպ-
տիմալության սկզբունքից բաժանելու անթույլատրելիությունը և այդ օպտի-
մալությունն ապահովելու ուղիներ գտնելու անհրաժեշտությունը[1]։ Այդ ուղի-
ներից մեկը պլանը մշակելիս էկոնոմիկա-մաթեմատիկական մեթոդների և
էլեկտրոնային-հաշվողական տեխնիկայի լայն կիրառումն է։ Էլեկտրոնային-
հաշվողական մեքենաների օգնությամբ շատ ու շատ հեշտանում և արագա-
նում է օպտիմալ լուծումներ գտնելը։ Ներկայումս ԷՀՄ-ները բավական լայնո-
րեն օգտագործվում են առանձին ճյուղերի զարգացման պլանները կազմելու
ժամանակ։ Ժողովրդատնտեսական պլանը կազմելու ժամանակ այդ մեքենա-
ները կիրառելու համար հարկավոր է պարզեցնել և կատարելագործել ինֆորմա-
ցիայի սիստեմը, ընդլայնել հաշվողական կենտրոնների ցանցը, կապը, ինչ-
պես նաև ստեղծել մի շարք այլ նախադրյալներ։
Պլանավորման մեթոդները գնալով ավելի են կատարելագործվում։ Առաջ,
երկրի ինդուստրացման առաջին տարիներին պլանները մշակելու ժամանակ,
հարկադրված էինք, ինչպես հայտնի է, կողմնորոշվել գլխավորապես եղած
ռեսուրսներով և նրանց պլանավորվող ավելացումով։ Պլանը կազմելն սկսվում
էր ներդրումային ճյուղերի աճման հնարավորությունների բացահայտումից,
որոնք որոշում են կապիտալ շինարարության ծավալը— ցեմենտի արդյունա-
բերությունից, սարքավորում հայթայթող մեքենաշինությունից, մետաղեղեն
կոնստրուկցիաներ թողարկող մետալուրգիայից, փայտեղեն կոնստրուկցիա-
ների համար նյութեր մատակարարող անտառարդյունաբերությունից։ Ելնելով
դրանից և հաշվի առնելով շինարարության առավել հնարավոր ծավալները,
սահմանվում էին տարբեր ճյուղերում նոր կարողություններ ստեղծելու և
գործարկելու մասշտաբները, իսկ նայած դրանց՝ հաշվի էր առնվում նաև
սպառման աճումը։ Ներկայումս պլանավորման կարգը փոխվում է։ Մեր երկրի
էկոնոմիկայի զարգացման մակարդակը հնարավորություն է ընձեռում պլանը
կազմելու ժամանակ նկատի ունենալ ոչ միայն ռեսուրսների աճման հնարա-
վորությունները, այլև, գնալով ավելի մեծ չափով հասարակական և անձնա-
կան, արտադրական և ոչ արտադրական պահանջմունքների ավելացումը։ Ել-
նելով վերջնական արդյունքի նկատմամբ եղած պահանջմունքներից, հաշվե-
տու և միջճյուղային պլանային հաշվեկշիռների հիման վրա կարելի է որոշել
միջանկյալ արտադրանքի, կիսաֆաբրիկատների, հումքի, ինչպես նաև սար-
քավորման նկատմամբ եղած պահանջները։ Ընթացիկ և կապիտալ ծախսում-
ների գործակիցների օգնությամբ, հաշվի առնելով տեխնիկական պրոգրեսին
զուգընթաց դրանց հեռանկարային փոփոխությունները, կարող են հաշվարկ-
վել վերջնական արտադրանքի արտադրության առաջադրված ծավալներն
ապահովելու համար անհրաժեշտ միջանկյալ արտադրանքի արտադրության
ծավալները։ Վերջնական արտադրանքները, նմանապես, կարող են շտկվել

1 Տե՛ս Վ. Նովոժիլով, Ժամանակակից էտապում օպտիմալ պլանավորման տեսությունը զար-
գացնելու պրոբլեմի մասին («Вопросы экономики», № 10, 1970 թ., էջ 50—60)։



հաշվի առնելով միջանկյալ արտադրանքի թողարկման և հումքի հանույթի
ռեալ հնարավորությունները։ Ռեսուրսների և պահանջմունքների համադրման
հիման վրա պլանավորման մեթոդոլոգիայի և մեթոդիկայի բարելավումն ու
հետագա զարգացումը սովետական տնտեսագիտության կարևոր խնդիրներից
մեկն է։
Պլանավորման կատարելագործումը մեծ չափով կախում ունի երկարատև
պրոգնոզման-նախապլանային աշխատանքի այդ կարևորագույն մասից, որը
թույլ է տալիս սահմանել երկրի էկոնոմիկայի զարգացման ուղիները երկա-
րատև ժամանակամիջոցի (15—20 տարվա) համար և դրանով իսկ հեշտացնել
ավելի կարճ ժամանակամիջոցների (5 տարի) համար պլաններ կազմելու
պրոցեսը։ Դրա հետ միասին պրոգնոզումը բուն պլանային աշխատանքի բաղ-
կացուցիչ տարրն է։ Ամեն մի ճիշտ կազմված պլան պարունակում է գիտակա-
նորեն հիմնավորված պրոգնոզ, որից ելնելով մշակվում են պլանի առաջա-
դրանքները, դիրեկտիվները։ Պրոգնոզի իրական լինելը պլանների, պլանային
առաջադրանքների իրական լինելու երաշխիքն է։ Եվ ընդհակառակը, եթե
սխալ է պրոգնոզը, ուրեմն իրական չի լինի նաև պլանը։ Գիտական պրոգնոզը
կռահում չէ, այլ գիտական եզրակացություն առաջիկա զարգացման մասին՝
այս կամ այլ պայմանների առկայության դեպքում. գիտական պրոգնոզը հիմք
է պլանային հաշվարկումների ամբողջ սիստեմի համար, ամբողջ պլանի հա-
մար։ Ահա թե ինչու պրոգնոզներ կազմելու, դրանց մշակման մեթոդոլոգիայի
կատարելագործումը տնտեսագիտական հետազոտությունների ամենահրա-
տապ պրոբլեմներից մեկն է։
Վերջում կանգ առնենք հասարակական արտադրության արդյունավետու-
թյունը բարձրացնելու ևս մեկ կարևոր գործոնի վրա— պլանավորման և տըն-
տեսական խթանման նոր սիստեմի վրա։ Ներկայումս նոր պայմաններում են
աշխատում արդյունաբերական ամբողջ արտադրանքի 93 տոկոսն արտադրող
և 95 տոկոս շահույթ ստացող ձեռնարկությունները։ Նոր պայմաններում է աշ-
խատում նաև տրանսպորտը։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման
1971—1975 թթ. հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի Դի-
րեկտիվներով դրված է հետևյալ խնդիրը՝ ավարտել բոլոր տնտհաշվարկային
ձեռնարկությունները և նյութական արտադրության ճյուղերի կազմակերպու-
թյուններն ու սպասարկման ոլորտները պլանավորված և տնտեսական խթան-
ման նոր մեթոդների փոխադրումը։ Այդ սիստեմի աշխատանքները բարելավե-
լու նպատակով անհրաժեշտ է, մասնավորապես, ձեռնարկությունների մեջ
պլանաչափորեն զարգացնել տնտեսապես նպատակահարմար տեական տըն-
տեսական ուղղակի կապերը, ինչպես նաև մատակարարման-վաճառահանման
տերիտորիալ բազաների, պահեստների և խանութների միջոցով կատարել-
գործել մեծածախ առևտուրը։ Պետք է նաև լայնորեն օգտագործել ֆինանսա-
կան-վարկատու մեխանիզմը՝ հօգուտ տեխնիկական պրոգրեսի արագացման և
արտադրության ինտենսիֆիկացման շահերի։ Վարկի, հատկապես երկարատև
վարկի օգտագործման ուժեղացումը կարող է էապես նպաստել կապիտալ
ներդրումների նկատմամբ ավելորդ պահանջարկին։
Պետք է որոնել ու գտնել ֆոնդերի համար վճարումներն ավելի գործու-
նակ միջոցի վերածելու ուղիները, երբ կարելի է բարելավել դրանց օգտագոր-
ծումը և սահմանափակել կապիտալ ներդրումների նկատմամբ եղած պահանջ-
մունքները։ Նոր հնգամյակում կստացվեն գործիքաշինության, ավտոմատաց-
ման միջոցների և կառավարման սիստեմների մինիստրությունում, Մոսկվայի
գլխավոր ավտոտրանսպորտում ինքնաֆինանսավորման,— այդ թվում նաև կապի-
տալ ներդրումների գծով,— անցնելու էքսպերիմենտի արդյունքները։ Դա

*հնարավորություն կտա կայացնելու մի շարք կարևոր որոշումներ: Հարկավոր է ուսումնասիրել այն հարցը, թե ինչն է ավելի նպատակահարմար— շարունակել շահույթի ազատ մնացորդը փոխանցել բյուջեի եկամտի մեջ, թե անցնել շահույթի մասսան,— ելնելով սահմանված նորմատիվ տոկոսից,— բյուջեի և ձեռնարկության միջև բաշխելուն: Հնարավոր է, որ շահույթի բաշխման այդպիսի կարգը ձեռնարկությանը կխթանի ավելացնելու նրա մասսան: Այդ հարցերի վերլուծությունը տնտեսագիտության պարտականությունն է:*

*Ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի զգալի վերելք ապահովելու համար կուսակցության առաջադրած խնդրի կապակցությամբ անհրաժեշտ է խորացնել պահանջմունքների ուսումնասիրությունը, բարձրացնել ձեռնարկությունների պատասխանատվությունը սպառողական պահանջարկը ժամանակին բավարարելու համար, ինչն անտարակույս, դրականորեն կանդրադառնա արտադրության արդյունավետության աճման վրա: Դա նույնպես տնտեսական հետազոտությունների խնդիրներից մեկն է:*

*Սոցիալիստական արտադրության վիթխարի ռեզերվների հաշվին նրա արդյունավետությունը բարձրացնելու հնարավորությունները շատ մեծ են, և տնտեսագիտության պատվավոր խնդիրն է՝ գտնել այդ ռեզերվները, ցույց տալ դրանց արագ և ռացիոնալ օգտագործման ուղիները և դրանով իսկ նպաստել ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանի հաջող կատարմանը:*

«Вопросы экономики», № 4. 1971



Ա. Մ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

# ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Հետհոկտեմբերյան շրջանում նույնպես ազգերի և ազգային հարաբերությունների հարցը մշտապես քննարկվել է կուսակցության համագումարներում: Այն կուսակցության քաղաքականության հիմնական սկզբունքներից, ծրագրային խնդիրներից մեկն է: ՍՄԿԿ ազգային հարցը դիտում է նոր հասարակարգի կառուցման սոցիալ-քաղաքական պրոբլեմների հետ սերտ առնչված, որով և նպաստում է սոցիալիստական ազգերի զարգացմանը: Տակավին սովետական իշխանության արշալույսին կուսակցությունը, Վ. Ի. Լենինը առաջնակարգ էին համարում ազգերի միջև փաստական հավասարության հաստատումը, որն առանձնահատուկ ընդգծվեց ՍՄԿԿ նոր ծրագրում և հետագայում ընդունված փաստաթղթերում: Մասնավորապես այդ են վկայում ՍՄԿԿ նոր ծրագրի «Կուսակցության խնդիրներն ազգային հարաբերությունների բնագավառում» ենթաբաժնում շարադրված դրույթները:*

*Հավատարիմ մնալով կուսակցության ինտերնացիոնալիստական ավանդներին, ՍՄԿԿ XXIV համագումարը հարստացրեց մարքս-լենինյան ուսմունքը տեսական նոր ընդհանրացումներով նաև ազգային հարցի բնագավառում:*

### *ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՑԱԾ ԿԵՍԴԱՐՅԱ ՈՒՂԻՆ ԵՎ ՌՈՒՍ ԺՈՂՈՎՐԴԻ ԴԵՐԸ ՆՐԱՆՑ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ*

*Հետադարձ հայացք ձգելով սովետական ժողովուրդների անցած ուղու վրա, կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Սոցիալիզմի ամենախոշոր նվաճումներից մեկը կուսակցության կողմից* լենինյան ազգային քաղաքականության՝ *ժողովուրդների հավասարության և բարեկամության քաղաքականության պրակտիկ իրագործումն է:*

*Վերջերս եղբայրական շատ հանրապետություններ նշեցին իրենց կեսդարյա հոբելյանները: Դա սոցիալիստական ազգերի ծաղկման, մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների միաձույլ միասնության տպավորիչ ցույց էր»:*

Իրոք, լենինյան հոբելյանական տարին համընկավ Լիտվայում և Էստոնիայում սովետական իշխանության վերականգնման 30, Մոլդովական ՍՍՀ 30, Ղազախական ՍՍՀ 50-ամյակին, Ադրբեջանում և Հայաստանում սովետական իշխանության, կոմունիստական կուսակցության ստեղծման 50-ամյակին։ Վերջերս մեծ շուքով նշվեց Սովետական Վրաստանի հիսնամյակը։ Այդ, ինչպես և եղբայրական սովետական մյուս հանրապետությունների բուռն ծաղկումը ազատագրված ժողովուրդների վերածննդի արտահայտությունն էր, սոցիալիստական հասարակարգի և լենինյան ազգային քաղաքականության փայլուն հաղթանակը։

Նշելով Սովետական Միության բոլոր սոցիալիստական ազգերի և ազգությունների տնտեսական և մշակութային կյանքի աննախընթաց վերելքը, Լ. Ի. Բրեժնևն առանձնակի շեշտեց այդ ազգերի ու ազգությունների միասնությունը՝ հանձին Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության, որի հիմնադրման 50-ամյակը լրանում է 1972 թվականին։

ՍՍՀՄ-ը նոր տիպի բազմազգ պետություն է, որի «կազմավորման, ամրապնդման և զարգացման գործում,— ասված է Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— իրենց դերը խաղացին մեր երկրի բոլոր ազգերն ու ազգությունները և առաջին հերթին ռուս մեծ ժողովուրդը»։

Համագումարում միութենական հանրապետությունների պատգամավորներն իրենց ելույթներում հարգանքի, սիրո և երախտագիտության խոր զգացմունք արտահայտեցին ռուս ժողովրդի նկատմամբ։ Դա բնական էր, որովհետև ռուս բանվոր դասակարգը, աշխատավոր ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ համախմբելով իր շուրջը նախկինում ճնշված ժողովուրդներին, իրականացրեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որի շնորհիվ այդ ժողովուրդները ձեռք բերին իրենց սոցիալական և ազգային ազատագրումը։ Մեծ սխրագործություն էր ռուս ժողովրդի օգնությունը, որի շնորհիվ վերացավ ժողովուրդների միջև գոյություն ունեցած, նախկինից ժառանգած, տնտեսական և կուլտուրական անհավասարությունը։ Խոշոր և վճռական էր ռուս մեծ ժողովրդի դերն ու ավանդը ինչպես ողջ Սովետական Միության, այնպես և միութենական ու ինքնավար հանրապետությունների ինդուստրացման, գյուղատնտեսության վերակառուցման գործում։ Հանրահայտ է ռուս և Սովետական Միության մյուս եղբայրական ժողովուրդների սխրանքը Հայրենական մեծ պատերազմում՝ ֆաշիստական Գերմանիայի ջախջախման գործում, որը վերացրեց ժողովուրդներին սպառնացող ստրկացման վտանգը և ապահովեց նրանց հետագա ինքնուրույն ու ազատ զարգացումը։

Ահա թե ինչու ընկ. Բրեժնևը լիակատար հիմք ուներ ասելու, որ ռուս ժողովուրդը «Իր հեղափոխական եռանդի, անձնվիրության, աշխատասիրության, խոր ինտերնացիոնալիզմի շնորհիվ իրավամբ արժանացել է մեր սոցիալիստական հայրենիքի բոլոր ժողովուրդների անկեղծ հարգանքին»։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ԾԱՂԿՄԱՆ ԵՎ ՄԵՐՁԵՑՄԱՆ ՏԵՆԴԵՆՑՆԵՐԸ

XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ դրվում է սովետական ազգերի ծաղկման և մերձեցման հարաբերակցության ճիշտ ընկալման խնդիրը։ Բանն այն է, որ առանձին հեղինակներ հակադրում են ժողովուրդների ծաղկումը նրանց մերձեցմանը՝ նշելով, որ սոցիալիզմի



կառուցումը ժողովուրդների ծաղկման ժամանակաշրջան է, իսկ արդի՝ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանը՝ նրանց մերձեցման։ Թե՛ հաշվետու զեկուցման մեջ, թե՛ ելույթներում շեշտվեց, որ մեր երկրի ազգերի և ազգությունների «աստիճանական մերձեցումը» տեղի է ունենում սոցիալիստական ազգային կուլտուրաների զարգացման պայմաններում, որ «Կուսակցությունն այսուհետև ևս կամրապնդի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, հետևողականորեն վարելով սոցիալիստական ազգերի ծաղկման և նրանց աստիճանական մերձեցման լենինյան կուրսը»։ Այդ կուրսը ժխտում է սովետական ազգերի առաջընթացի միակողմանի մեկնաբանումը։ Սոցիալիզմի ժամանակ ազգային հարաբերություններում գործում են փոխադարձաբար միմյանց հետ կապված, միմյանց պայմանավորող երկու առաջադիմական տենդենց՝ սոցիալիստական ազգերի ծաղկման և նրանց մերձեցման։

Սովետական Միության ժողովուրդների ծաղկումն իր ռեալ արտահայտությունն է գտել ազգային սոցիալիստական պետականության, ՍՍՀՄ ստեղծման մեջ, ինչպես նաև ժողովրդական տնտեսության, հատկապես ժամանակակից տեխնիկայով հագեցած սոցիալիստական ինդուստրիայի, ազգային բանվոր դասակարգի և ինժեներա-տեխնիկական կադրերի ստեղծման, ժողովուրդների սոցիալական կառուցվածքի արմատական փոփոխման մեջ, նրանց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական մշակույթի աննախընթաց վերելքում։ Համագումարում բացահայտվեց սովետական ազգերի աստիճանական մերձեցման բովանդակությունը՝ հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։ Այդ մերձեցումը ակնհայտորեն դրսևորվում է, առաջին հերթին, տնտեսության ասպարեզում։

Միութենական հանրապետություններում գործող բոլոր արտադրական ձեռնարկությունները, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, սոցիալիստական աշխատանքի բաժանման շնորհիվ, անքակտելի կապված են միմյանց, կազմում են տնտեսական մի ներդաշնակ օրգանիզմ։ Եղբայրական ժողովուրդների միջև օրեցօր աճում, զարգանում են կուլտուրական, գիտական կապերը։ Սովետական Միության պատմական փորձը ցույց է տալիս, որ որքան ծաղկուն է տվյալ սոցիալիստական ազգի ժողովրդական տնտեսությունը և մշակույթը, այնքան ուժեղ են այդ սոցիալիստական ազգի տնտեսական։ կուլտուրական կապերը, մերձեցումը եղբայրական ժողովուրդների հետ. և որքան ծավալուն ու խոր են տվյալ ազգի տնտեսական ու կուլտուրական կապերը եղբայրական ժողովուրդների հետ, այնքան այդ կապերն ու մերձեցումը նպաստում են տվյալ սոցիալիստական ազգի հետագա ծաղկմանը։ Այլ խոսքով, ժողովուրդների մերձեցումը պայմանավորում է նրանց ծաղկումը, իսկ ծաղկումը՝ նրանց հետագա մերձեցումը։

Այսպիսով, Սովետական Միության ժողովուրդների մերձեցումը, այսինքն՝ նրանց միջև տնտեսական, կուլտուրական, գիտական համակողմանի կապերի խորացումը, ծավալումը, ազգային առաջադեմ ավանդույթների զարգացումը, ժողովուրդների հոգեկան կերպարում ընդհանուր գծերի ձևավորումը տեղի են ունենում այդ ազգերի և ազգությունների ծաղկման հիման վրա։ Ահա թե ինչու չի կարելի ժողովուրդների ծաղկումը արհեստականորեն բաժանել նրանց մերձեցումից կամ մեկը հակադրել մյուսին։ Ահա թե ինչու սխալ կլինի ազգերի զարգացումը սոցիալիզմի պայմաններում ընկալել միայն որպես ծաղկում և անտեսել մերձեցման օբյեկտիվ օրինաչափությունը, ծաղկման սոցիալիս-

տական բովանդակությունը։ Հարցի նման ընկալումը ջուր կլցնի ազգային սահմանափակության, ազգայնականության ջատագովների ջրաղացին և կհարվածի ժողովուրդների բարեկամությանը, նրանց համագործակցությանը, փոխհարստացմանը։ Սխալ կլինի նաև սոցիալիզմի պայմաններում ազգերի զարգացումն ընկալել միայն որպես մերձեցում, անտեսել ազգերի ծաղկման օբյեկտիվ օրինաչափությունը, այդ ծաղկման ազգային ձևերի՝ մայրենի լեզվի, առաջադիմական ավանդույթների զարգացման անհրաժեշտությունը, այդ ամենը նենգափոխել ներկա էտապում ազգերի «ձուլմամբ»։ Նման ընկալումը նույնպես ջուր կլցներ մարքսիզմ-լենինիզմին անհարիր կոսմոպոլիտիզմի, շովինիզմի, ազգային նիհիլիզմի ջրաղացին և կհարվածեր ժողովուրդների փոխադարձ վստահությանը, նրանց բարեկամությանը, եղբայրական համագործակցությանը։

ՍՄԿԿ XXIV համագումարում անհրաժեշտ համարվեց սոցիալիզմի պայմաններում գործող երկու առաջադեմ տենդենցներից մեկը՝ մերձեցման տենդենցը սահմանել որպես «աստիճանական մերձեցում»։ «Աստիճանական» բառը ընդգծում է մերձեցման պրոցեսի օբյեկտիվ և տևական բնույթը։ Այս լրացումով շեշտվում է, որ սովետական ժողովուրդների մերձեցումը վարչական միջոցառումների արդյունք չէ, որ անթույլատրելի է սուբյեկտիվիզմի դիրքերից ժողովուրդների մերձեցմանը արագ տեմպեր հաղորդելը։ Սովետական ժողովուրդների մերձեցումը սոցիալիստական հասարակարգից բխող օրինաչափություն է։ Այդ երկարատև պրոցես է և որպես այդպիսին՝ ենթակա աստիճանական զարգացման։

«Կուսակցության քաղաքականության էությունն այն է,— նշեց ընկ. Բրեժնևը,— որ մշտապես հաշվի առնվեն թե՛ մեր ողջ Միության ընդհանուր շահերը և թե նրա մեջ մտնող հանրապետություններից յուրաքանչյուրի շահերը»։ Համագումարում միահամուռ հավանություն ստացած այս դրույթը հակահարված է հակակոմունիզմի պրոպագանդային, ինչպես և ազգայնական հերյուրանքներին։

Սովետական հանրապետությունների կեսդարյա փորձը, անցումը դարավոր հետամնացությունից դեպի սոցիալիստական քաղաքակրթության բարձունքները, հերքում են հակակոմունիզմի վարձկան գրչակների հերյուրանքները մեր կուսակցության հասցեին։

Համագումարում իրավացիորեն նշվեց, որ լույս են տեսել բովանդակալից աշխատություններ՝ նվիրված սովետական ազգերի ծաղկմանը։ Սակայն գիտական աշխատություններում տակավին ոչ բավարար չափով են լուսաբանվում սովետական ազգերի մերձեցման պրոբլեմները։ Բանն այն է, որ գրականության մեջ բնութագրված են սովետական ազգերի միջև ստեղծվող, խորացող ու ծավալվող տնտեսական և մշակութային կապերի լոկ ձևերը։ Մինչդեռ այսօր չի կարելի բավարարվել միայն մերձեցման ձևերի շարադրմամբ։ Անհրաժեշտ է բացահայտել և ուսումնասիրել, թե այդ մերձեցման շնորհիվ ինչպես ընթացավ սոցիալիստական ազգերի զարգացումը հասարակական կյանքի տարբեր բնագավառներում, ինչպիսի որակական փոփոխություններ եղան նրանց հոգևոր խառնվածքում։

## «ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴ» ՀԱՍԿԱՑՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆՈՒՄԸ

Համագումարում նոր մեկնաբանում ստացավ «սովետական ժողովուրդ» հասկացությունը։ «Սոցիալիստական շինարարության տարիներին,— ասում է



ընկ. Բրեժնևը,— մեր երկրում առաջացավ մարդկանց պատմական նոր ընդհանրություն՝ սովետական ժողովուրդ»։

Սովետական ժողովուրդը «նոր սոցիալիստական ազգ» չէ, ինչպես կարծում էին առանձին հեղինակներ։ Սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության, բնորոշ կողմը, ամենից առաջ, նրա բազմազգ բնույթն է, ընդգծվեց ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։

Սովետական ժողովուրդ հանրության մեջ մտնող սոցիալիստական ազգերն ու ազգությունները ունեն հետևյալ ընդհանրական կողմերը. նրանց ընդհանուր տնտեսական բազան, արտադրահարաբերությունները սոցիալիստական են, աշխարհայեցողությունը, գաղափարախոսությունը՝ մարքսիզմ-լենինիզմն է, նպատակը՝ նոր աշխարհի, կոմունիզմի կառուցումը։ Նրանց հոգևոր կերպարում առաջացել և հարաճուն զարգանում են այնպիսի ընդհանրական գծեր, ինչպիսիք են՝ սոցիալիստական վերաբերմունքը դեպի աշխատանքը, հանրային սեփականությունը, փոխադարձ հարգանքը, բարեկամական, եղբայրական հարաբերությունները, միմյանցից սովորելու ձգտումը, ազգային կուլտուրաների սոցիալիստական բովանդակության ընդհանրությունը և այլն։

Սովետական ժողովուրդ հանրության հետագա առաջընթացը տեղի է ունենում և տեղի կունենա նրա բաղկացուցիչ մասերի՝ սոցիալիստական ազգերի ու ազգությունների ծաղկմամբ և աստիճանական մերձեցմամբ։

## ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ IX ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքները դրսևորվել են համագումարի հաստատած ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի դիրեկտիվներում, որոնք ապահովում են բոլոր միութենական և ինքնավար հանրապետությունների ժողովրդական տնտեսության համակողմանի զարգացումը, նրանց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկումը։ ՍՄԿԿ XXIV համագումարում իր զեկուցման մեջ Ա. Ն. Կոսիգինն ասաց. «Նոր հնգամյակը բոլոր միութենական հանրապետությունների արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա զարգացման ժամանակաշրջան կլինի։ Հանրապետությունների գերակշռող մեծամասնությունում արդյունաբերական արտադրանքը կաճի 40—50 տոկոսով և ավելի»։ Արդյունաբերական արտադրանքի ծավալի ավելի բարձր տեմպեր են ունենալու Թուրքմենական և Բելոռուսական հանրապետությունները՝ 50—53 տոկոս, Մոլդովական ՍՍՀ՝ 56—59 տոկոս, Ղազախական ՍՍՀ՝ 57—60 տոկոս և Հայկական ՍՍՀ՝ 60—63 տոկոս։

Հայկական ՍՍՀ-ում նախատեսվում է ապահովել գունավոր մետալուրգիայի, մեքենաշինության, մետաղատար արտադրությունների, թեթև ու սննդի արդյունաբերության հետագա զարգացումը։ Գործարկվելու են Զոդի ոսկու հանքի կոմբինատը, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի արգնահողի և քիմիական նյութերի արտադրության կարողությունները։ Շահագործման կհանձնվի ատոմային էլեկտրակայանի առաջին բլոկը, շարունակվելու է Որոտան գետի հիդրոէլեկտրակայանների կասկադի շինարարությունը։ Կավելանա խաղողի, մրգի, բանջարեղենի, ծխախոտի, եթերայուղատու կուլտուրաների, անասնապահական մթերքների արտադրությունը։ Կօգտագործվեն 50 հա-

զար հեկտար ոռոգելի նոր հողեր, կջրարբիացվի 130 հազար հեկտար արոտավայր։

Վիթխարի խնդիրներ են դրված սովետական ժողովուրդների առջև այս հնգամյակում։ Դրանց իրականացման երաշխիքներն են՝ սովետական բոլոր ժողովուրդների կոմունիստական գիտակցականության բարձրացումը, աշխատավորական մասսաների դաստիարակությունը։

## ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՈԳՈՎ

Լենինյան կուսակցության համաժողովում առանձնահատուկ տեղ գտան աշխատավորության, մասնավորապես երիտասարդության քաղաքական աշխարհայացքի ձևավորման հարցերը։ Ընդունված բանաձևում նշվեց, որ «Համագումարը կարևոր նշանակություն է տալիս բոլոր աշխատավորներին սովետական հայրենասիրության ոգով, սոցիալիստական հայրենիքի համար, սովետական ժողովրդի վիթխարի մեծագործությունների համար հպարտության ոգով, ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի, շովինիզմի և ազգային սահմանափակության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով, բոլոր ազգերի և ազգությունների նկատմամբ հարգանքի ոգով դաստիարակելուն»։

Սոցիալիստական հայրենասիրությունը ներդաշնակ է սոցիալիստական ինտերնացիոնալիզմին, դրանք լրացնում են միմյանց։ Հայրենասիրության սոցիալիստական ըմբռնումը հիմնված է ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա։ Հայրենասեր է նա, ով ջանք չի խնայում գործով կատարելու մայր երկրի նյութական ու հոգևոր բարգավաճումը։ Իսկական հայրենասերը հարգում է ուրիշ ժողովուրդների մշակույթը, լեզուն, պատմությունը, նրան խորթ են ազգայնական նախապաշարումները։

Ընդհանուր ոչինչ չունեն ինտերնացիոնալիզմի հետ նրանք, ովքեր համակրելով ուրիշ ժողովուրդներին, նրանց մշակույթը, արհամարհում են սեփական ազգի ստեղծած արժեքները, քամահրում են մայրենի լեզուն, գիրն ու գրականությունը։ Նման մոտեցումը հակասում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին և նիհիլիզմի ու կոսմոպոլիտիզմի արտահայտություն է։ Այսպիսով, սոցիալիստական ինտերնացիոնալիզմն ապազգային չէ, իսկ սոցիալիստական հայրենասիրությունը չի սահմանափակված զուտ ազգային շրջանակներով։

Աշխատավոր մասսաներին դաստիարակել սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության ոգով, նշանակում է՝ յուրաքանչյուր սովետական քաղաքացու հոգում պատվաստել սիրո, հարգանքի, հպարտության զգացմունք՝ իր և եղբայրական այլ ժողովուրդների լեզվի, հերոսական պատմության, առաջավոր մշակույթի, սոցիալիզմի պայմաններում ձեռք բերված տնտեսական և կուլտուրական նվաճումների նկատմամբ։ Դաստիարակության միջոցով պետք է յուրաքանչյուր սովետական քաղաքացի գիտակցի այն պարզ ճշմարտությունը, որ առանց ՍՍՀՄ ժողովուրդների կուռ միասնության, համագործակցության ու բարեկամության, անհնար է արդի գիտատեխնիկական պրոգրեսի պայմաններում ապահովել ժողովրդի վերընթացը, նոր աշխարհի կառուցումը, որ առանց սոցիալիզմի բոլոր երկրների ժողովուրդների միասնության, համագործակցության ու փոխօգնության, անհնար են սոցիալիզմն ու կոմունիզմը։



Այսօր մեր տնտեսական և կուլտուրական կյանքն իր բոլոր ասպարեզներով սոցիալիստական ինտերնացիոնալիզմի իրական, կոնկրետ դրսևորումն է։ Այժմ սոցիալիստական ինտերնացիոնալիզմը ոչ միայն բանվոր դասակարգի գաղափարախոսությունն է, այլև իրականություն, հասարակական պրակտիկա։ Այս հանգամանքը, անշուշտ, հեշտացնում է դաստիարակչական աշխատանքը։ Կյանքն ինքը համոզիչ ապացույց է, որ միայն ժողովուրդների բարեկամությամբ, համագործակցությամբ, փոխօգնությամբ է իրականանում սոցիալիզմի ուղին բռնած ժողովուրդների տնտեսական ու մշակութային աննախընթաց վերելքը, նրանց համակողմանի ծաղկումը։

Աշխատավորական մասսաներին, երիտասարդությանը ժողովուրդների բարեկամության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ոգով դաստիարակումը պահանջում է, նախ՝ ճիշտ ընկալել, ըմբռնել, գիտակցել լենինյան ազգային քաղաքականության էությունը Սովետական Միության առաջընթացի ներկա էտապում, անհաշտ պայքար մղել ամեն տեսակ նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների և մնացուկների դեմ։

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը հիմնովին ոչնչացրեց թե՛ նախկինում տիրապետող ազգերի և թե ճնշված ազգերի նացիոնալիզմի սոցիալ-տնտեսական արմատները։ Շովինիզմը, նացիոնալիզմը, հաղթանակած սոցիալիզմի պայմաններում դադարեցին իրական քաղաքական-գաղափարական հոսանք լինելուց։ Սակայն շովինիզմի, նացիոնալիզմի մնացուկները դեռևս լիովին չեն վերացել և պետք է դրանց դեմ անզիջում պայքարել։

Տեղին է վերհիշել Վ. Ի. Լենինի զգուշացումը՝ «...ոչ մի բան այնպես չի կասեցնում պրոլետարական դասակարգային համերաշխության զարգացումն ու ամրապնդումը, ինչպես ազգային անարդարությունը, «վիրավորված» նացիոնալները ոչ մի բանի նկատմամբ այնպես զգայուն չեն, ինչպես հավասարության զգացմունքի և այդ հավասարության խախտման նկատմամբ, իր ընկեր պրոլետարների կողմից թեկուզ նույնիսկ անփութորեն, թեկուզ նույնիսկ կատակի ձևով այդ հավասարության խախտման նկատմամբ» (Երկեր, հ. 36, էջ 704)։ Հիվանդագին են ընդունվում առանձին հեղինակների թույլ տված սխալները, անտակտ, անպատասխանատու հայտարարություններն այս կամ այն ժողովրդի պատմական անցյալի, նրա ստեղծած արժեքների վերաբերյալ։ Վերջապես անցանկալի են այն սխալները, որոնք տեղ են գտել արդի փուլում ազգային հարցին նվիրված որոշ տեսական աշխատություններում։

Նման սխալ կոնցեպցիաներ են՝ միութենական հանրապետությունների, այսպես կոչված՝ «դենացիոնալիզացիան» («ապազգայնացումը») լենինյան ազգային տեսության և քաղաքականության կոսմոպոլիտական, ազգային նիհիլիստական «մեկնաբանումը», ըստ որի, Սովետական Միությունում, իբր, տեղի է ունենում «ազգերի փոխադարձ ասիմիլյացիա», «ազգային հատկանիշների մարում» և այլն։

Այս, այսպես կոչված, «կոնցեպցիաները» ոչ միայն որևէ առնչություն չունեն մարքսիզմ-լենինիզմի, ՍՄԿԿ կուսակցության ծրագրի և ազգային քաղաքականության հետ, այլև օբյեկտիվորեն ջուր են լցնում հակակոմունիզմի պրոպագանդայի ջրաղացին։ Նացիոնալիզմի և շովինիզմի մնացուկների տարբեր դրսևորումները, արտահայտությունները լայնորեն քննադատվել են սովետական մամուլում, գրականության մեջ։

Սովետական ժողովուրդների ծաղկումն ու մերձեցումը կոմունիստական

կուսակցությունը բնութագրում է որպես առաջադիմական տենդենցներ, որոնք համընթաց են սոցիալիստական հասարակարգի զարգացման ուղուն։

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին անհարիր են ազգային սահմանափակությունը, սնապարծությունը, ուրիշ ժողովուրդների կուլտուրական արժեքների և նվաճումների անտեսումը, պատմական անցյալի իդեալականացումն ու սոցիալական հակասությունների սքողումը, տվյալ հանրապետության մեջ ապրող ազգային փոքրամասնությունների տնտեսական և կուլտուրական պահանջների անտեսումը և այլն։ Նացիոնալիստական վերապրուկների դրսևորումները հիմնականում ուղղված են սոցիալիստական ազգերի մերձեցման և ծաղկման տենդենցների դեմ։

Տակավին չի հաղթահարվել այն վնասակար մտայնությունը, թե ազգերն իրենց դարն ապրած սոցիալական կատեգորիաներ են, թե հասել է բոլոր ազգերը մեկ ազգի մեջ ձուլելու ժամանակը, թե սոցիալիստական ազգերի հատկանիշներն արդեն «մարում են» և այլն։ Գրականության մեջ արտահայտված նման կարծիքները հիմնականում ուղղված են սոցիալիզմի պայմաններում գործող երկու պրոգրեսիվ տենդենցների դեմ, ըստ որում, ակնհայտորեն սոցիալիստական ազգերի ծաղկման տենդենցի, այդ ծաղկման ազգային ձևերի դեմ (մայրենի լեզու, ազգային առաջադիմական ավանդներ և այլն) և քողարկված կերպով սոցիալիստական ազգերի մերձեցման տենդենցի դեմ, նենգափոխելով այդ տենդենցը «ազգերի փոխադարձ ասիմիլացիայի», «ազգերի ձուլման» բոլոր ազգերը մի ազգով փոխարինելու պահանջով։ Այս մտայնությունները ևս արգելակում են սովետական ազգերի օրինաչափ զարգացումը, նոր հասարակարգի կառուցումը և վնասում սովետական ժողովուրդների փոխադարձ վստահության, եղբայրական համագործակցության ամրապնդմանը։

Ղեկավարվելով լենինյան սկզբունքներով, ՍՄԿԿ հետևողական և վճռական պայքար է մղում նացիոնալիզմի և շովինիզմի մնացուկների դեմ։ Այս գործում ևս պետք է հետևել լենինյան ավանդներին. նախկինում ճնշված ազգերի կոմունիստների պարտքն է, առաջին հերթին, պայքարել տեղական նացիոնալիզմի մնացուկների դրսևորումների դեմ, չանտեսելով մեծապետական շովինիզմի մնացուկների դեմ մղվող պայքարի անհրաժեշտությունը։ Իսկ նախկինում ճնշող, տիրապետող ազգի կոմունիստների պարտքն է, առաջին հերթին, պայքարել մեծապետական շովինիզմի մնացուկների դեմ՝ չանտեսելով տեղական նացիոնալիզմի մնացուկների դեմ մղվող պայքարը։



Վ. Ս. ԱՍՏՎԱԾԱՏՈՒՐՈՎ

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Վ. Ի. Լենինի անվան, նրա բազմակողմանի գիտական, հեղափոխական, պետական գործունեության հետ անխզելիորեն կապված են սոցիալիստական պետության վիճակագրական ծառայության կազմակերպումն ու զարգացումը։ Նրա աշխատություններում սպառիչ պարզությամբ սահմանված են վիճակագրության խնդիրներն ու նշանակությունը և սովետական պետական վիճակագրության կազմակերպման սկզբունքները։

Դեռ մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, Լենինը գրել է սոցիալիստական հասարակության կյանքը կարգավորող գլխավոր պայմանի՝ մթերքների արտադրության ու բաշխման համաժողովրդական հաշվառման և վերահսկողության նշանակության մասին։ Հոկտեմբերի հաղթանակից հետո, Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեի նիստում, 1917 թ. նոյեմբերի 17-ին նա ասել է, որ «Ոչ մի արտադրանք, ոչ մի ֆունտ հաց չպետք է հաշվառումից դուրս մնա, որովհետև սոցիալիզմը— այդ ամենից առաջ հաշվառում է» (Երկեր, հ. 26, էջ 346)։ Իսկ մթերքների արտադրության և բաշխման հաշվառման ու վերահսկողության կազմակերպումն անհնար էր առանց պետական վիճակագրության կենտրոնացված սիստեմի ստեղծման։ Երկրում վիճակագրության ղեկավարման խստիվ կենտրոնացման անհրաժեշտության վերաբերյալ Լենինը արտահայտվել է դեռ անցյալ դարի վերջին։ Այսպես, ցարական Ռուսաստանի ֆաբրիկա-գործարանային վիճակագրության վիճակը բնութագրելիս, դրա առաջին թերությունը նա համարում էր կենտրոնական այնպիսի հատուկ օրգանի բացակայությունը, որը ղեկավարեր բոլոր միակերպ տեղեկությունների հավաքումը, ստուգումն ու մշակումը։

Միայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ հնարավոր դարձավ պետական վիճակագրության մարմինների կենտրոնական սիստեմի ստեղծումը։

1918 թ. հունիսին տեղի ունեցած վիճակագիրների Համառուսաստանյան համագումարը մշակեց պետական վիճակագրության վերաբերյալ կանոնադրության նախագիծը, որն այնուհետև ներկայացվեց ժողովրդական կոմի-

տարների խորհրդին։ 1918 թ. հունիսի վերջերին Վ. Ի. Լենինն ստորագրեց պետական վիճակագրության վերաբերյալ կանոնադրությունը, որը սահմանում էր սոցիալիստական պետության վիճակագրական ծառայության կազմակերպումը։

Այդ կանոնադրությամբ պետական վիճակագրության սիստեմի ղեկավարությունը հանձնարարվել էր կենտրոնական վիճակագրական վարչությանը։ Վլադիմիր Իլյիչն ընդգծում էր, որ կենտրոնական վիճակագրական վարչությունը պետք է լինի «...սոցիալիստական շինարարության, ստուգման, վերահսկողության օրգան, այն բանի հաշվառքի օրգան, ինչ որ սոցիալիստական պետությանը հարկավոր է գիտենալ առաջին հերթին այժմ, այս րոպեին» (Երկեր, հ. 33, էջ 401)։ Լենինի այս խոսքերում որոշված են սոցիալիստական պետության վիճակագրության զարգացման դերը և հիմնական ուղղությունը։

Սովետական վիճակագրության զարգացման համար առաջնակարգ նշանակություն են ունեցել լենինյան ցուցումները տեղական տնտեսական մարմինների վիճակագրական հաշվետվությունները կազմակերպելու մասին։ Այդ հաշվետվությունների ստեղծումը, նրանց հրապարակումն ու տարածումը, Լենինի կարծիքով, պետք է նպաստեին լավագույն փորձի փոխանակմանը, փոխադարձ վերահսկողությանն ու կատարման ստուգմանը, աշխատավորների լայն մասսաներին ժողովրդական տնտեսության կառավարմանը մասնակից դարձնելուն։ Ուստի, սովետական վիճակագրությունն իր գոյության առաջին իսկ օրերից, վիճակագրական հետազոտության այնպիսի մեթոդների հետ մեկտեղ, ինչպիսիք են՝ մարդահամարները, ընտրանքային և մոնոգրաֆիական հետազոտությունները, հենվեց ձեռնարկությունների ու հիմնարկությունների նախնական հաշվառման ու հաշվետվության վրա։ Ընդսմին, հաշվետվությունները կազմելու գործում կոչված էին կարևոր դեր խաղալու վիճակագրական մարմինները։ Լենինն ընդգծում էր, որ հաշվետվությունը պետք է առավել հակիրճ լինի, որ հաշվետվության ուռճացումը, դրանում ավելորդ ցուցանիշների առկայությունը մեծ չարիք է։ Վլադիմիր Իլյիչը պահանջում էր խստիվ պահպանել հաշվետվություն ներկայացնելու համար սահմանված ժամկետները. դրա ուշացումը նա համարում էր բյուրոկրատիզմի վատթարագույն դրսևորումը։

Արդեն 1921 թ. կուսակցությունը խնդիր էր դնում ամենակարճ ժամանակամիջոցում ստուգել ձեռնարկություններում ու հիմնարկություններում հաշվետվությունների դրվածքը, վերացնել գոյություն ունեցող թերությունները։

Այժմ պետական վիճակագրական մարմիններում պրակտիկա է դարձել հաշվառման ու հաշվետվության վիճակի ստուգումը արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության ու ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի օբյեկտներում և դրանց գործնական օգնություն ցույց տալը։ Վերջին տարիներս այդ աշխատանքին մասնակցել են նաև պետական վիճակագրության հասարակական տեսուչները։ Ներկայումս հանրապետության բոլոր շրջաններում գործում են պետական վիճակագրության հասարակական տեսուչների խմբեր։ Դրանց հիմնական խնդիրն է՝ գործնական օգնություն ցույց տալ ձեռնարկություններին, կոլտնտեսություններին, սովխոզներին, մթերող և մյուս կազմակերպություններին՝ հաշվառումն ու հաշվետվությունը բարելավելու նպատակով, ուսումնասիրել և տարածել աշխատանքի առաջավոր փորձը հաշվառման ու հաշվետվության բնագավառում, ստուգել հաշվետու



տվյալների ճշտությունը։ Այս ամենն զգալիորեն բարելավում է հաշվառման ու հաշվետվության վիճակը և բարձրացնում հաշվետվության որակը։

Մեծ է Լենինի դերը նաև սովետական առաջին հաշվեգրումների և, մանավանդ, 1920 թվականի օգոստոսի 28-ին անցկացված առաջին մարդահամարի կազմակերպման գործում։

Լենինյան աշխատություններում լայնորեն օգտագործված են արտասահմանյան երկրների բազմաթիվ մարդահամարների նյութերը։ Բնակչության վերաբերյալ հսկայական քանակությամբ վիճակագրական նյութերի ուսումնասիրության արտասահմանյան փորձը հնարավորություն էր ընձեռել մշակելու բնակչության վիճակագրական հետազոտությունների գիտական սկզբունքներն ու մեթոդները, որոնք հիմք ծառայեցին սովետական դեմոգրաֆիական վիճակագրության կազմակերպման համար։

Մեծ է Լենինի դերը ո՛չ միայն 1920 թվականի մարդահամարի անցկացման, այլև վերջինիս ծրագրի մշակման գործում։ Այստեղ հատուկ ուշադրություն է նվիրվել բնակչության դասակարգային կազմի, ըստ աշխատանքի բնույթի ու գոյության միջոցների աղբյուրների բաշխման ուսումնասիրությանը։ Մարդահամարի ծրագրում զետեղված էին նաև մարդկանց ազգության, մայրենի լեզվի, կրթության մակարդակի և այլնի վերաբերյալ հարցեր։ Հետագայում մարդահամարները հաջողությամբ անցկացնելու համար մեծ նշանակություն ունեցավ առաջին մարդահամարի փորձը։

Վերջերս մամուլում հրապարակվեց ՍՍՀՄ ԿՎՎ հաղորդագրությունը բնակչության 1970 թ. համամիութենական մարդահամարի մշակման հիմնական արդյունքների վերաբերյալ։ Մարդահամարի տվյալները վառ վկայությունն են մեր երկրի սոցիալ-տնտեսական կյանքում ձեռք բերված հսկայական հաջողությունների։

1971—1975 թթ. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նշված է տնտեսության հետագա զարգացման և սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման կոնկրետ ծրագիրը։ Այն մի նոր քայլ է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման, սովետական պետության տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործում։ Բնակչության մարդահամարի նյութերը IX հնգամյակի պլանի մշակման հիմքն են կազմում։ Առանց բնակչության թվաքանակի, կազմի, տեղաբաշխման ստույգ ու լրիվ տվյալների անհնար է ապահովել գիտականորեն հիմնավորված պլանավորում, քանի որ պլանների մշակումը պայմանավորված է աշխատանքային ներկա և ապագա ռեսուրսներով։

Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում նաև վիճակագրության ընտրանքային մեթոդին։ Իր աշխատություններում նա շատ է օգտագործել զեմստվոյական վիճակագրության բյուջետային հետազոտությունների տվյալները։ Սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո նա իր աշխատությունների ու ելույթների համար սիստեմատիկաբար ուսումնասիրում է կենտրոնական վիճակագրական վարչության բյուջետային հետազոտությունների նյութերը։ Ընդսմին նա բարձր է գնահատում համատարած դիտումների հետ միաժամանակ կատարվող ընտրանքային հետազոտությունները, որոնց նյութերը թույլ են տալիս ավելի խոր ուսումնասիրելու տնտեսական պրոցեսները։

Կոմունիստական շինարարության արդի փուլում զգալի չափով բարձրա-

ցել է բյուջետային հետազոտությունների դերը։ Բյուջեների նյութերը ներկա-
յումս լայնորեն օգտագործվում են պլանային ու տնտեսական աշխատանքում՝
բնակչության եկամուտների ու ծախսերի հաշվեկշիռն ուսումնասիրելու, բնակ-
չության անձնական օժանդակ տնտեսություններում ստացվող գյուղատըն-
տեսական արտադրանքը որոշելու, առևտուրը և բնակչության կենցաղային
սպասարկումը պլանավորելու համար և այլն։ Ուստի, վերջին տարիներին
խիստ ավելացել է բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների հե-
տազոտվող ընտանիքների թիվը։

Լենինն ուսուցում էր, որ սովետական վիճակագրությունը պետք է բա-
ցառիկ ճշմարտացի լինի (և նա հենց այդպիսին է), այլ կերպ չեն կարող լուծ-
վել կոմունիստական հասարակարգի կառուցման մեծ ու պատասխանատու
խնդիրները։ Սովետական վիճակագրության տվյալների ճշտությունն
ապահովվում է ո՛չ միայն սոցիալիստական ձեռնարկությունների ու կազմա-
կերպությունների նախնական տվյալների հուսալիությամբ, այլև դրանց մշակ-
ման գիտական ճիշտ մեթոդոլոգիայով։ Եվ այդ գործում անսահման մեծ է
լենինյան գաղափարների դերը։

Մեր երկրի էկոնոմիկայի ու կուլտուրայի աճը բնութագրող վիճակագրա-
կան տվյալների լայն ժողովրդականացումը սովետական պետական վիճակա-
գրության կարևոր խնդիրներից է։

Լենինն ուշադրությամբ հետևում էր վիճակագրական տվյալների հրա-
պարակումներին, այնտեղից նյութեր էր քաղում իր հետազոտությունների
համար։ Նա բացառիկ վարպետությամբ կարողանում էր վիճակագրական մե-
ծաքանակ նյութերի միջից ընտրել այն էական տվյալները, որոնք օգտագոր-
ծելի էին սոցիալ-տնտեսական հարաբերությունների համակողմանի բնու-
թագրման համար։

Լենինը նկատել է, որ վիճակագրական նյութի մշակման համար գիտա-
կան հիմք են ծառայում խմբավորումները, որոնց հաջողությունը կախված
է խմբավորման հատկանիշի՝ սոցիալ-տնտեսագիտական առումով ճիշտ ընտ-
րությունից։ Խմբավորման համար հատկանիշի ոչ-ճիշտ ընտրությունը կարող
է հանգեցնել սխալ եզրակացությունների։ «Վիճակագրությունը պետք է տա
թվերի ոչ թե քմահաճ սյունակներ, այլ ուսումնասիրվող երևույթի այն զանա-
զան սոցիալական տիպերի թվային լուսաբանումը, որոնք լիովին նշագծվել
կամ նշագծվում են կյանքի կողմից» (Երկեր, հ. 18, էջ 328)։ Նա հատուկ
ընդգծում էր, որ կարելի է հավաքել վիճակագրական հարուստ նյութեր, բայց
դրանց վատ ամփոփագրման և սխալ խմբավորման պատճառով այդ նյութե-
րը կարող են միանգամայն անպետք դառնալ։

Համակողմանիորեն որակյալ վերլուծության վրա հիմնված խմբավորու-
մը որոշիչ դեր է խաղում հասարակական պրոցեսների ուսումնասիրության
գործում և հատու զենք է դասակարգային պայքարում։

Իր Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում և մի շարք այլ աշխա-
տություններում Վ. Ի. Լենինը հերքել է նարոդնիկների ռեակցիոն գաղափար-
ները։ Հենվելով Կ. Մարքսի տնտեսագիտական տեսության վրա և հարստաց-
նելով այն՝ Լենինը նույն զեմստվոյական վիճակագրության տվյալներով, կի-
րառելով վիճակագրական խմբավորումների գիտական մեթոդը, բացահայ-
տեց կապիտալիզմի զարգացման պրոցեսը մինչհեղափոխական Ռուսաստա-
նի գյուղատնտեսության մեջ, որն արտահայտվել է գյուղացիության դասա-



կարգային շերտավորմամբ, երբ առաջանում էին մի կողմից՝ կուլակներ, շա-
հագործողներ, մյուս կողմից՝ չքավորներ, շահագործվողներ։

Ավելի լավ հասկանալու համար Լենինը շեշտում էր, թե ցարական Ռուսաստանի հողատիրության վիճակագրությունը խտացվում էր երեք խոշոր սյունակում. մասնավոր սեփականության, արքունական ու եկեղեցական և բաժնետուր հողերի։ Այդպիսի խմբավորումը քողարկում էր տնտեսությունների իրարից բոլորովին տարբեր սոցիալ-տնտեսական տիպերի միջև հողերի բաշխման իրական վիճակը։ Ըստ նարոդնիկների տվյալների, ամբողջությամբ վերցրած մեկ հողատիրոջը միջին հաշվով ընկնում էր 21,4 դեսյատին հող։ Բայց հողատիրության չափի այդ «ընդհանուր» միջին թիվը քողարկում էր տարբերությունը 10,5 միլիոն սակավահող գյուղացիների և 0,03 միլիոն կալվածատերերի միջև, որոնց սեփականությունն էր հողերի զգալի մասը։

Հողատիրության մեջ դասակարգային տարբերությունները բացահայտելու համար Լենինը խմբավորել է այն, առանձնացնելով հիմնական չորս սոցիալ-տնտեսական տիպ (ճորտատիրական շահագործմամբ ճնշված սնանկացած գյուղացիություն, միջակ գյուղացիություն, գյուղացիական բուրժուազիա ու կապիտալիստական հողատիրություն, ճորտատիրական լատիֆունդիաներ), որի շնորհիվ փայլուն ցույց է տրված յուրաքանչյուր տիպի հողատիրության չափերի տարբերությունը։

Խմբավորման հիման վրա Լենինը հետևյալ կարևոր եզրակացությունն է արել. «Սրանք են այն հարաբերությունները, որոնք առաջացնում են գյուղացիական պայքարը հողի համար։ Այս այն պայքարի ելակետն է, որ գյուղացիները ծխին (1—15 դեսյատին պլյուս սարկացուցիչ վարձակալությունը և այլն) մղում են խոշորագույն կալվածատերերի դեմ (մեկ տնտեսությանը 2333 դեսյատին)։ Ո՞րն է այս պայքարի վերջնակետի օբյեկտիվ տենդենցը։ Ակներև է, որ այդ տենդենցը խոշոր կալվածատիրական-ճորտատիրական հողատիրության ոչնչացումն է, այդ հողատիրության (այս կամ այն սկզբունքներով) անցումն է գյուղացիներին» (Երկեր, հ. 13, էջ 283—284)։

Տնտեսությունների տարբեր խմբերի կամ տիպերի քաղաքական-տնտեսական ճիշտ բնորոշման համար Լենինը հսկայական աշխատանք էր կատարում բուրժուական վիճակագրության մեջ կատարված վիճակագրական խմբավորումների վերահաշվման ու վերամշակման նկատառումով։ Նա բազմիցս նշել է, որ համակողմանիորեն հիմնավորված եզրակացություններ անելու համար անհրաժեշտ է ունենալ փոխադարձորեն առնչվող, միմյանց լրացնող մի շարք խմբավորումներ, որոնց հիմքում դրված են տարբեր հատկանիշներ (հողատարածության մեծությունը, անասունների գլխաքանակը, մեքենաների քանակը և այլն)։

Լենինի աշխատություններում մենք գտնում ենք բազմաթիվ ու բազմապիսի խմբավորումներ։ Դրանք վերաբերում են ո՛չ միայն գյուղատնտեսության ու արդյունաբերությանը, այլև բնակչությանը, պրոլետարիատի տընտեսական ու քաղաքական պայքարին։ Նա առանձնապես լայնորեն էր օգտագործում խմբավորումների մեթոդը։

Բուրժուական վիճակագրության տվյալները մշակելիս, Լենինն առաջինն է օգտագործել երկրորդ անգամ կատարվող խմբավորման եղանակները, այսինքն՝ վերախմբավորել է նախկինում խմբավորվածը։ Վերախմբավորման լենինյան այդ մեթոդը մեծ ավանդ է վիճակագրական խմբավորումների տեսության մեջ։

Սոցիալիստական շինարարության խոշոր պրոբլեմների լուծման ժամանակ Լենինը միշտ պահանջել է այնպիսի խմբավորումների կիրառում, որոնք թույլ տան ավելի խոր ուսումնասիրելու տվյալ հարցը:

Մեծ նշանակություն ունեն Լենինի դրույթները տնտեսական գործունեության մեջ ձեռք բերած հաջողություններն ըստ սոցիալիստական ձեռնարկությունների խմբավորման վերաբերյալ: Տեղական սովետական հիմնարկություններին ուղղված աշխատանքի ու պաշտպանության խորհրդի պատվիրանի նախագծում Լենինը պահանջում էր, որ տարեկան առնվազն երկու անգամ ճիշտ տեղեկություններ ներկայացվեն բոլոր տեսակի տնտեսությունների թվի, վիճակի, դրվածքի մասին: Նույնը նա պահանջում էր նաև արդյունաբերական ձեռնարկություններից, կառույցներից և այլ օբյեկտներից:

Սովետական էկոնոմիկայի համար առաջնակարգ նշանակություն ունեն այն գործոնների ուսումնասիրումն ու պարզումը, որոնց շնորհիվ որոշ ձեռնարկություններ դառնում են առաջավոր, իսկ որոշը՝ ետ մնացող, այն ազդակների վերլուծությունը, որոնց ազդեցությամբ ստեղծվում են տնտեսական գործունեության տարբեր արդյունքներ, քանի որ դրանք երևան են բերում արտադրության հետագա աճի ռեզերվները և եղած ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործման հնարավորությունները՝ ելնելով սոցիալիստական ողջ հասարակության շահերից:

Կոմունիստական շինարարության արդի փուլում զգալիորեն աճում է վիճակագրության դերը: Այն միջոցների թվում, որոնց օգնությամբ լուծվում են կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման խնդիրները, մեծ տեղ է գրավում խմբավորումների լենինյան մեթոդը, որը վիճակագրական հետազոտության կարևորագույն մեթոդներից է: Խմբավորումների մեթոդների առավել լայն կիրառումը մասնավորապես անհրաժեշտ է սովետական էկոնոմիկայի զարգացման այնպիսի կարևոր հարցերի ուսումնասիրության համար, ինչպիսիք են՝ աշխատանքի արտադրողականության, արտադրանքի ինքնարժեքի, ձեռնարկությունների շահույթի, արտադրության մասնագիտացման հարցերը և այլն:

Վիճակագրական գիտության համար հսկայական նշանակություն ունեն վիճակագրական միջին թվերի վերաբերյալ լենինյան ցուցումները, որոնք խմբավորումների վերաբերյալ ուսմունքի շարունակությունը և տրամաբանական զարգացումն են: Լենինը նշում էր, որ միջին թվերի գիտական կիրառումը հնարավոր է միայն ճիշտ կառուցված և գիտականորեն հիմնավորված խմբավորումների հիման վրա:

Լենինը բազմիցս ընդգծել է ոչ-միատարր կազմի համակցությունների համար միջիններ դուրս բերելու անթույլատրելիությունը: Նա նշել է, որ չի կարելի օգտագործել «հախուռն» ընդհանուր միջինները, որ այդ ընդհանուր միջինները պետք է փոխարինվեն խմբավորումների միջիններով:

Իր աշխատություններում նա խիստ քննադատել է բուրժուական վիճակագրության կեղծ միջինները: Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում լենինյան հայտնի աշխատության մեջ քննության է առնված մինչհեղափոխական Ռուսաստանի գյուղացիների կողմից հողի վարձակալության հարցը, փաստացի տվյալների հիման վրա համոզիչ ցույց է տրված նարոդնիկների հախուռն միջին թվերի հիմքից զուրկ լինելը, միջին թվեր, որոնք քողարկում էին ռուս գյուղացիության կազմալուծումը: Տնտեսագետ-նարոդնիկները Դնե-



պրյան նահանգի Տավրիկյան գավառի զեմստվոյական վիճակագրության տվյալներով պարզել էին, որ հողը վարձակալում են գյուղացիական ծխերի 56,2 տոկոսը, որ յուրաքանչյուր ծխի վարձակալած հողը կազմում է միջին թվով 12,4 դեսյատին, իսկ յուրաքանչյուր դեսյատինի վարձավճարը հավասար է 4 ռուբլի 23 կոպեկի: Լենինը, ըստ ցանքատարածության չափի, խմբերի բաժանելով գյուղացիական ծխերը և ըստ յուրաքանչյուր խմբի՝ միջին թվերը, ապացուցեց նարոդնիկական «միջին թվերի» անպիտանությունը:

Լենինը նման հաշվառումներ է կատարել «Բանվորների վաստակները և կապիտալիստների շահույթը Ռուսաստանում», «Կապիտալիզմը և հարկերը» հոդվածներում և մի շարք այլ աշխատություններում: Միջին մեծությունների օգնությամբ նա ցույց է տվել կապիտալիստական հասարակության դասակարգային հակասությունները:

Միջին թվերի լենինյան քննադատությունը պահպանել է իր նշանակությունը մինչև մեր օրերը: Բուրժուական վիճակագրությունը, կեղծելով տվյալները, հաճախ դիմում է կեղծ միջին թվերի օգնության: Այդպիսի միջին թվեր են օգտագործվում, օրինակ, բանվոր դասակարգի եկամուտներն արհեստական կերպով ավելացնելու համար: Բանվորների և ծառայողների միջին աշխատավարձն արհեստականորեն բարձրացնելու նպատակով աշխատավարձի ընդհանուր գումարի մեջ է մտցվում ոչ միայն բանվորական արիստոկրատիայի վերնախավի աշխատավարձը, այլև մոնոպոլիստական միավորների (կոնցեռնների, բանկերի դիրեկտորների և ուրիշների) եկամուտները, որոնք իրականում իրենցից հավելյալ արժեքի քողարկված ձևն են:

Սոցիալիստական հասարակարգի պայմաններում արմատապես փոխվում է վիճակագրական միջին թվերի նշանակությունը: Միջին մեծությունները մեզ մոտ անհրաժեշտ են ո՛չ միայն տնտեսագիտական վերլուծության համար, այլև ժողովրդատնտեսական պլանները կազմելու և դրանց կատարումը հաշվառման ենթարկելու, ինչպես նաև ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում արտադրության կազմակերպման զանազան հաշվարկումներ կատարելու համար:

Միջին թվերի հաշվարկումների վերաբերյալ լենինյան ցուցումները և օրինակները հիմք են ծառայում սովետական վիճակագրության մեջ միջին մեծությունների կիրառման մեթոդոլոգիան մշակելու համար:

Կոմունիստական շինարարությունը մեր երկրում մեծ ու պատասխանատու նորանոր խնդիրներ է առաջադրում, որոնց հաջող լուծումը շատ բանով կախված է հաշվառման ու վիճակագրության հետագա զարգացումից և կատարելագործումից: Այդ նպատակին հասնելու հիմնական պայմանը սոցիալիստական պետության վիճակագրության վերաբերյալ լենինյան գաղափարներն են, որոնք վառ կերպով լուսավորում են սովետական վիճակագրության հետագա զարգացման ուղիները:



Ա. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ՈՉ ՁԵՎԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ՆՈՐՄԵՐԸ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԽՄԲԵՐՈՒՄ

Քննարկման ներկայացվող պրոբլեմն ունի իր նախապատմությունը։
Դեռևս անցյալ դարի երկրորդ կեսին բուրժուական ինդուստրիալ սոցիո-
լոգիայում առաջադրվեց և արդյունավետ մշակվեց, այսպես կոչված, ոչ-ձևա-
կան կազմակերպությունների կամ խմբերի պրոբլեմը, որի հիման վրա հե-
տագայում, իբրև նրա տրամաբանական շարունակություն, ձևակերպվեց նաև
ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի հարցը։
Աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիների որոնման
պրոցեսում բուրժուական ինդուստրիալ սոցիոլոգիան հանգեց այն տեսակե-
տին, որ ձեռնարկության սոցիալական կազմակերպումն աշխատանքի ինտեն-
սիֆիկացիայի կարևոր միջոցներից մեկն է։ Սկսած այդ ժամանակից, արտա-
դրության սոցիալական կազմակերպման վերաբերյալ պատկերացումներն
ինդուստրիալ սոցիոլոգիայում որոշակի էվոլյուցիա են ապրում։
Աշխատանքի կազմակերպման նախնական, կլասիկ կոնցեպցիան, որը
հատկապես մշակեց Ֆ. Թեյլորը, սոցիալական կազմակերպումը դիտում էր
իբրև հարաբերությունների ու պարտականությունների առավելագույն ձևա-
կան, այսինքն՝ պաշտոնական ու վարչական կարգավորում։ Կազմակերպման
տվյալ սիստեմում մարդկային կամ սոցիալ-հոգեբանական գործոնի նշանա-
կությունն անտեսվում, իսկ լավագույն դեպքում հանգեցվում էր մինիմումի։
Իր սիստեմի մշակումը Թեյլորն սկսեց աշխատանքի նկատմամբ բանվորների
շահագրգռվածության «նախաձեռնություն-վարձահատուցում» նախկին կոն-
ցեպցիայի վերանայմամբ։ Վերջինիս հիմնական արատը նա տեսնում էր այն
բանում, որ իր աշխատանքը պետք է կազմակերպի բանվորը, իսկ վարչակար-
գը՝ պատասխանատվություն կրի միայն ընդհանուր ղեկավարության համար։
Նոր մոտեցումը կամ սկզբունքը, որի պաշտպաններից ու մշակողներից մեկը
Թեյլորն էր, ենթադրում էր երկու կողմ՝ սոցիալական և տեխնիկական։
Կազմակերպման սիստեմի սոցիալական իմաստը հանգեցվում է բազմա-
թիվ կանոնների, օրենքների, բանաձևերի մշակման, որոնք պետք է փոխա-



րինեին բանվորի անհատական դատողություններին, նախաձեռնությանը։
Բանվորն այս ամենի հետևանքով դառնում է արտադրության կցորդը, պլանա-
վորումն ու կառավարումը բացարձակորեն անջատվում են կատարումից ու կա-
տարողներից։
Աշխատանքի նկատմամբ բանվորի շարժառիթները նշված սիստեմի պայ-
մաններում սպառվում են հոգե-ֆիզիոլոգիական հնարավորությունների մա-
կարդակի վրա։ Սոցիալական միջավայրում բանվորը հանդես է գալիս որպես
մեկուսացված անհատ, իսկ բանվորական ողջ կոնտինգենտը՝ ոչ թե իբրև
կառուցվածքային ամբողջություն, այլ միմյանց չկապակցված տարրեր։
Վերջիններս միացնել կարելի է միայն արտաքին, խիստ նորմավորված հա-
րաբերությունների (օրենքների ու կանոնների) ռեգլամենտացիայի միջոցով։
Այլ կերպ ասած, ըստ Թեյլորի՝ արտադրության պայմաններում սոցիա-
լական կազմակերպումը զուտ ձևական է, որը հագեցված է բացառապես ար-
տադրողական, ֆունկցիոնալ բովանդակությամբ։ Միջանհատական չնորմա-
վորված, այսինքն՝ ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի նշանակու-
թյունը կազմակերպման նշված սիստեմում բացարձակապես անտեսվում է,
որը և դրա թույլ, արատավոր կողմերից մեկն է։ Բանն այն է, որ օրենքներն
ու կանոնները, որքան էլ այլազան ու բազմաթիվ լինեն, չեն կարող ընդգրկել
կյանքի ողջ հարստությունը և, ինչպես հետո կտեսնենք, արտադրապրոցեսը,
առանց մարդկանց հոգեբանական հաղորդակցման, առանց նրանց սոցիա-
լական և բարոյական ստեղծագործության, հնարավոր չէ։
Քննարկվող սիստեմի տեխնիկական նպատակն էր՝ աշխատանքի պրոցե-
սը տրոհել հնարավոր բաղկացուցիչ մասերի, առավելապես կրճատել դրանց
քանակը։ Սա Թեյլորի սիստեմի ռացիոնալ կողմն էր, որն իր հետագա մշա-
կումը գտավ, մասնավորապես, աշխատանքի հոգեբանության մեջ։
Մեր դարի 30-ական թվականներին սկսեց ձևավորվել կազմակերպման,
այսպես կոչված՝ «նեոկլասիկ» կոնցեպցիան, որն Է. Մեյոյի գլխավորությամբ
առաջադրեցին ամերիկյան սոցիոլոգները։ Այս կոնցեպցիայի հիմնական նը-
պատակը արտադրության կազմակերպման գործում մարդկային, զուտ հո-
գեբանական գործոնի և ոչ-ձևական հարաբերությունների դերի վերանայումը,
վերարժեքավորումն է։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման
հիմնական պայմանը նշված սիստեմում համարվում է մարդկանց աշխա-
տանքի, դրա պայմանների և միմյանց նկատմամբ ունեցած սուբյեկտիվ վե-
րաբերմունքը։ Այս առումով իրականացվող հետազոտությունները բուրժուա-
կան ինդուստրիալ հոգեբանության մեջ մի նոր ուղղության հիմքը հանդիսա-
ցան, որը կոչվեց «մարդկային հարաբերությունների» տեսություն։ Ի դեպ,
նշված ուղղությունը մեթոդոլոգիական և տեսական այլ հիմքի վրա հաջողու-
թյամբ մշակում են սովետական հոգեբանները։
«Մարդկային հարաբերությունների տեսության» էությունն այն է, որ
ամեն մի սոցիալական կազմավորման մեջ տեղի ունեցող երևույթներն ու
պրոցեսները ըմբռնվում են որպես դրա անդամների անմիջական կոնտակտ-
հաղորդակցման արդյունք. ուշադրության կենտրոնում են պահվում սկզբ-
նական, ոչ-ձևական, մարդկային հարաբերությունները, մարդկանց խմբային
վարքը։ Այստեղ մեթոդոլոգիական կարևոր նշանակություն ունի այն փաստը,
որ իբրև սկզբնական կազմակերպական միավոր ընդունվում է ոչ թե առանձին
անհատը, ինչպես Թեյլորի մոտ էր, այլ սոցիալական խումբը։ Քննարկվող ուղ-

ղության կարևոր առավելություններից մեկն էլ այն է, որ սոցիալական խմբի կառուցվածքը, բացի ձևականորեն սահմանված, պաշտոնական հարաբերություններից, իր մեջ է ներառնում հարաբերությունների, նորմերի մեկ ուրիշ սիստեմ ևս, որն անվանվեց ոչ-ձևական հարաբերություններ ու նորմեր։

Այսպիսով, մենք ընդհուպ մոտեցանք մեզ հետաքրքրող հարցի քննարկմանը։ Այժմ տեսնենք, թե ձևական և ոչ-ձևական հարաբերություններն ինչ հատկանիշներով են տարբերվում իրարից, որն է ոչ-ձևական հարաբերությունների սոցիալական իմաստը կամ ֆունկցիան, ինչպիսին է ձևականի և ոչ-ձևականի փոխազդեցությունը սկզբնական խմբերում և, վերջապես, հասարակական հարաբերությունների բարդ սիստեմում որտեղ տեղադրել ոչ-ձևական հարաբերությունները։

## I

Ձևական հարաբերությունների և նորմերի գլխավոր հատկանիշը համարվում է ծրագրայնությունը, կազմակերպական նորմերի և հարաբերությունների նախնական որոշակիությունը, որոշ առումով նույնիսկ նրանց հարկադրական բնույթը։ Այս ամենի շնորհիվ դրանք սևեռվում և ռեգլամենտացիայի են ենթարկվում։ Ասենք հերթափոխի պետի և բանվորի, իբրև սոցիալական որոշակի դերեր կատարողների, հարաբերությունը ձևական է այն առումով, որ կարգավորվում է վաղօրոք նախատեսված, նրանց կամքից և ցանկությունից անկախ, զուտ տնտեսական հարաբերություններով բնորոշվող կազմակերպական նորմերի միջոցով։ Նման հարաբերություններն ու նորմերը ընդհանրական ու պարտադիր են սկզբնական տարբեր խմբերի համար, էական, որակական տատանումներ չեն տալիս և նախորդում են խմբի կազմավորմանը։ Ձևական հարաբերությունները նախնական խմբերում մարդկանց հասարակական հարաբերությունների կոնկրետ արտահայտությունն են՝ գործունեության կենդանի պրոցեսում։

Ի տարբերություն այդ ամենի, ոչ-ձևական հարաբերություններն ու նորմերը ծրագրված չեն, նախնական որոշակիություն չունեն, չեն սևեռվում, ռեգլամենտացիայի չեն ենթարկվում։ Վերը նշված օրինակում, վարպետի և բանվորի միջև միաժամանակ գոյություն ունեն այնպիսի հարաբերություններ, որոնք խմբի և ընկերների նկատմամբ ունեցած վերաբերմունքից են բխում, խմբում դրանք ոչ-ձևական, ոչ-պաշտոնական, այլ զուտ մարդկային գործոններով որոշվող ստատուսի կամ, ասենք, խացիոնալ շարժառիթների, զգացմունքների, հույզերի, նախապաշարմունքների և այլնի արդյունք են։ Այս ամենի հետևանքով ոչ-ձևական հարաբերությունները, իրենց բնույթով տիրապետող ձևական հարաբերությունների համեմատությամբ, որոշակի տատանումների են ենթարկվում։ Այսպես, ուսումնական հաստատության միևնույն ֆակուլտետի տարբեր կուրսերում կարող են ձևավորվել այնպիսի հարաբերություններ ու նորմեր, որ մի կուրս աչքի ընկնի ջանասիրությամբ, դասախոսների նկատմամբ ունեցած էմոցիոնալ վերաբերմունքով, շրջապատի զգաստ արժեքավորմամբ և այլն, իսկ մյուսը՝ հակառակը։

Ձևական հարաբերություններն իրենց բնույթով կարող են լինել անդեմ, անանուն և չեն ենթադրում մարդկանց ամենօրյա հաղորդակցում, շփում։ Խոշոր արդյունաբերական ձեռնարկության տարբեր արտադրամասերում աշխատող բանվորների հարաբերությունն անդեմ, անանուն, այսինքն՝ ձևական է,



քանի որ անմիջական հաղորդակցմամբ միջանհատական կոնտակտներով չի բնորոշվում։ Նման հարաբերությունն ունի միանշանակ բովանդակություն և սահմանվում է համապատասխան հրահանգների, ինչպես նաև մարդկանց պաշտոնական պարտականությունների միջոցով։ Դրան հակառակ ոչ-ձևական հարաբերությունները կոլեկտիվի անդամների միջև գոյություն ունեցող մարդկային այն հարաբերություններն են, որոնք պայմանավորված են նախնական խմբի յուրաքանչյուր անդամի ռեալ և ոչ պաշտոնական դիրքով։ Նման հարաբերություններն անխուսափելիորեն ենթադրում են խմբի անդամների ամենօրյա հաղորդակցում, անմիջական շփում։ Անհատների հասարակական հարաբերությունները, սոցիալական փոխազդեցություններն այստեղ հանդես են գալիս անմիջական հաղորդակցման ձևով, որի շնորհիվ խմբի յուրաքանչյուր անդամ մշտական ինֆորմացիա է ստանում մյուսների գործունեության վերաբերյալ և սոցիալական արդյունավետ վերահսկողության ենթարկվում նրա կողմից։ Այսպիսով, ոչ-ձևական հարաբերություններում մարդկային, սուբյեկտիվ, զուտ հոգեբանական գործոնները առավել ցայտուն են արտահայտված և ավելի մեծ դեր են խաղում, քան ձևական հարաբերություններում։

Այս հանգամանքը շատ հեղինակների համար առիթ է ծառայել միակողմանիորեն հոգեբանականացնելու ոչ-ձևական հարաբերությունների բնույթը, նրանց հիմքում դնելով զուտ սոցիալ-հոգեբանական կարգի այնպիսի երևույթներ, ինչպիսիք են՝ համակրանքն ու հակակրանքը, ներշնչումն ու ընդօրինակումը, կոնֆորմիզմն ու հեղինակությունը և այլն։ Իրականում ոչ-ձևական հարաբերությունները հասարակական բարդ հարաբերությունների կազմային մասերից մեկն են, նրանց որոշակի օղակը, որոնք ունեն ուրույն սոցիալական դեր ու նշանակություն։

Այժմ, երբ ընդհանուր գծերով ընդգծվեցին և՛ ձևականի, և՛ ոչ-ձևականի հատկանշական տարբերությունները, տեսնենք, թե որն է ոչ-ձևական հարաբերությունների սոցիալական ֆունկցիան կամ իմաստը։

## II

Ամեն մի սկզբնական խումբ, լինի արտադրական, թե վարչական, չի սպառվում իր հարաբերությունների ձևական մասով, այն միշտ իր գործառական ծրագրից ավելի բարդ է ու բազմակողմանի։ Այստեղ ձևավորվում և գործում է չծրագրված, ինքնաբերաբար ծագած կազմակերպական կապերի, հարաբերությունների ու նորմերի մի ամբողջ սիստեմ, որն որոշակի սոցիալական ազդեցություն է թողնում խմբի գործառական ծրագրի իրականացման վրա։ Հարաբերությունների նշված սիստեմի անհրաժեշտությունը պայմանավորված է հետևյալ գլխավոր հանգամանքներով.

1. Կազմակերպական նորմերն ու ձևական հարաբերությունները, որոնք կոչված են կարգավորելու մարդկանց աշխատանքի և միմյանց նկատմամբ ունեցած փոխհարաբերությունները, ի վիճակի չեն ընդգրկելու կյանքի ողջ բարդությունն ու բազմազանությունը։ Սոցիալական իրավիճակները, մարդկային հարաբերությունների իրականացման օբյեկտիվ պայմանները շատ ավելի հարուստ ու այլազան են, քան նրանց արտացոլումը հանդիսացող կազմակերպական նորմերն ու ձևական հարաբերությունները։ Սրանով ամենևին տուրք չի տրվում սոցիալական ռելյատիվիզմին, այլ լոկ այն կարևոր միտքն է ընդգծվում, որ մարդ, կողմնորոշվելով միայն դեպի ձևական, պաշտոնական

նորմերը, միշտ չի կարողանում գտնել ճիշտ վարվելակերպի, գործողության ու վերաբերմունքի ցանկալի օրինակը։

Այս բացը լրացնելու են կոչված ոչ-ձևական հարաբերությունները։ Սրանով քննարկվող հարցն անմիջականորեն կապվում է նախնական խմբերի ինքնակառավարման պրոբլեմի հետ, որի մեջ, ըստ երևույթին, պետք է տեսնել ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի սոցիալական ֆունկցիայի առավել կարևոր կողմը։

Սոցիալական սիստեմներում ինքնակառավարման երևույթի մասին խոսվում է երկու իմաստով. ա) ինքնակառավարումը կարգավորման այն եղանակն է, որը տեղի է ունենում տվյալ սիստեմի ներսում, հատուկ, պաշտոնապես առանձնացված օրգանի գործունեության հիման վրա։ Այս իմաստով ձեռնարկությունը կամ նույնիսկ ողջ հասարակությունը բնութագրվում է իբրև ինքնակառավարվող սիստեմ։ Այս դեպքում ինքնակառավարումն ի նկատի է առնում կարգավորման չծրագրված, տարերային պրոցեսները, որոնք ընթանում են տվյալ սիստեմի շրջանակներում՝ առանց հատուկ կազմակերպող օրգանի կամ նրանից անկախ։ Ինքնակառավարման նման տիպի գլխավոր հատկանիշը ինքնակամությունն է, ինչպես նաև մշակված սկզբունքների ու նորմերի լոկալ բնույթը։ Հենց այս տիպի ինքնակազմակերպումն է կապվում ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի հետ։

Սկզբնական խումբը, ինքնակառավարման նպատակով, իր անդամների համար ստեղծում է սոցիալական, բարոյական, հոգեբանական և այլ բնույթի որոշակի արժեքներ ու նորմեր, որոնց ամբողջությունը միկրոռեժիմի մթնոլորտ է դառնում խմբի ներսում։ Այս ամենի շնորհիվ հիշյալ խումբը երևան է գալիս իբրև սոցիալական հսկողության միջոց, որով ազդում է աշխատանքային շարժառիթների, մարդկանց գաղափարական և հոգևոր զարգացման վրա։ Սկզբնական խումբն իր ոչ-ձևական հարաբերություններով անհատականի և հասարակականի հատման կետն է, փոխանցումը մեկը մյուսին։ Ոչ-ձևական հարաբերությունները կարելի է նմանեցնել մի վերափոխիչի, որի մեջ առավել չափով է տեղի ունենում անհատականի և հասարակականի ձևափոխումը։

Այս ամենի նկատառումն ունի ոչ միայն տեսական, այլև գործնական ակնհայտ նշանակություն։ Բանն այն է, որ սկզբնական խմբում մշակված արժեքներն ու նորմերը, սոցիալական ընթացքն ու տրամադրությունները բացասական կամ դրական առնչություն են ունենում գաղափարական ու դաստիարակչական, ուսումնական ու կազմակերպչական աշխատանքների հետ։ Սկզբնական խմբերում, քննարկվածը համեմատվում է սեփական և ուրիշների փորձի հետ, տեղադրվում է ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի սիստեմի մեջ, դրանից հետո միայն ընդունվում է կամ մերժվում, մասնակի վերափոխման ենթարկվում կամ ամբողջովին արժեքազրկվում։ Միայն այն իրադարձությունները, արվեստի ստեղծագործությունները և գիտության փաստերն են դառնում անհատի սոցիալ-հոգեբանական սեփականությունը, որոնք խիստ առնչվում են նրա փորձի հետ, մտնում նրա անմիջական հաղորդակցման և հարաբերությունների ոլորտը։ Այն ամենը, ինչ շրջանցում է միկրոմիջավայրը, անհատական փորձը, անհատի հակումը, չի դառնում սոցիալ-հոգեբանական փաստ, երևույթ։

Միկրոմիջավայրի, անմիջական հաղորդակցման և կոնտակտների միջոցով սկզբնական խմբի անդամներից յուրաքանչյուրը ճանաչում և հաղոր-



դակցվում է ողջ աշխարհի հետ, կրում ձևական հարաբերությունների ու մակրոմիջավայրի ազդեցությունը։ Մակրոմիջավայրը կամ միջնորդավորված ազդեցությունները ոչ այլ ինչ են, եթե ոչ հասարակության տիրապետող ազդեցությունը մարդկանց վրա՝ գիտության, գաղափարախոսության և մշակույթի միջոցով։ Միկրո և մակրո միջավայրերը կազմավորվում են անհատի և հասարակության փոխհարաբերության ու փոխազդեցության սահմանագծում։ Այդ սահմանը, որի վրա փոխազդում են անհատականն ու հասարակականը, սկզբնական խումբն է իր ձևական և ոչ-ձևական հարաբերություններով, ուր ընթանում է մեզնից յուրաքանչյուրի կյանքը։ Եթե մարդկանց անմիջական կապերը, ոչ-ձևական հարաբերությունները չանդրադառնային ընդհանուր սոցիալական կապերի վրա, չմիջնորդավորեին դրանց, ապա քննարկվող պրոբլեմը հազիվ թե ունենար գործնական որևէ նշանակություն։

2. Ոչ-ձևական հարաբերությունների և նորմերի սոցիալական իմաստն այն է, որ անհատն աշխատանքի պրոցեսում զգում է ինքնահաստատման, ինքնարտահայտման, սեփական հատկությունների դրսևորման այնպիսի պահանջ, որն անմիջաբար չի առնչվում արտադրության և ձևական հարաբերությունների հետ։ Եթե աշխատանքը սոսկ նյութական արժեքների ստեղծման կամ միայն գոյության միջոցների հայթայթման պրոցես լիներ, ապա՝ անտանելի ծանր ու տհաճ հետևանքներ կթողներ մարդկանց ներաշխարհի վրա։ Աշխատանքային գործունեության դիտարկումը ոչ միայն նրա տեխնոլոգիական ու արդյունավետության գնահատման, այլև սուբյեկտի ինքնահաստատման, ինքնարտահայտման առումով հնարավորություն է ընձեռում խոսելու մարդկային գործունեության այլ ձևերի մասին, որոնք էական ազդեցություն են թողնում աշխատանքի արտադրողականության վրա։ Գործունեության նման ձևերից են հաղորդակցումն ու ճանաչողությունը, կոմունիկացիան ու տեսական գործունեությունը, որոնք դրսևորվում են միջանհատական և ներխմբային կապերի բազմազանության, մարդկանց հոգևոր ընդհանրության, համախմբման և մտերմացման ոլորտներում։ Այսպիսի պահանջների բավարարումը հիմնականում կապվում է ոչ-ձևական հարաբերությունների հետ, ուր կարելի է տեսնել նրանց սոցիալական կարևոր ֆունկցիաներից մեկը։

## III

Քննարկվող պրոբլեմում, տեսական և գործնական հետաքրքրության առումով, անհրաժեշտ է ընդգծել ձևական և ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի փոխազդեցության հարցը։ Ձևականը և ոչ-ձևականը տարածության ու ժամանակի մեջ չեն կարող ոչ նախորդել միմյանց և ոչ մեկը մյուսի շարունակությունը կազմել։ Գոյաբանական իմաստով նրանք միահյուսվում, կառուցվածքային ամբողջություն են կազմում. գոյատևում են սոցիալական միևնույն միավորի՝ սկզբնական խմբի շրջաններում։ Սակայն իրենց նշանակության և սոցիալական ընթացքի առումով ձևական և ոչ-ձևական հարաբերությունների միջև դրսևորվում են բավական բարդ կապեր ու փոխազդեցություններ։ Փոխազդեցությունների բարդությունը կարելի է հանգեցնել երկու հիմնական ձևերի, նկատի ունենալով նրանց սոցիալական բնույթը, գործողության էությունը՝ ա) ոչ-ձևական հարաբերություններն ու նորմերն իրենց նշանակությամբ, սոցիալական իրենց ընթացքով կարող են հանդես գալ իբրև ձևականի լրացում ու կոնկրետացում։

Գործառական իմաստով ձևականը և ոչ-ձևականը համընկնում են՝ այստեղ տարբերվելով միայն իրենց ձևով և հոգեբանական բովանդակությամբ։ Ամեն մի հասարակություն շահագրգռված է ձևականի և ոչ-ձևականի նման հարաբերությամբ, որն առանձին անհատների, սկզբնական խմբերի ջանքերն ու պատկերացումները կապում, միահյուսում է հասարակության կամ հասարակության տիրող դասակարգերի շահերին ու պատկերացումներին։ Ոչ-ձևական հարաբերություններն ու նորմերը համընկնում են ձևականի հետ այն դեպքում, երբ սկզբնական խմբում ձևավորված մարդկային հարաբերությունները, մշակված սոցիալական ու բարոյական արժեքները նպաստում են հասարակության կողմից խմբին ներկայացված խնդիրների լուծմանը, երբ նրանք գործում են այն ուղղությամբ, ինչ ձևական հարաբերություններն ու նորմերը։ Ձևականի և ոչ-ձևականի նման հարաբերությունը հասարակական տարբեր սիստեմներում և տարբեր դասակարգերի կողմից միանշանակ չի արժեքավորվում։ Հակամարտ հասարակական ֆորմացիաներում, ձևականի և ոչ-ձևականի համընկնմամբ շահագրգռված են տիրող դասակարգերը։ Այլ կերպ լինել չի կարող, քանի որ գործող պաշտոնական, կազմակերպական նորմերն ու հարաբերությունները նրանց կամքի ու շահերի արտահայտությունն են։

Սոցիալիզմի.պայմաններում կոլեկտիվի առողջության, կենսունակության առաջին նախապայմաններից մեկը ձևական և ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի ներդաշնակությունն է, դրանց գործողության ուղիների համընկնումը։ Դա բացատրվում է նրանով, որ սոցիալիզմի պայմաններում ձևականը, պաշտոնականը, նորմավորվածը չեն կարող հակասության մեջ լինել առանձին կոլեկտիվների կամ դրանց անդամների շահերի հետ։ Ճիշտ է, անձնականի և հասարակականի, ոչ-ձևականի և ձևականի ներդաշնակությունը հոգեբանորեն միշտ չի գիտակցվում և ըմբռնվում, սակայն, օբյեկտիվորեն այն գոյություն ունի և կազմակերպական կարևոր սկզբունքներից է։ Այս ամենը, իհարկե, չի նշանակում, թե մեր հասարակության մեջ բոլոր դեպքերում ու պայմաններում են ձևականն ու ոչ-ձևականը ներդաշնակվում, գործում միևնույն ուղղությամբ։

Ձևականի և ոչ-ձևականի փոխհարաբերության հաջորդ հիմնական ձևը նրանց միջև առաջացող հակասությունն է։ Վերջինիս դրսևորման կոնկրետ իմաստն այն է, որ ձևական հարաբերություններն ու նորմերը կարող են արտամղվել, գործնականորեն արժեքազրկվել ոչ-ձևականի կողմից։

Որո՞նք են տվյալ իրավիճակին հանգեցնող պատճառներն ու պայմանները։ Ինչպես արդեն նշվեց, ներհակ հասարակության պայմաններում դրա հիմնական պատճառը ձևական հարաբերությունների դասակարգային, շահագործողական նկրտումն է, այսինքն՝ արտադրապրոցեսում մարդկային հարաբերությունների, աշխատանքի և վերջինիս պայմանների նկատմամբ սկզբնական խմբի շահերին չհամապատասխանող վերաբերմունքի կարգավորումն է։

Սոցիալիզմի ժամանակ ձևականի և ոչ-ձևականի հակադիր գործողության համար նման բնույթի սոցիալական պատճառ չկա։ Սակայն դա ամենևին չի նշանակում, թե մեր հասարակության մեջ ձևականը և ոչ-ձևականը չեն կարող բացասական փոխհարաբերության մեջ լինել։ Մեր կարծիքով ոչ-ձևական հարաբերություններն ու նորմերը կարող են հակասել ձևականին հետևյալ պատճառներով.



1. Մարդկանց գործունեության տեխնիկական և սոցիալական պայմանները, նյութական և հոգևոր պահանջմունքները շատ ավելի փոփոխական են, քան կազմակերպական այն սկզբունքներն ու նորմերը, որոնցով կարգավորվում և բավարարվում են վերոհիշյալ գործունեությունն ու պահանջմունքները։ Այսպիսով, կյանքի նոր պայմաններից ու խնդիրներից ետ չմնալու համար անհրաժեշտություն է առաջանում պարբերաբար վերանայել ու կատարելագործել ձևական հարաբերություններն ու նորմերը, կազմակերպական սկզբունքները։ Մասամբ այս նպատակն է հետապնդում երկրում իրականացվող տնտեսական նոր ռեֆորմը։

Ներկայումս ոչ միայն արտադրությունն ու պլանավորումը, այլև կրթությունն ու դաստիարակությունը, մարդկանց սոցիալ-տնտեսական կառավարումն ու գաղափարական զինվածությունը հնարավոր չէ իրականացնել հնացող մեթոդներով։ Պատահական չէ, որ այս նպատակով ևս մեզանում ռեալ քայլեր են կատարվում։ Ուստի, ոչ-ձևական հարաբերությունները և նորմերը ձևականը արժեքազրկում են, երբ այն ետ է մնում մարդկանց ռեալ կենսապայմաններից ու պահանջներից, հասարակության զարգացման նոր մակարդակից։ Ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի խոտորումը ձևականի գործառության ուղուց սովորաբար երկակի բնույթի է լինում։ Այն ցանկալի է և դրական նշանակություն է ունենում, եթե ուղղված է արդեն հնացած ձևական հարաբերությունների ու նորմերի սահմանափակության հաղթահարմանը, դրանց հետագա կատարելագործմանն ու զարգացմանը։ Խոտորումը ցանկալի չէ, եթե ոչ-ձևական հարաբերություններն ու նորմերը հակասում են ձևականի սոցիալական իմաստին ու նշանակությանը և հետապնդում են սոսկ տեղայնական և ոչ հասարակական շահեր ու նպատակներ։

Դիցուկ, սկզբնական խմբում (խանութում, արհեստանոցում, շինհրապարակում և այլն) մշակվել են այնպիսի ոչ-ձևական հարաբերություններ ու նորմեր, ստեղծվել է հոգեբանական այնպիսի ռեժիմ, որոնց պայմաններում բացառվում են չարաշահումն ու հավելագրումը, մարդկանց նկատմամբ անհարգալից վերաբերմունքն ու քաշքշուկը։ Պարզ է, որ նման մթնոլորտը ոչ միայն ցանկալի, այլև անհրաժեշտ է ձևական հարաբերությունների ու նորմերի հստակ ու անթերի իրականացման համար։ Բայց կարող է և հակառակը լինել՝ սկզբնական խմբում ձևավորվեն այնպիսի հարաբերություններ ու նորմեր, որոնց հետևանքով նպաստավոր պայմաններ ստեղծվեն ձևական հարաբերությունների ու նորմերի ոտնահարման, շրջանցման համար։ Եթե այս կամ այն սկզբնական խմբում խոշոր չափերի են հասնում հասարակական անցանկալի երևույթները՝ հանրային սեփականության հափշտակումը, տնտեսական թափթփվածությունը, կաշառակերությունը, սպեկուլյացիան, պաշտոնական դիրքի չարաշահումը և այլն, նշանակում է՝ դրանց համար պայմաններ են ստեղծվել ոչ-ձևական հարաբերությունների ոլորտում, ձևավորվել է նպաստավոր միկրոռեժիմ, միկրոմթնոլորտ։ Առանց այս հանգամանքի ճիշտ գնահատման, ըստ երևույթին, դժվար կլինի վերը նշված երևույթների հաղթահարումը, որը ներկայումս հասարակության առաջնահերթ խնդիրներից է։ Մյուս կողմից, նշվածի գործնական նկատառումը ենթադրում է այն կոնկրետ պայմանների ու հոգեբանական մեխանիզմների բացահայտումը, որոնք հանգեցնում են ոչ-ձևականի կողմից ձևական հարաբերությունների ու նորմերի կենսազրկմանը։

Գործառական իմաստով ձևականը և ոչ-ձևականը համընկնում են՝ այստեղ տարբերվելով միայն իրենց ձևով և հոգեբանական բովանդակությամբ։ Ամեն մի հասարակություն շահագրգռված է ձևականի և ոչ-ձևականի նման հարաբերությամբ, որն առանձին անհատների, սկզբնական խմբերի ջանքերն ու պատկերացումները կապում, միահյուսում է հասարակության կամ հասարակության տիրող դասակարգերի շահերին ու պատկերացումներին։ Ոչ-ձևական հարաբերություններն ու նորմերը համընկնում են ձևականի հետ այն դեպքում, երբ սկզբնական խմբում ձևավորված մարդկային հարաբերությունները, մշակված սոցիալական ու բարոյական արժեքները նպաստում են հասարակության կողմից խմբին ներկայացված խնդիրների լուծմանը, երբ նրանք գործում են այն ուղղությամբ, ինչ ձևական հարաբերություններն ու նորմերը։ Ձևականի և ոչ-ձևականի նման հարաբերությունը հասարակական տարբեր սիստեմներում և տարբեր դասակարգերի կողմից միանշանակ չի արժեքավորվում։ Հակամարտ հասարակական ֆորմացիաներում, ձևականի և ոչ-ձևականի համընկնմամբ շահագրգռված են տիրող դասակարգերը։ Այլ կերպ լինել չի կարող, քանի որ գործող պաշտոնական, կազմակերպական նորմերն ու հարաբերությունները նրանց կամքի ու շահերի արտահայտությունն են։

Սոցիալիզմի պայմաններում կոլեկտիվի առողջության, կենսունակության առաջին նախապայմաններից մեկը ձևական և ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի ներդաշնակությունն է, դրանց գործողության ուղիների համընկնումը։ Դա բացատրվում է նրանով, որ սոցիալիզմի պայմաններում ձևականը, պաշտոնականը, նորմավորվածը չեն կարող հակասության մեջ լինել առանձին կոլեկտիվների կամ դրանց անդամների շահերի հետ։ Ճիշտ է, անձնականի և հասարակականի, ոչ-ձևականի և ձևականի ներդաշնակությունը հոգեբանորեն միշտ չի գիտակցվում և ըմբռնվում, սակայն, օբյեկտիվորեն այն գոյություն ունի և կազմակերպական կարևոր սկզբունքներից է։ Այս ամենը, իհարկե, չի նշանակում, թե մեր հասարակության մեջ բոլոր դեպքերում ու պայմաններում են ձևականն ու ոչ-ձևականը ներդաշնակվում, գործում միևնույն ուղղությամբ։

Ձևականի և ոչ-ձևականի փոխհարաբերության հաջորդ հիմնական ձևը նրանց միջև առաջացող հակասությունն է։ Վերջինիս դրսևորման կոնկրետ իմաստն այն է, որ ձևական հարաբերություններն ու նորմերը կարող են արտամղվել, գործնականորեն արժեքազրկվել ոչ-ձևականի կողմից։

Որո՞նք են տվյալ իրավիճակին հանգեցնող պատճառներն ու պայմանները։ Ինչպես արդեն նշվեց, ներհակ հասարակության պայմաններում դրա հիմնական պատճառը ձևական հարաբերությունների դասակարգային, շահագործողական նկրտումն է, այսինքն՝ արտադրապրոցեսում մարդկային հարաբերությունների, աշխատանքի և վերջինիս պայմանների նկատմամբ սկզբնական խմբի շահերին չհամապատասխանող վերաբերմունքի կարգավորումն է։

Սոցիալիզմի ժամանակ ձևականի և ոչ-ձևականի հակադիր գործողության համար նման բնույթի սոցիալական պատճառ չկա։ Սակայն դա ամենևին չի նշանակում, թե մեր հասարակության մեջ ձևականը և ոչ-ձևականը չեն կարող բացասական փոխհարաբերության մեջ լինել։ Մեր կարծիքով ոչ-ձևական հարաբերություններն ու նորմերը կարող են հակասել ձևականին հետևյալ պատճառներով.



1. Մարդկանց գործունեության տեխնիկական և սոցիալական պայմանները, նյութական և հոգևոր պահանջմունքները շատ ավելի փոփոխական են, քան կազմակերպական այն սկզբունքներն ու նորմերը, որոնցով կարգավորվում և բավարարվում են վերոհիշյալ գործունեությունն ու պահանջմունքները։ Այսպիսով, կյանքի նոր պայմաններից ու խնդիրներից ետ չմնալու համար անհրաժեշտություն է առաջանում պարբերաբար վերանայել ու կատարելագործել ձևական հարաբերություններն ու նորմերը, կազմակերպական սկզբունքները։ Մասամբ այս նպատակն է հետապնդում երկրում իրականացվող տնտեսական նոր ռեֆորմը։

Ներկայումս ոչ միայն արտադրությունն ու պլանավորումը, այլև կրթությունն ու դաստիարակությունը, մարդկանց սոցիալ-տնտեսական կառավարումն ու գաղափարական զինվածությունը հնարավոր չէ իրականացնել հնացող մեթոդներով։ Պատահական չէ, որ այս նպատակով ևս մեզանում ռեալ քայլեր են կատարվում։ Ուստի, ոչ-ձևական հարաբերությունները և նորմերը ձևականը արժեքազրկում են, երբ այն ետ է մնում մարդկանց ռեալ կենսապայմաններից ու պահանջներից, հասարակության զարգացման նոր մակարդակից։ Ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի խոտորումը ձևականի գործառության ուղուց սովորաբար երկակի բնույթի է լինում։ Այն ցանկալի է և դրական նշանակություն է ունենում, եթե ուղղված է արդեն հնացած ձևական հարաբերությունների ու նորմերի սահմանափակության հաղթահարմանը, դրանց հետագա կատարելագործմանն ու զարգացմանը։ Խոտորումը ցանկալի չէ, եթե ոչ-ձևական հարաբերություններն ու նորմերը հակասում են ձևականի սոցիալական իմաստին ու նշանակությանը և հետապնդում են սոսկ տեղայնական և ոչ հասարակական շահեր ու նպատակներ։

Դիցուկ, սկզբնական խմբում (խանութում, արհեստանոցում, շինհրապարակում և այլն) մշակվել են այնպիսի ոչ-ձևական հարաբերություններ ու նորմեր, ստեղծվել է հոգեբանական այնպիսի ռեժիմ, որոնց պայմաններում բացառվում են չարաշահումն ու հավելագրումը, մարդկանց նկատմամբ անհարգալից վերաբերմունքն ու քաշքշուկը։ Պարզ է, որ նման մթնոլորտը ոչ միայն ցանկալի, այլև անհրաժեշտ է ձևական հարաբերությունների ու նորմերի հստակ ու անթերի իրականացման համար։ Բայց կարող է և հակառակը լինել՝ սկզբնական խմբում ձևավորվեն այնպիսի հարաբերություններ ու նորմեր, որոնց հետևանքով նպաստավոր պայմաններ ստեղծվեն ձևական հարաբերությունների ու նորմերի ոտնահարման, շրջանցման համար։ Եթե այս կամ այն սկզբնական խմբում խոշոր չափերի են հասնում հասարական անցանկալի երևույթները՝ հանրային սեփականության հափշտակումը, տնտեսական թափթփվածությունը, կաշառակերությունը, սպեկուլյացիան, պաշտոնական դիրքի չարաշահումը և այլն, նշանակում է՝ դրանց համար պայմաններ են ստեղծվել ոչ-ձևական հարաբերությունների ոլորտում, ձևավորվել է նպաստավոր միկրոռեժիմ, միկրոմթնոլորտ։ Առանց այս հանգամանքի ճիշտ գնահատման, ըստ երևույթին, դժվար կլինի վերը նշված երևույթների հաղթահարումը, որը ներկայումս հասարակության առաջնահերթ խնդիրներից է։ Մյուս կողմից, նշվածի գործնական նկատառումը ենթադրում է այն կոնկրետ պայմանների ու հոգեբանական մեխանիզմների բացահայտումը, որոնք հանգեցնում են ոչ-ձևականի կողմից ձևական հարաբերությունների ու նորմերի կենսազրկմանը։

2. Սոցիալիզմի բնորոշ հատկանիշներից է անհատական, խմբային ու հասարակական շահերի ներդաշնակությունը։ Այս հանգամանքը միշտ չէ, որ գիտակցում, հոգեբանորեն ըմբռնում են սկզբնական խմբի անդամները։ Ավելին, որոշ դեպքերում սկզբունքը կարող է դրսևորվել սոսկ հնարավորության ձևով, եթե չի ամրապնդվում անհրաժեշտ գործնական միջոցներով և սուբյեկտիվ բնույթի ջանքերով։ Այս էլ, ըստ երևույթին, այն երկրորդ պայմանն է, որը կարող է հանգեցնել ձևականի և ոչ-ձևականի հակադրությանը, սոցիալական անհամատեղելիությանը։

3. Վերջապես, ձևական և ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի անհամապատասխանության հիմքում կարող են լինել զուտ սոցիալ-հոգեբանական բնույթի պատճառներ։ Հոգեբանական շարժառիթը, ներշնչումն ու ընդօրինակումը, սկզբնական խմբում որոշակի ավանդույթների ու սովորույթների առկայությունը, կոնֆորմիզմը այն հիմնական ազդակներն են, որոնք կարող են հանգեցնել ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի բացասական սիստեմի մշակմանը, եթե նույնիսկ չկա դրա օբյեկտիվ անհրաժեշտությունը ձևական հարաբերությունների մեջ։

Հասկանալի է, այս առումով չի սպառվում պրոբլեմի ամբողջական մեկնաբանումը. այն թերևս նոր է հետազոտվում։

IV

Անհրաժեշտ է նաև որոշել ոչ-ձևական հարաբերությունների ու նորմերի տեղը հասարակական հարաբերությունների սիստեմում։

Հասարակական հարաբերության ամեն մի ձև գոյություն ունի մարդկանց գործունեության միջոցով և ենթադրում է մարդկանց ու իրերի հարաբերությունների միասնություն։ Նյութական հարաբերությունների մեջ առաջ են մղվում սեփականատիրական-իրային հարաբերությունները, իսկ գաղափարականում՝ հասարակական գաղափարները, մարդկանց հարաբերությունները դրանց նկատմամբ։ Սոցիալական հարաբերությունները նույն հասարական հարաբերություններն են, որոնք, սակայն, դրսևորվում են այնպիսի բեկմամբ, որտեղ առաջին պլանի վրա են մղվում ոչ իրերն ու գաղափարները, այլ մարդիկ, խմբերը, մարդկանց ընհանրությունները (դասակարգերը, ազգերը, կոլեկտիվները)։ Դրանք սոցիալական սուբյեկտների հարաբերություններն են սոցիալական շահերի նկատմամբ։ Սոցիալական սուբյեկտիվ բնույթից ելնելով, դրանք կարող են կոչվել սոցիալ-քաղաքական (դասակարգային), ազգային, ամուսնա-ընտանեկան և միջանհատային։ Ոչ-ձևական հարաբերությունները, ըստ երևույթին, պետք է տեղադրել սոցիալական հարաբերությունների միջանհատային ձևի մեջ։

Նյութական և գաղափարական հարաբերությունները կազմում են երկու, ասես, հորիզոնական սիստեմներ, որոնցից գաղափարականը բարձրանում է նյութականի հիմքի վրա։ Սոցիալականը վերևից ներքև հատում է այս երկու սիստեմները, որովհետև սոցիալական սուբյեկտի շահերն իրենց բնույթով կարող են լինել և՛ նյութական, և՛ գաղափարական։

Այսպիսով, ոչ-ձևական հարաբերությունները, որոնց կրողը սոցիալական սուբյեկտն է՝ մարդը, չեն կարող գոյություն ունենալ հասարակական լայն հարաբերություններից դուրս։ Այս հանգամանքի նկատառումը մեթոդոլոգիական կարևոր նշանակություն ունի քննարկվող պրոբլեմի հետագա, արդյունավետ ուսումնասիրման համար։

---

Ս. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

**Հայկական ՍՍՀ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի գլխավոր արտադրական վարչության պետ, տեխնիկական գիտությունների թեկնածու**

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՏՈՄԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆԸ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանում հատուկ տեղ է գրավում էներգետիկայի զարգացման պրոբլեմը և դա միանգամայն հասկանալի է։ «Էլեկտրիֆիկացումը, որը կոմունիստական հասարակարգի էկոնոմիկայի կառուցման առանցքն է, առաջատար դեր է խաղում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը զարգացնելու, արդի ողջ տեխնիկական առաջադիմությունն ապահովելու գործում։ Ուստի, անհրաժեշտ է ապահովել **էլեկտրաէներգիայի** արտադրության **գերազանց տեմպերը** (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, 1962, էջ 490)։

Մեր երկիրն էներգետիկայի բնագավառում մեծ հաջողությունների է հասել ութերորդ հնգամյակում։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը ՍՍՀ Միությունում 1970 թվականին հասավ 740 մլրդ կվտ-ժամի և գերազանցեց Անգլիային, Ֆրանսիային, ԳՖՀ-ին ու Շվեդիային՝ միասին վերցրած։ Կառուցվել և գործում են Բրատսկի ու Կրասնոյարսկի՝ աշխարհում խոշորագույն հիդրոկայանները, երեսունից ավելի մեր ջերմաէլեկտրակայաններն ունեն ավելի քան մեկ մլն կվտ կարողություն։ Հնգամյակի ընթացքում էներգետիկայի արտադրության մեջ ներդրվել է 14 միլիարդ ռուբլի։ Էներգետիկան տվել է 15 մլրդ ռուբլու կուտակումներ։ Այդ բնագավառում լուրջ հաջողություններ են ձեռք բերվել տեխնիկա-տընտեսական ցուցանիշների բարելավման գործում։ Էլեկտրակայանները և էլեկտրացանցերը սպասարկող անձնակազմը կրճատվել է մեկ ու կես անգամ։ Պետական էներգետիկ սիստեմներից էլեկտրաէներգիա ստանալու շնորհիվ հսկայական խնայողություն է ունեցել գյուղատնտեսությունը։

Էներգետիկայի բնագավառում լուրջ հաջողությունների է հասել նաև մեր հանրապետությունը։ ՍՄԿԿ XXIV համագումարի ամբիոնից այդ հաջողությունների մասին ասաց Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանը. «Հանրապետությունում հիմնականում լուծված է ժողովրդա-տնտեսական կարևոր մի խնդիր՝ ստեղծվել է էներգետիկ կայուն բազա։ Ավարտվել է մի շարք զորեղ ջերմաէլեկտրակայանների շինարարությունը, արագ տեմպերով է ընթանում հիդրոէլեկտրակայանների բարձր լեռնային կասկադի կառուցումը։ Հինգ տարում էլեկտրաէներգիայի արտադրությունը Հայաստանում աճել է ավելի քան երկու անգամ։ Դա թույլ է տվել ապահովելու ամբողջ ժողովրդական տնտեսության և, մասնավորապես, արդյունաբերության առաջատար այնպիսի ճյուղերի հետագա զարգացումը, ինչպիսիք են՝ մեքենաշինությունը, քիմիական ինդուստրիան և գունավոր մետալուրգիան»։

Բնորոշ է, որ ութերորդ հնգամյակում, նույնիսկ, ամբողջությամբ վերցրած, էլեկտրաէներգիայի սպառման վիթխարի աճի պայմաններում, Սևան—Հրազդանի կասկադի էլեկտրակայանները, տնտեսելով Սևանա լճի ջրերը, երկու անգամ պակասեցրել են էներգիայի արտադրությունը։ Հանրապետության էներգամատակարարման հիմնական ծանրությունն իրենց վրա վերցրին ջերմաէլեկտրակայանները։ Ջերմաէլեկտրակայաններում էլեկտրաէներգիայի արտադրությունը ութերորդ հնգամյակում 8,2 անգամ ավելի էր յոթերորդ հնգամյակից և կազմեց 18,8 միլիարդ կվտ-ժամ։ Ջերմաէլեկտրակայանների հաջող աշխատանքը հանգեցրեց այն բանին, որ Սևանա լճի մակարդակը հնգամյակի ընթացքում իջավ ընդամենը 61 սանտիմետրով, մինչդեռ նախորդ հինգ տարիներում այն իջել էր 318 սանտիմետրով։

Տարեցտարի աճում է էլեկտրաէներգիայի

սպառումը։ Դա պահանջում է գործարկել արտադրական նոր կարողություններ, էլեկտրահաղորդման նոր գծեր և տրանսֆորմատորային նոր ենթակայաններ։ Դեռևս ԳՕԷԼՌՕ-ի պլանը կազմելիս նրա հեղինակները գտնում էին, որ ժողովրդական տնտեսության ճյուղերի տեխնիկական վերազինումն անհրաժեշտ է դարձնում էներգետիկայի զարգացման առավելագույն տեմպերի ապահովումը։

Եթե 1950 թվականի ցուցանիշներն ընդունենք 100, ապա արդյունաբերության և էլեկտրաէներգիայի արտադրության աճը ՍՍՀՄ-ում կբնորոշվի հետևյալ թվերով.

| | *1950* | *1960* | *1969* |
|---|---|---|---|
| *Ողջ արդյունաբերությունը* | *100* | *304* | *635* |
| *Էլեկտրաէներգիայի արտադրությունը* | *100* | *320* | *760* |

Անընդհատ աճում է աշխատանքի էներգազինվածությունը, այսինքն մեկ բանվորի հաշվով էլեկտրաէներգիայի սպառումը։ Եթե 1913 թվականի էներգազինվածությունն ընդունենք որպես մեկ միավոր, ապա 1965 թվականին այն կազմել է 20, իսկ 1968-ին՝ 23։

Արագ է աճում բնակչության, մանավանդ, գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային կարիքների համար կատարվող էլեկտրաէներգիայի սպառումը։ 1965 թվականին մեր երկրի յուրաքանչյուր բնակչի կուլտուր-կենցաղային կարիքների համար ծախսվել է 200 կվտ-ժամ, 1970 թվականին այն կրկնապատկվեց և կազմեց 400 կվտ-ժամ։ Միայն երեք տարում՝ 1965—1968 թթ. ռադիոընդունիչների թիվն ավելացավ և 26,8 միլիոն հատից հասավ 44,5 միլիոնի, իսկ հեռուստացույցներինը՝ 15,7 միլիոնից 26,8 միլիոնի։

Էլեկտրաէներգիայով բոլոր կարիքները լիովին ապահովելու համար կուսակցության XXIV համագումարն անհրաժեշտ գտավ էլեկտրաէներգիայի արտադրությունը տարեկան հասցնել 1030—1070 մլրդ կվտ-ժամի։ Այդ նպատակով հնգամյակի ընթացքում էլեկտրակայաններում կգործարկվեն 65—67 մլն կվտ նոր կարողություններ, գլխավորապես ջերմաէլեկտրակայաններում էներգետիկ խոշոր բլոկների տեղակայման հաշվին։

ՍՄԿԿ XXIV համագումարը նախատեսեց ատոմային էներգետիկայի այնպիսի զարգացում, որ այս հնգամյակում գործարկվեն 6—8 մլն կվտ կարողություններ։ ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինը ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանի դիրեկտիվների վերաբերյալ իր զեկուցման մեջ ասաց. «Կարևոր է նշել, որ կարողությունների ամբողջ աճի 12 տոկոսը տալու են ատոմային էլեկտրակայանները»։

Նոր հնգամյակում կձեռնարկվի ատոմային էլեկտրակայանների շինարարության ընդարձակ ծրագրի իրականացումը նախ երկրի եվրոպական մասում, որտեղ վառելիքի ռեսուրսները սահմանափակ են։ Այդ ծրագիրը նախատեսում է 10—12 տարում գործարկել 30 մլն կվտ կարողության ատոմային էլեկտրակայաններ, որը 3 մլրդ ռուբլով կկրճատի ածխարդյունաբերության զարգացման համար կատարվելիք կապիտալ ներդրումները։ Անցած հնգամյակում անհնար էր սկսել նման ծրագրի իրականացումը, քանի որ մեքենաշինությունը դեռևս ի վիճակի չէր ատոմային էլեկտրակայանների համար անհրաժեշտ սարքավորում արտադրելու։

Կարևոր խնդիրներ են դրվել էլեկտրակայանների տեխնիկա-տնտեսական ցուցանիշների էական բարելավման, արտադրածախսերի, անձնակազմի թվի կրճատման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, էներգամատակարարման հուսալիության ապահովման նպատակով։

Հայաստանի ատոմային էլեկտրակայանի նախապատրաստական կառույցների շինարարությունն սկսվեց 1969 թ. չորրորդ եռամսյակում։ Անցյալ տարի ձեռնարկվեց հիմնական կառույցների շինարարությունը։ Հայաստանի ատոմային էլեկտրակայանի նախագծա-նախահաշվային փաստաթղթերը մշակել է համամիութենական տեպլոէլեկտրոպրոյեկտ նախագծային ինստիտուտի Մոսկվայի բաժանմունքը։ Նախագիծը նախնական փորձաքննություն անցել է էներգետիկայի և էլեկտրիֆիկացման, ինչպես նաև միջին մեքենաշինության մինիստրություններում։ Այնուհետև այն փորձաքննարկվել, քննության է առնվել և հաստատվել ՍՍՀՄ պետշինի և ՍՍՀՄ պետպլանի կողմից։

Ատոմային էլեկտրակայանը կառուցվում է Արարատյան դաշտի չօգտագործվող հողերում, որի առաջին հերթի կարողությունը ծրագրված է 815 հազար կվտ։ Էլեկտրակայանում տեղադրվելու են ջրա-ջրային տիպի երկու ռեակտորներ, յուրաքանչյուրը 440 հազար կվտ կարողությամբ, այսինքն՝ այնպիսիք, որոնք արդեն շատ տարիներ հաջողությամբ աշխատում են Վորոնեժի ատոմային էլեկտրակայանում։ Նույնպիսի ռեակտորներ են տեղակայվելու նաև Կոլա թերակղզու ատոմային էլեկտրակայանում, ինչպես նաև էներգետիկայի և էլեկտրիֆիկացման մինիստրության կողմից



կամ նրա օգնությամբ՝ սոցիալիստական լագերի մի շարք երկրներում կառուցվող ատոմային էլեկտրակայաններում։

Ռեակտորի բլոկում աշխատելու են երկուական տուրբոգեներատորներ, յուրաքանչյուրը 220 հազար կվտ կարողությամբ։ Այսպիսով, այդ տուրբոգեներատորներով ատոմային էլեկտրակայանի առաջին հերթի կարողությունը կլինի 880 հազար կվտ։ Վերը նշված 815 հազար կվտ կարողությունը փոքր ինչ պակաս է սահմանված շահագործման ամառվա ամիսների պայմաններից ելնելով, երբ որոշ չափով նվազում են խտարանների պաղեցման հնարավորությունները։

Էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունն առաջին հերթում սահմանված է 6,11 մլրդ կվտ-ժամ, այդ թվում՝ օգտակար թողարկումը՝ 5,60 մլրդ կվտ-ժամ։ Էլեկտրակայանի հիմնական ու օժանդակ կառույցների տեղաբաշխման գլխավոր հատակագծով նախատեսված է ևս երկու ռեակտորների տեղադրման և էլեկտրակայանի կարողության կրկնապատկման հնարավորություն։ Էներգաշինարարների համար կառուցվելու է հինգհարկանի և բազմահարկ տներով ժամանակակից ոչ մեծ քաղաք, որի բնակչությունը տասը հազար մարդուց ավելի կլինի։

Նոր հիմնադրվող քաղաքի բնակչության սպասարկման համար նախատեսված են իրագործելու մի շարք կարևոր միջոցառումներ։ Դրանց թվին են պատկանում՝ կուլտուր-կենցաղային օբյեկտների, դպրոցների, նախադպրոցական ու առողջապահական հիմնարկությունների շենքերի, ջրմուղ-կոյուղու կառուցումը և այլն, որոնց համար սովետական կառավարությունն անհրաժեշտ միջոցներ է տրամադրել։

ՍՍՀՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացման մինիստրությունն այս տարվա հունվարին հատուկ հրաման տվեց Հայաստանի ատոմային էլեկտրակայանի շինարարությունն արագացնելու մասին, ուր հանգամանորեն նշված է, թե ինչը և երբ պետք է կատարվի, ինչպիսի մեխանիզմներ են հատկացվելու շինարարությանը և դրանց գործադրման ժամկետները։ Հրամանը 220-ական կվտ կարողությամբ երկու բլոկներով առաջին ռեակտորի գործարկումը նախատեսում է 1974, իսկ երկրորդինը (նույն էներգաբլոկներով)՝ 1975 թվականին։ Հաճախ հարցնում են, թե որքանո՞վ ճիշտ է ատոմային էլեկտրակայանի կառուցումը Հայաստանում։ Ոմանք կարծում են, որ դրա փոխարեն կարելի կլիներ կառուցել նոր հիդրոկայաններ կամ ջերմակայաններ։ Փորձենք պարզել այս հարցը։

## ԱՏՈՄԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆՆԵՐ ՍՍՀՄ-ում

*Աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայանը կառուցվել է Սովետական Միությունում՝ Օբնինսկում 1954 թվականին, հինգ հազար կիլովատ կարողությամբ։ Չորս տարի անց շահագործման է հանձնվել Սիբիրի ատոմային էլեկտրակայանը, որի կարողությունը սկզբում եղել է 100 հազար կիլովատ։ Հետագայում այն հասել է 600 հազար կիլովատի։*

*Ուրալում 1964 թվականի ապրիլին շահագործման է հանձնվել Բելոյարսկի ատոմային էլեկտրակայանը, որի առաջին բլոկի կարողությունը 100 հազար կիլովատ էր։ Հետագայում գործարկվել է երկրորդ բլոկը՝ 200 հազար կիլովատ կարողությամբ, ներկայումս կառուցվում է երրորդ բլոկը՝ 600 հազար կիլովատ կարողությամբ։*

*Կասպից ծովի ափին, Մանգիշլակ թերակղզու Շևչենկո քաղաքում գործում է ԲՆ—350 տիպի ռեակտորով 150 հազար կիլովատ կարողությամբ ատոմային էլեկտրակայան։ Այն էլեկտրաէներգիա արտադրելու հետ միասին, օրական տալիս է 120 հազար խորանարդ մետր աղազերծված ջուր, որը օգտագործվում է խմելու և կենցաղային նպատակների համար։*

*ՍՍՀՄ-ում գործում են և այլ ատոմային էլեկտրակայաններ։*

Երբ 1954 թվականին Սովետական Միությունում գործարկվեց աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայանը, մամուլում նշվեց, որ ատոմային էներգետիկայի պրոգրեսի, ռեակտորների կարողությունների ավելացման, դրանց էկոնոմիկայի բարելավման, ատոմային էլեկտրակայանների արտադրած էներգիայի էժանացմանը զուգընթաց, ատոմային էլեկտրակայանները լայն կիրառում կգտնեն վառելիքային լարված հաշվեկշիռ ունեցող տնտեսական և, առավել ևս՝ ամենևին էներգետիկ ռեսուրսներ չունեցող շրջաններում։ Չէ՞ որ առաջին ատոմային էլեկտրակայանի կարողությունն ընդամենը 5 հազար կվտ էր. հսկայական էր յուրաքանչյուր կվտ-ի արժեքը, մեծ էր սպասարկող անձնակազմը և էլեկտրաէներգիայի ինքնարժեքը մոտ տասն անգամ բարձր էր ջերմաէլեկտրակայաններում արտադրվող էներգիայի ինքնարժեքից։

Հարկ է նշել, որ վերջին ժամանակաշրջանում տեխնիկայի ոչ մի ճյուղ այնքան արագ չի զարգացել, որքան ատոմային էներգետիկան։ Տարեցտարի էական փոփոխություններ են մտցվել ատոմային էլեկտրակայանների շինարարության հետ կապված նախագծա-կոնստրուկտորական լուծումներում։ Ատոմային էլեկտրակայանները, որոնց շինարարությունն սկսվել է Հայաստանի էլեկտրակայանից հետո, արդեն նախագծվել են մեկական միլիոն կիլովատ կարողության ռեակտորներով։ Այդպիսի ատոմային էլեկտրակայաններ են կառուցվում Լենինգրադի մերձակայքում և Կուրսկում։

Ատոմային էլեկտրակայաններ կառուցվել և կառուցվում են աշխարհի շատ երկրներում։ 1970 թվականի հունվարի 1-ի տվյալներով, աշխարհի տարբեր երկրներում արդեն գործում էին 80 ատոմային էլեկտրակայաններ՝ ավելի քան 15 միլիոն կիլովատ ընդհանուր կարողությամբ։

Եթե սկզբնական շրջանում դեռևս ամեն ինչ պարզ չէր ռադիացիոն վտանգի հարցում և ինքնապահովման նպատակով խիստ միջոցներ էին կիրառվում, ապա անցած տարիներին զգալիորեն մեղմացվեցին սանիտարական գոտում ներկայացվող պահանջները։ Ներկայումս մի շարք երկրներում ատոմային էլեկտրակայաններ են կառուցվել նույնիսկ խոշոր քաղաքների սահմաններում։

Մեր երկրում ռադիացիոն ֆոնի հսկողությունը ատոմային էլեկտրակայանների աշխատանքի շրջաններում իրականացնում են ՍՍՀՄ առողջապահության մինիստրության մարմինները։ Բազմամյա հետազոտությունները ցույց են տվել, որ հուսալի են ձեռնարկվող պրոֆիլակտիկ միջոցները, նրանք լիակատար անվտանգություն են ապահովում ինչպես ատոմային էլեկտրակայանները սպասարկող անձնակազմի, այնպես էլ շրջակա բնակչության համար։

Ներկայումս կառուցվող ատոմային էլեկտրակայանները իրենց էկոնոմիկայով արդեն միանգամայն կարող են մրցել արդի ջերմաէլեկտրակայանների հետ։

Այժմ ոչ մի մարդու կասկած չի հարուցում ատոմային էներգետիկայի սպասող փայլուն ապագան։ Անցումն արագ նեյտրոններով աշխատող մեկ մլն կվտ և ավելի կարողության ռեակտորների, որոնց պայմաններում վառելիքային ցիկլի մեջ են մտցվում ուրան—238-ը և թորիում—232-ը, կհանգեցնի նույնիսկ մոտիկ գտնվող, էժան վառելիք գործածող ջերմաէլեկտրակայանների համեմատությամբ ատոմային էլեկտրակայանների ձեռնտվության հետագա լուրջ ավելացմանը։

Ատոմային էլեկտրակայանների ձեռնտվության այդպիսի աճը ցույց է տալիս, որ գալիք հեռանկարում ատոմային էներգետիկան կդառնա էլեկտրաէներգիայի արտադրության հիմնական աղբյուրը։

Որո՞նք են, սակայն, մեր հանրապետության էներգետիկ ռեսուրսները։

Ջերմային էլեկտրակայանները կառուցվում են վառելիքի այնպիսի տեսակներով աշխատելու համար, ինչպիսիք են՝ ածուխը, թերթաքարը, մազութը, գազը և նույնիսկ տորֆը։ Ինչպես հայտնի է, մեր հանրապետության տերիտորիայում մինչև այժմ վառելիքի այդ տեսակներից ոչ մեկը չի հայտնաբերված։ Մենք չունենք ո՛չ մեր ածուխը, ո՛չ նավթը, ո՛չ էլ գազը։ Ուստի, արտադրվող էլեկտրաէներգիայի 85 տոկոսը տվող ջերմաէլեկտրակայանները մեր հանրապետությունում աշխատում են բերովի վառելիքով՝ մազութով ու գազով։

Յոթնամյակի առաջին տարիներին ոմանք գտնում էին, որ դրսից էլեկտրաէներգիա ստանալու համար կարելի է կառուցել մեծ կարողության էլեկտրահաղորդման գծեր։ Այդպիսի կողմնորոշման արդյունքը եղավ այն, որ սկզբնական շրջանում պատշաճ ուշադրություն չէր ցուցաբերվում ինչպես ջերմաէլեկտրակայանների, այնպես էլ Որոտան գետի հիդրոկայանների շինարարությանը։ Դրա հետևանքով յոթնամյակի վերջին և ութերորդ հնգամյակի առաջին տարիներին հանրապետության էներգետիկ հաշվեկշիռը կախման մեջ էր հարևան էներգասիստեմներից, և խիստ իջավ հանրապետության ժողովրդական տնտեսության էներգամատակարարման հուսալիությունը։ Բոլորի համար պարզ դարձավ, որ էլեկտրաէներգիան պետք է արտադրել սեփական էլեկտրակայաններում։

Այստեղ հարկ է նշել նաև, որ ցանցային շինարարության նկատմամբ կողմնորոշումը հակասում էր գիտա-հետազոտական և նախագծային կազմակերպությունների եզրակացություններին։ Նրանք ապացուցեցին էլեկտրաէներգիայի սպառման վայրից ոչ հեռու վայրերից բերովի բարձր կալորիական վառելիքով (գազ, մազութ, նավթ, դոնյան ածուխ) աշխատող էլեկտրակայանների շինարարության տնտեսապես ավելի նպատակահարմար լինելը, քան վառելիքի արդյունահանման վայրում էլեկտրակայանն աշխատելու և էլեկտրաէներգիան մոտ 500 կիլովոլտ լարվածության էլեկտրահաղորդման գծերով փոխանցելու տարբերակով։ Այդ եզրակացությունները հաստատվեցին նաև այնպիսի բարձր հեղինակավոր կազմակերպությունում, ինչպիսին է



ՍՍՀՄ պետպլանի պետական փորձաքննության հանձնաժողովը։

1970—1971 թթ. ձմռանը հանրապետության ջերմաէլեկտրակայաններում օրական ծախսվում էր ավելի քան վեց հազար տոննա վառման մազութ։ Ընթացիկ տարվա սկզբին Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանում գործարկվեց 200 հազար կվտ կարողության № 1 բլոկը։ Երկրորդ բլոկը գործարկվելու է այս տարվա նոյեմբերին, իսկ երրորդը՝ 1972 թվականին։ Ներկայումս որոշվում է Հրազդանի ջերմաէլեկտրակայանում 1973 թվականից սկսած 200 հազարական կիլովոլտ կարողության ևս երեք բլոկների գործարկման հարցը։

Պետք է ասել, որ ինչպես նախագծող, այնպես էլ պլանավորող մարմինները վառելիքի ապահովման պայմանների և առաջացող տրանսպորտային դժվարությունների պատճառով մեծ դժկամությամբ են համաձայնում լուծել այդ հարցը։

Երեք բլոկներից հնգամյակի ընթացքում կգործարկվեն երկուսը, գուցե և երեքը։ Հանրապետության ջերմային էլեկտրակայանների կարողությունը կհասնի 1.900—2.100 հազար կվտ-ի, իսկ վառման մազութի օրական ծախսը՝ 11—12 հազար տոննայի։ Այդպիսի քանակությամբ մազութի փոխադրումը կարող է ապահովվել միայն հանրապետությունում գոյություն ունեցող միուղի երկաթգծերի վերակառուցման լուրջ աշխատանքների իրականացումից հետո։ Վառման մազութի փոխադրումների հետագա ավելացումը հնարավոր կլինի միայն այն դեպքում, եթե անցկացվեն երկաթուղային մագիստրալների երկրորդ գծերը, որը շատ թանկ կնստի և դժվար կլինի Անդրկովկասի և, մանավանդ, մեր հանրապետության բարձր լեռնային ու խիստ կտրտված տեղանքի պայմաններում։

Եթե Իրանից գազի ստացման առաջին շրջանում էլեկտրակայանների վառելիքի պահանջի մի մասը կբավարարվի գազի հաշվին և կպակասի գործածվող վառման մազութը, ապա արդյունաբերության այլ տեխնոլոգիական կարիքների համար գազի ծախսումն ավելանալու հետ մեկտեղ, էլեկտրակայաններում ծախսվող վառելիքի մեջ կիջնի գազի բաժինը և կավելանան տրանսպորտային դժվարությունները։

Պետք է ասել նաև, որ թեև մինչև այժմ դեռ մեծ է Բաքվի նավթի հոչակը, բայց վառելիքային ընդհանուր հաշվեկշռում արդեն վաղուց սկսել է շեշտակիորեն նվազել նրա տեսակարար կշիռը։ Այսօր Ադրբեջանական ՍՍՀ ջերմաէլեկտրակայանների զգալի մասը վառման մազութ են ստանում ՌՍՖՍՀ-ից, իսկ գազի զգալի մասը՝ Իրանից։ Այսպիսով, ակներև է դառնում, որ Հայաստանում ջերմաէլեկտրակայանների կարողությունը բերովի վառելիքի հաշվին հետագայում ընդլայնելն անհնար է։

Այժմ հիդրոէներգետիկ ռեսուրսների մասին։ Շատ տարիներ գոյություն ուներ այն սխալ կարծիքը, թե Հայկական ՍՍՀ-ն հարուստ է ջրաէներգետիկ ռեսուրսներով։ Իրականում այդպես չէ։

Սևան-Հրազդանի կասկադից հետո, որը գործում էր Սևանա լճի ջրերի շնորհիվ, երկար տարիներ բավական բարձր արդյունավետություն ուներ և միանգամայն բացառիկ, անփոխարինելի դեր խաղաց հանրապետության էկոնոմիկայի բարգավաճման գործում։ Դրանից հետո գործարկվեցին Որոտանի և Դեբետի կասկադները։

Լեռնային բնույթի գետերի համեմատաբար ոչ մեծ քանակությամբ ջրերի առկայությունը և թունելային երկար ջրասահանքներ կառուցելու անհրաժեշտությունը, ջրի նույնիսկ բարձր ճնշման պայմաններում, տալիս են ոչ մեծ կարողություններ։

Անցյալ տարվա վերջերին շահագործման հանձնվեց Որոտան գետի Տաթևի հիդրոէլեկտրակայանը՝ 157,2 հազար կվտ կարողությամբ, տարեկան 540 մլն կվտ էլեկտրաէներգիայի արտադրությամբ կարգավորող ջրամբարների բացակայության պայմաններում և 100 մլն կվտ-ժամով ավելի՝ ջրամբարների կառուցումից հետո։ Բայց չէ՞ որ Տաթևի հիդրոէլեկտրակայանը կառուցվել է 11 տարի, փորվել են ավելի քան 18 կմ թունելներ։ Որոտանի կասկադի միջին աստիճանը՝ Շամբի հիդրոէլեկտրակայանը, կգործարկվի 1973—1974 թվականներին։ Դրա կարողությունը 171 հազար կվտ է։ Այդ էլեկտրակայանը կառուցվել է, առաջին հերթին, էներգասիստեմի լարվածապահերի համար՝ տարեկան 300 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրությամբ։ Ընթացիկ տարում սկսվելու է այդ կասկադի վերին աստիճանի՝ Սպանդարյանի հիդրոէլեկտրակայանի, շինարարությունը՝ գլխամասի կարգավորող մեծ ջրամբարով։ Կայանի կարողությունը 76 հազար կվտ է, էլեկտրաէներգիայի տարեկան արտադրանքը 100 մլն կվտ-ժամից մի փոքր ավելի։

Այսպիսով, Որոտանի կասկադի հիդրոկայանների ընդհանուր կարողությունը կկազմի 404 հազար կվտ, էլեկտրաէներգիայի տարեկան արտադրանքը՝ 1,1 մլրդ կվտ-ժամ։ Ոռոգման նպատակով ջրի օգտագործման ավելացման հետ մեկտեղ այն նկատելիորեն նվազելու է։

Կազմվել է Ջորագետ—Դեբետ գետերի հիդ-

թոկայանների կասկադի տեխնիկական նախագիծը: Այն հանձնված է քննարկման: Նախատեսվում է կառուցել ընդամենը չորս հիդրոէլեկտրակայան (Ստեփանավանի, Լոռիբերդի առաջին ու երկրորդ և Ծնողի), 335 հազար կվտ ընդհանուր կարողությամբ և տարեկան 0,55 մլրդ կվտ-ժամ արտադրությամբ: Ոռոգման նպատակով օգտագործվող ջրի զգալի քանակը խիստ վատթարացրել է այդ կասկադի հիդրոկայանների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները: Լուրջ դժվարություններ են սպասվում կասկադի հիդրոկայանների նախագծի հաստատման ժամանակ: Տեխնիկա-տնտեսական ցուցանիշները եզրվում են վիճելի ձեռնարկության սահմանագծին: Առավել արդյունավետ կլինի անմիջական ու հակադարձ կարգավորման ավազաններ ունեցող Լոռիբերդի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը:

Ինչպես հայտնի է, Արփա գետի ջրերն օգտագործվում են Սևանա լճի ջրային հաշվեկշիռը կարգավորելու համար, որպեսզի հետագայում չիջնի լճի մակերեսը: Մնում է Արաքս գետի ջրերի օգտագործման հնարավորությունը գետի այն հատվածում, ուր սահմանազատվում են Հայկական ՍՍՀ և Իրանի տերիտորիաները:

Հիդրոպրոյեկտի Բաքվի բաժանմունքի մշակած սխեմայով գետի այդ հատվածում նախատեսվում է միահավասար ճնշմամբ երկու հիդրոկայանների շինարարություն, մեկը գետի ՍՍՀՄ սահմանի ափին, մյուսը՝ Իրանի: Մեր այդ կայանը՝ Մեղրու հիդրոէլեկտրակայանը, աշխատելու է զուտ ոռոգման գրաֆիկով: Սահմանային գետի օգտագործման հետ կապված յուրահատուկ որոշ դժվարությունների պատճառով համեմատաբար երկար ժամանակով հետաձգվում է այդ հիդրոէլեկտրակայանի շինարարությունը:

«Հայհիդրոնախագիծ» ինստիտուտի կատարած հաշվարկումներով հանրապետության հիդրոկայանների կողմից արտադրվող էլեկտրաէներգիան իններորդ հնգամյակի վերջին, հաշվի առնելով նաև Ծամբի հիդրոէլեկտրակայանի գործարկումը, սահմանված է 1,78 մլրդ կվտ-ժամ: Եթե նկատի ունենանք, որ ՍՍՀՄ պետպլանն իններորդ հնգամյակի վերջին էլեկտրաէներգիայի արտադրությունը Հայկական Հանրապետության համար պլանավորել է 11,0 մլրդ կվտ-ժամ, ապա հիդրոկայանների կողմից արտադրվելիք էլեկտրաէներգիան կկազմի 16 տոկոս:

1980 թվականին, երբ էլեկտրաէներգիայի սպառումը մեր հանրապետությունում կհասնի 15—16 մլրդ կվտ-ժամի, հիդրոկայանների թողարկած էլեկտրաէներգիան, հաշված նաև Սպանդարյանի ու Դեբետի հիդրոէլեկտրակայանների գործարկումը և ջուրը ոռոգման նպատակներով օգտագործելու պատճառով գործող հիդրոկայանների արտադրության նվազումը, կկազմի հազիվ 2 մլրդ կվտ-ժամ կամ սպառման ընդհանուր քանակի միայն 12—13 տոկոսը: Այստեղ, այնուամենայնիվ, մենք պետք է ընդգծենք հիդրոկայանների էլեկտրաէներգիայի խիստ արժեքավոր լինելը, թեև մեծ չի լինի դրա տեսակարար կշիռը: Այդ էլեկտրաէներգիայի զգալի մասը մեր էներգասիստեմը հիդրոկայաններից կստանա էներգիայի նկատմամբ փոփոխակի պահանջմունքի կարգավորման համար՝ երեկոյան, մանավանդ ձմեռվա երեկոյան ժամերին:

Վերջին ժամանակներս ավելի ու ավելի ապախտանում է էլեկտրաէներգիայի օգտագործման բեռնվածության գրաֆիկը, այն խիստ ավելանում է երեկոյան ժամերին և նվազում գիշերը:

Հաշվարկները ցույց են տալիս, որ Հայաստանի էներգասիստեմի հիդրոկայանները չեն կարող իններորդ հնգամյա պլանով նախատեսվածից դուրս գրաֆիկով լիովին ապահովել էներգիայի պահանջը: Ուստի, անհրաժեշտ կլինի կառուցել պոմպային-ակումուլացիոն հիդրոկայաններ, որոնք մեծ առավելություն ունեն: Բեռնվածության գիշերային ժամերին նրանք էլեկտրաէներգիան օգտագործում են ջուրը վերին ջրամբարը ներմղելու համար, իսկ երեկոյան «պիկի» ժամերին աշխատում են որպես հիդրոկայաններ, օգնում բավարարելու էլեկտրաէներգիայի նկատմամբ աճած պահանջմունքը: Հիդրոպրոյեկտի Հայաստանի բաժանմունքի նախնական մշակումների համաձայն Սևանա լճի ափին կարող են կառուցվել բազմաթիվ այդպիսի պոմպային-ակումուլացիոն հիդրոկայաններ:

Սևան—Հրազդանի և Որոտանի կասկադների հիդրոկայանները, պոմպային-ակումուլացիոն կայանների հետ միասին, լավ կհամատեղվեն ջերմային ու ատոմային էլեկտրակայանների հետ: Նրանք թույլ կտան աշխատանքի համեմատաբար կայուն ռեժիմ ստեղծել ատոմային և ջերմային էլեկտրակայանների համար, որի պայմաններում ձեռք կբերվեն էներգատնտեսական լավագույն ցուցանիշներ:

Հանրապետության էներգետիկ ռեսուրսների վերլուծությունը ցույց է տալիս, որ ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջմունքները էլեկտրաէներգիայով ապահովելու առավել հուսալի էներգետիկ աղբյուրն ատոմային էլեկտրակայանն է:

Ինչպես վերը ասվեց, Հայաստանի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթի էլեկտրաէներգիայի արտադրությունը կկազմի 6,11 մլրդ կվտ-ժամ: Եթե այդ էլեկտրակայանի երկրորդ հերթը նախագծելիս հնարավոր լինի առաջին հերթի 440 հազարանոց ռեակտորների փոխարեն տեղադրել երկու հատ միլիոնանոց ռեակտորներ, որ միանգամայն իրագործելի է, ապա էլեկտրակայանի միայն երկրորդ հերթը կարտադրի մոտ 15 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, իսկ առաջին հերթի հետ միասին՝ 21 մլրդ կվտ-ժամ: Դա խոսում է այն մասին, որ հանրապետության ժողովրդական տնտեսությունը, ատոմային էլեկտրակայանի շինարարությունից հետո, հաշվի առնելով դրա ընդլայնման հնարավորությունը, հանրապետության հուսալի էներգետիկ բազայի ստեղծման պրոբլեմը լուծած կլինի բավական երկար տարիների համար:

Սակայն ինչպիսի՞ք են Հայաստանի ատոմային էլեկտրակայանի տնտեսական ցուցանիշները և այն ի՞նչ առավելություններ ունի:

Չնայած ատոմային էլեկտրակայանների և, մասնավորապես, Հայաստանի ատոմային էլեկտրակայանի շինարարության դեռևս բարձր արժեքին, այնտեղ արտադրվող էլեկտրաէներգիայի ինքնարժեքն ավելի ցածր է, քան հանրապետության գործող ջերմաէլեկտրակայաններում արտադրվող էլեկտրաէներգիայինը՝ վառելիքի տեսակարար կշիռն այդ ինքնարժեքում նվազելու շնորհիվ: Եթե միայն օգտագործվող վառման մազութի արժեքը Երևանի ջերմաէլեկտրակայանում արտադրվող մեկ կվտ-ժամ էլեկտրաէներգիայում կազմում է 0,72, իսկ Հրազդանի ջերմաէլեկտրակայանում՝ 0,76 կոպեկ, ապա Հայաստանի ատոմային էլեկտրակայանում արտադրվելիք էլեկտրաէներգիայի մեկ կվտ-ժամի լրիվ ինքնարժեքը կկազմի 0,68 կոպեկ: Սակայն այն զգալի չափով կնվազի ատոմային էլեկտրակայանի երկրորդ հերթի կառուցումից հետո:

Սովորական ջերմաէլեկտրակայանների համեմատությամբ, ատոմային էլեկտրակայաններն ապահովում են օգտագործման ավելի շատ ժամեր. սովորական ջերմաէլեկտրակայաններում կարողության յուրաքանչյուր կիլովատը տարեկան տալիս է 6.000, իսկ ատոմային էլեկտրակայաններինը՝ 7.500 կվտ-ժամ էլեկտրաէներգիա:

Ատոմային էլեկտրակայանների սպասարկող անձնակազմն ավելի սակավաթիվ է: Հայաստանի ատոմային էլեկտրակայանի նախագծով սպասարկող ողջ անձնակազմի թիվը նախատեսված է 730 մարդ, այսինքն՝ տեղակայված կարողության յուրաքանչյուր հազար կիլովատի դիմաց մեկ մարդով պակաս:

Միջուկային վառելանյութը բնորոշվում է ջերմային էներգիայի վիթխարի կուտակմամբ: Մի վագոնից էլ պակաս ուրանային վառելանյութը բավական է ատոմային էլեկտրակայանի գրեթե երեք տարվա աշխատանքի համար: Իսկ նույնքան էլեկտրաէներգիա արտադրելու համար ջերմային էլեկտրակայանը կպահանջի գրեթե հինգ միլիոն տոննա վառման մազութ:

Մեր հանրապետության պայմաններում, որտեղ մենուղի են երկաթուղային մագիստրալները, անգնահատելի է տրանսպորտի նման «տնտեսումը»:

Հանրապետության էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի հետագա զարգացումն անխուսափելիորեն պահանջում է լուծել էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացնելու հարցը: Վառելիքի բոլոր տեսակների բացակայությունը և ծայր աստիճան սահմանափակ հիդրոէներգետիկ ռեսուրսները մեր հանրապետության համար անհրաժեշտ են դարձնում ատոմային էներգետիկայի օգտագործումը:

Հայաստանի ատոմային էլեկտրակայանի շինարարության փաստը կարևորագույն իրադարձություն է մեր հանրապետության կյանքում:



# ՆՈՐԻ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐԻ ԽԹԱՆՈՂՆԵՐԸ

Ս. Ե. ՆԱԶԱՐՅԱՆ

ՀԿԿ Անիի շրջկոմի առաջին քարտուղար

Սովետական գյուղի զարգացման այժմյան թափը տարեցտարի նվազեցնում է քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունները։ Ո՛չ միայն Անիի, այլև երկրի ցանկացած շրջանի օրինակով ակնհայտ է դառնում այն հսկայական վերափոխումը, որ կատարվում է գյուղի սոցիալ-կուլտուրական կյանքում։ Նույնիսկ ամենասեղմ ժամկետում՝ անցած մեկ հնգամյակում, շրջանում հաջողությամբ լուծվել են կուլտուր-կենցաղային շատ պրոբլեմներ, իրականացվել կուսակցության բազում կանխագծումներ։ Այժմ մեր շրջանը պատված է դպրոցների, կուլտուր-կենցաղային և առողջապահական հիմնարկությունների լայն ցանցով։ Դրանց զարգացմամբ էլ պայմանավորված են մտավորականության ձևավորումն ու աճը։

Մեր կյանքը հարուստ է նորույթներով։ Տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում նորն ու առաջավորը, մեր մեծ հայրենիքի որ ծայրում էլ ծնված լինեն դրանք, ճանապարհ են հարթում իրենց համար (մերթ էական արգելքների հաղթահարմամբ) և կիրառվում կյանքում։ Կուսակցության ու կառավարության ցանկացած որոշում, դա վերաբերի մեր երկրի ներքին, թե արտաքին քաղաքականությանը, դառնում է շրջանի աշխատավորության սեփականությունը, ջերմ արձագանք գտնում նրանց մոտ։ Այստեղ իր վճռական խոսքն է ասում շրջանի մտավորականությունը, որը մի ստվար բանակ է և դառնում է նորի ու առաջավորի խթանողը։

Անժխտելի է զարգացող գյուղի մարդկանց կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման գործում գյուղական մտավորականության դերը։ Անցյալ տարվա աշնանը տեղի ունեցած սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, տնտեսական խնդիրներին համահավասար, քննարկվեցին նաև կոմունիստների գաղափարական-քաղաքական աճի, երիտասարդության կոմունիստական դաստիարակության, գյուղի աշխատավորության հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարման խնդիրնե-



րը, և այդ առումով տեղի մտավորականության կատարած մեծ ներդրումն ու առաջիկա անելիքները։

Կուսկազմակերպությունների բյուրոների հաշվետվություններում ամենայն սկզբունքայնությամբ տրվում էր գյուղական ուսուցչի, բժշկի, տեխնիկական մտավորականության, կուլտուրայի բնագավառի աշխատողների գործունեության գնահատականը։ Այսպիսի մոտեցումը պայմանավորված է կյանքի պահանջով։ Փաստեր պետք չեն համոզելու (ամենօրյա կյանքն այդ է ապացուցում), որ գյուղատնտեսն ու անասնաբուծության մասնագետը, ինժեներն ու տնտեսագետը, ուսուցիչն ու բժիշկը, կուլտուրայի ասպարեզի աշխատողն առավել շուտ են հաղորդակից լինում նորին ու առաջավորին, առավել շուտ են ձերբազատվում հնից և ձգտում ապրելու ո՛չ միայն բարեկեցիկ, այլև՝ կուլտուրական լիարժեք կյանքով, որն այսօր միանգամայն բնական է։ Այդ ձգտումը նրանք փոխանցում են արտադրության մարդկանց՝ կոլտնտեսականներին և բանվորին։

Այդ ամենը կարելի է ապացուցել հենց թեկուզ Աղին գյուղի մտավորականության գործունեությամբ։ Աղինի կոլտնտեսությունն արտադրական լուրջ հաջողություններ ունի։ Այստեղ հաստատված է աշխատանքային բարձր կարգապահություն, ամեն ոք գիտե իր անելիքները։ Դա լավ է, խրախուսանքի արժանի։ Սակայն գյուղի անբարեկարգ վիճակը, սանիտարական անբավարար պայմանները, կուլտուր-կենցաղային այլևայլ չլուծված հարցեր տարիներ շարունակ ժողովների խոսակցության նյութ էին դառնում։ Այդ հարցերի լուծմամբ, առաջին հերթին, մտահոգված էին մտավորականները։ Կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունն ուշադրության արժանացրեց նրանց առաջարկները և գյուղական սովետի ու կոլտնտեսության վարչության միջոցով իրականացրեց ու շարունակում է իրականացնել բարեկարգման ու շինարարական մի շարք միջոցառումներ։ Այսպես, գյուղում կառուցվում են կենցաղային սպասարկման օբյեկտներ, անցկացվում է ջրմուղ, որը հնարավորություն կընձեռի յուրաքանչյուր բնակչի՝ ստեղծելու այգի ու բանջարանոց, ունենալու կոմունալ-կենցաղային և այլ հարմարություններ։ Գյուղի աշխատավորների համար մտավորականները հաճախ են դասախոսում։ Նրանք մեծ հեղինակություն են վայելում աշխատավորության շրջանում, արժանանում նրանց համակրանքին։

Աղինի տեղամասային հիվանդանոցի գլխավոր բժիշկ, կոմունիստ Գ. Հակոբյանը սիրված անձնավորություն է կոլտնտեսականների կողմից։ Նա ո՛չ միայն շնորհալի բժիշկ է, այլև հմուտ պրոպագանդիստ, ու չնայած զբաղվածությանը, միաժամանակ կուլտուրայի տան թատերական ինքնագործ խմբի ռեժիսորն է։ Աղինը բարետես, բարձր կուլտուրայով ու կենցաղով կոլտնտեսային նոր գյուղ դարձնելու ջատագովներից մեկն է նա։ Հակոբյանի շնորհիվ սերտ կապ է ստեղծվել կոլտնտեսության կուսկազմակերպության և հիվանդանոցի կոմունիստների միջև։

Երկար տարիներ պրոպագանդիստական բեղմնավոր գործունեություն են ծավալում միջնակարգ դպրոցի դիրեկտոր Աթ. Խաչատրյանը, ուսուցիչներ Ա. Գրիգորյանը, Հ. Գրիգորյանը և ուրիշներ։ Նրանք քաղաքական խոր գիտելիքներ են հաղորդում կոմունիստներին, կուսակցության կանխագծումները մեկնաբանում են գյուղի աշխատավորությանը, հանդես գալիս ՍՄԿԿ արտաքին ու ներքին քաղաքականությանը, մեր երկրի նվաճումներին նվիրված դասախոսություններով ու զրույցներով։

Գյուղական գրադարանների, ակումբների ու կուլտուրայի տների վրա է դրված աշխատավորների հոգևոր սպասարկման պատասխանատու գործը։ Ստեղծագործական մոտեցումը բնորոշ է Աղինի կուլտուրայի տան գործունեությանը։ Այն պատվով է կատարում իր դերը։ Այստեղ կազմակերպվող յուրաքանչյուր միջոցառում արժանանում է աշխատավորության ջերմ հավանությանը։ Կուլտուրայի տան դիրեկտոր Մ. Խաչատրյանը մշտական օգնություն է ստանում կուսկազմակերպությունից, կուսբյուրոյի հետ մշակում քաղաքական-մասսայական աշխատանքի գործնական պլան և հաջողությամբ իրականացնում այն, այդ գործում ներգրավում նաև կուսակցական ու սովետական մարմինների ղեկավարներին։

Աղինի մտավորականության բազմակողմանի ու բեղմնավոր գործունեությունը եզակի չէ։ Սոցիալ-կուլտուրական վերափոխումների ասպարեզում վճռական դեր են խաղում նաև մյուս գյուղերի մտավորականները։

Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները հոգատարությամբ են շրջապատում գյուղատնտեսության բնագավառում աշխատող մտավորականներին։ Ավելի քան մեկ տասնամյակ «Հայգյուղտեխնիկայի» շրջանային միավորումում և գյուղվարչությունում գլխավոր ինժեներ էր աշխատում կոմունիստ Տ. Սարգսյանը։ Տեսական հարուստ գիտելիքներով արտադրություն եկած երիտասարդ ինժեներին կոլեկտիվը և կուսկազմակերպությունը շրջապատեցին հոգատարությամբ, օգնեցին նրան՝ առավել արդյունավետ ներդնելու իմացածը։ Տ. Սարգսյանն արագ տիրապետեց գործին, հանդես եկավ նորարարական բազմաթիվ առաջարկություններով. շրջանային թերթի միջոցով նոր տեխնիկայի առավելությունների պրոպագանդումը նրա համար դարձավ հոգևոր պահանջ։ Բարոյական բարձր հատկություններով, տեսական խոր գիտելիքներով ու պրակտիկ հարուստ փորձով, կուսակցության գործին նվիրված կոմունիստ է նա, մեծ սիրով իր իմացածը հաղորդում է շրջանի մեխանիզատորներին։ Ամեն տարի, որպես «Գիտելիք» ընկերության դասախոս, կարդում է տասնյակ դասախոսություններ ու զեկուցումներ, երկու անգամ արժանացել է հանրապետության «Գիտելիք» ընկերության պարգևին։

Լուսաղբյուրի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը ղեկավարում է անասնաբույժ Կ. Մեծոյանը, իսկ Մարալիկի կոլտնտեսությանը՝ անասնաբույժ Ա. Սարգսյանը։ Երկուսն էլ բարձր պատասխանատվությամբ են կատարում իրենց կուսակցական ու աշխատանքային պարտականությունները, օրինակ ծառայում կոմունիստներին։ Նրանք միաժամանակ ակտիվ պրոպագանդիստներ են, ջանք չեն խնայում անասնապահների շրջանում անասնաբուծական-անասնաբուժական գիտելիքները տարածելու համար։

Տարեցտարի ստվարանում է մասնագետ մտավորականների ջոկատը։ Կուսշրջկոմը և կուսկազմակերպությունները մտահոգվում են նրանց մասնագիտական ու քաղաքական աճով, կազմակերպչական հատկությունների ձևավորմամբ, նրանց ուժերի ճիշտ և նպատակային օգտագործմամբ։ Այսպես, Ջորակապի կոլտնտեսության երիտասարդ գյուղատնտես Ղ. Ղազարյանը նորի, առաջավորի իսկական պրոպագանդող է։ Նրա խոսքի և գործի միասնությունը, կազմակերպչական եռանդը հաստատորեն որոշեցին նրա տեղը Լանջիկի կոլտնտեսության վարչության նախագահի պատասխանատու պոստում։ Երբեմնի ետ մնացող տնտեսությունն այժմ առաջավորների շարքում է։ Աշխատանքային կարգապահության ամրապնդման, նոր ռեզերվների հայտաբեր-



ման, ցանքաշրջանառության հետևողական կիրառման համար Ղազարյանի գործադրած ջանքերն արգասավոր եղան։

Մեր շրջանում այսօր հաջողությամբ զարգանում է նաև արդյունաբերությունը։ Հանրապետության արդյունաբերության առաջնեկներից մեկի՝ Անիպեմզա կոմբինատի, ծնունդով ձևավորվեց նաև բանվոր դասակարգը, ապա՝ աստիճանաբար և տեխնիկական մտավորականությունը, որի կարիքն այնքա՜ն շատ է զգացվել առաջին տարիներին։ Ժամանակակիցները հիշում են, որ այն ժամանակ կոմբինատը հույժ կարիք է ունեցել ինժեների, և գերմանացի մի մասնագետ, այստեղ աշխատելու համար, ներկայացրել է իր յուրօրինակ, բազմապիսի ու դժվար իրագործելի պահանջները։ Դիրեկտորը մերժել է՝ հայտարարելով. «Յոլա կգնանք առանց գերմանացու»։ Այս միջադեպը հուշ է դարձել, իսկ մի քանի տասնյակ փութ պեմզանյութ արտադրող ձեռնարկությունը՝ միլիոնանոց կոմբինատ, որին շունչ ու ոգի են տալիս իրենց գործով ապրող, երիտասարդ, եռանդով լեցուն ու նվիրված կոմունիստներ, գլխավոր ինժեներ Ս. Խեկիլաևը, ինժեներ Վ. Տերեզյանը, մտավորականության մյուս ներկայացուցիչները։ Նրանց ջանքերով կոմբինատի արտադրանքը լայն ճանաչում է գտել նաև մեր հանրապետության սահմաններից դուրս։

Շրջանի տեխնիկական մտավորականությունը նշանակալիորեն աճեց Մարալիկի մագնիսական ուժեղացուցիչների գործարանի հիմնադրումով։ Այստեղ այժմ աշխատում է մոտ 600 բանվոր-ծառայող։ Գործարանի արտադրանքն առաքվում է ՍՍՀՄ խոշոր արդյունաբերական կենտրոնները, արտասահմանյան տասնյակ երկրներ։ Արտադրանքի որակի բարձրացման, նոր արտադրատեսակների արտադրության յուրացման և տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ասպարեզում արժանի ներդրում ունեն գործարանի գլխավոր ինժեներ Կ. Գաբրիելյանը, նրա տեղակալ, ասպիրանտ Ռ. Հովհաննիսյանը, գլխավոր տեխնոլոգ Հ. Գևորգյանը և ուրիշներ։

Երբ գործարանի կուսկազմակերպության ժողովում քննարկվում էին ՍՄԿԿ XXIV համագումարի արդյունքները, ամբողջ սրությամբ դրվեցին գիտության նորագույն նվաճումների ներդրման, նորարարական առաջարկությունների խրախուսման ու արմատավորման, գիտա-տեխնիկական առաջադիմության արագացման խնդիրները։ Դրանց լուծման պատասխանատվությունը հիմնականում դրվեց տեխնիկական մտավորականության վրա։ Ուրախալի է, որ ձեռնարկությունում այս առումով ուսանելի շատ բան կա։ Նախ, կարևոր է այն, որ տեխնիկական անձնակազմի 40—50 տոկոսը նախկին բանվորներ են, որոնք հեռակա ուսուցմամբ ստացել են բարձրագույն մասնագիտական կրթություն, պրակտիկայում՝ տեխնիկական որակավորում։ Կուսկազմակերպության բյուրոն և դիրեկցիան ուշադիր հետևել են նրանց աճին, համոզվել կարողությունների մեջ և վստահել առավել պատասխանատու աշխատանք։

Կուսակցության XXIV համագումարը խնդիր դրեց ֆիզիկական ծանր աշխատանքների կրճատման միջոցով ամեն կերպ բարձրացնել արտադրության արդյունավետությունը, ապահովել աշխատանքի արտադրողականության աճը։ Այդ առաջնահերթ խնդիրների պատշաճ լուծումը, առաջին հերթին, ամեն մի ձեռնարկության ինժեներա-տեխնիկական անձնակազմի պատվի գործն է, նրա հոգածության առարկան։ Կուսակցության առաջադրած պահանջների կատարմամբ մտահոգված է նաև մագնիսական ուժեղացուցիչների գործարանի տեխնիկական մտավորականությունը։ Ահա նրանցից մեկը՝ գլխավոր ինժեները

տեղակալ Ռ. Հովհաննիսյանը։ Նա իր դիսերտացիան նվիրել է ձկնորսական նավերի վրա տեղադրվող սարքերի կատարելագործմանը։ Նրա պատրաստած նոր ապարատը մի քանի անգամ էժան է նախկինից և գրեթե բացառում է ձեռքի աշխատանքը։ Կասկած չկա, որ այդ նորույթը հաջող քննություն կբռնի, և դրա սերիական արտադրությունը տնտեսական մեծ օգուտ կբերի ձեռնարկությանը։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում ընդգծեց գաղափարական աշխատանքի բոլոր ձևերի հետագա ծավալման, մասսաների քաղաքական դաստիարակության, ժողովրդի կուլտուրական մակարդակի բարձրացման հույժ կարևորությունը, առանց որոնց կոմունիզմի կառուցումն անհնար է։ Ընկ. Բրեժնևը կուսակցության գաղափարական դաստիարակչական ամբողջ աշխատանքի միջուկը համարեց աշխատավորության հոծ զանգվածների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը, նրանց դաստիարակումը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով։ Սրանք անհետաձգելի խնդիրներ են, որոնց լուծման համար մեծ պահանջներ են առաջադրվում մտավորականությանը։ Մեր շրջանի մտավորականները մշտապես գտնվել են այդ խնդիրների մակարդակին։ Նրանք քաղաքական-դաստիարակչական բեղմնավոր գործունեություն են ծավալում աշխատավորության շրջանում, նրան դաստիարակում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, կոմունիզմի գործին նվիրվածության ոգով։

Ամեն տարի սկզբնական կուսկազմակերպությունները կուսշրջկոմի բյուրոյի հաստատմանն են ներկայացնում պրոպագանդիստների, քաղինֆորմատորների, ագիտկոլեկտիվների ղեկավարների կազմը։ Նրանք քաղաքական-մասսայական աշխատանքում փորձված, կոմունիստական գաղափարայնությամբ տոգորված ուսուցիչներ, բժիշկներ, կուլտուրայի բնագավառի աշխատողներ, գյուղատնտեսության մասնագետներ են։ Ուսանելի է Հ. Մուրադյանի (Զորակապ), Վ. Գրիգորյանի (Իսահակյան), Բ. Համբարյանի (Լուսաղբյուր), Ն. Գասպարյանի (Սառնաղբյուր), Ա. Սարգսյանի (Ջիթհանքով) և ուրիշների պրոպագանդիստական գործունեությունը։ Նրանք ապրում են տնտեսության հոգսերով, մեծապես նպաստում արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Այսպես, Զորակապի կոլտնտեսությունը տարիներ շարունակ ետ էր մնում, թույլ էր տնտեսապես։ Այստեղ ցածր էին բերքատվությունն ու անասունների մթերատվությունը։ Նման վիճակը լրջորեն անհանգստացնում էր սկզբնական կուսկազմակերպությանը։ Այդ մտահոգությամբ էր տոգորված նաև մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող քաղդպրոցի պրոպագանդիստ Հ. Մուրադյանը։ Նա խորությամբ ուսումնասիրեց տնտեսության ետ մնալու պատճառները և պարապմունքների ընթացքում, տեսական նյութին զուգահեռ, վերլուծեց դրանք, պատմեց առաջավոր տնտեսությունների աշխատանքի փորձից։ Դա օգնեց կոմունիստներին՝ հաղթահարելու տնտեսության ետ մնալը։ Վերջին տարիներին Զորակապի կոլտնտեսությունը պարբերաբար շահում է ՀԿԿ շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը։ Այս օրինակը եզակի չէ։

Շրջանի կուսկազմակերպություններում պրոպագանդիստական շնորհակալ գործով են զբաղված մտավորականության 60 ներկայացուցիչներ, որոնք քաղաքական կայուն գիտելիքներ են հաղորդում կոմունիստներին, քաղաքական ուսուցումը սերտորեն շաղկապում կոմունիստական շինարարության հետ.



նրանց համար գործողության ուղեցույց է ՍՄԿԿ XXIV համագումարի այն պահանջը, որ կոմունիստների մարքս-լենինյան կրթությունը մեծ գործ է ո՛չ միայն իր մասշտաբներով, այլև իր գաղափարական-քաղաքական նշանակությամբ և այն պետք է ավելի ուժեղ ներգործի կուսակցության բոլոր անդամների գիտակցության և ակտիվության աճի վրա։ Այդ աշխատանքի ծանրությունը դրված է պրոպագանդիստների ուսերին։

Սակայն մտավորականների ծավալած քաղաքական աշխատանքի ոլորտը սրանով չի սահմանափակվում։ Նրանցից 36-ը կուսշրջկոմի դասախոսական, 34-ը՝ զեկուցողների խմբի անդամներ են։ Կուսկազմակերպություններին կից գործող 24 ագիտկոլեկտիվներում և 3 քաղինֆորմատորների խմբերում ընդգրկված են մտավորականության ավելի քան 300 ներկայացուցիչներ։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, քաղաքական-մասսայական աշխատանք ծավալելիս, հենվում են նրանց վրա։ Իսկ վերջիններս ամենայն բարեխղճությամբ են կատարում իրենց վստահված գործը, խորությամբ պրոպագանդում ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, հետաքրքրական և բովանդակալից դասախոսություններ ու զրույցներ անցկացնում, աշխատավորների ուժերը նպատակամղում նոր հնգամյակի հոյակապ կանխագծումները կենսագործելու համար։

Վ. Ի. Լենինը վիթխարի նշանակություն էր տալիս տնտեսական ու պրակտիկ գործունեության միասնությանը, կուսակցության անդամների գաղափարական-տեսական զինվածությանը։ Առաջնորդն ընդգծում էր տեսական և քաղաքական խոր պատրաստականություն ունեցող մտավորականության անհրաժեշտությունը և նրանց դերը սովետների երկրի առաջընթացն ապահովելու գործում։ Մտավորականության լավագույն ներկայացուցիչների աշխատանքային էնտուզիազմը պայմանավորված է կուսակցության գործին նրանց նվիրվածությամբ, գաղափարական խոր համոզվածությամբ։ Հենց այս ուժն էլ, իր հերթին, պայմանավորում է մեր շրջանի ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների անշեղ առաջընթացը։

Ելնելով մտավորականության նկատմամբ լենինյան հոգատարությունից՝ կուսշրջկոմը մշտապես հոգում է նրա գաղափարական կոփվածության մասին։ Այդ նպատակն են հետապնդում գաղափարական աշխատողների պարբերաբար հրավիրվող սեմինար պարապմունքներն ու խորհրդակցությունները։ Մտավորականության շրջանում տարվող գաղափարական աշխատանքի հիմնական օղակը շրջանային ակտիվի դպրոցն է, որտեղ իրենց տեսական գիտելիքներն են բարձրացնում 33 ակտիվիստներ։ Մտավորականության ներկայացուցիչների մեծ կոլեկտիվ ունեցող ձեռնարկություններում, դպրոցներում, հիվանդանոցներում գործում են 16 տեսական սեմինարներ, որոնցում ընդգրկված է 323 մարդ։

Մեր աչքի առջև ձևավորվում է կոմունիստական խոր համոզվածությամբ, պատասխանատվության ոգով դաստիարակվող ինժեների, տեխնիկի, գյուղատնտեսության մասնագետի կերպարը։ Անկասկած, այս գործում մեծ է քաղաքական ուսուցման դերը, կարևոր՝ պրոպագանդիստների տեսական գիտելիքների ու պրակտիկ աշխատանքի փորձի հարստությունը։

Յուրաքանչյուր քաղաքական խոշոր կամպանիա անթերի է անցկացվում այն ժամանակ, երբ սկզբնական կուսկազմակերպությունները ճիշտ են օգտագործում մտավորականության՝ կուսակցության գաղափարական մարտիկների,

ումները։ Դրվատանքի անկեղծ խոսք պետք է ասել շրջանի մտավորականության հասցեին այն բանի համար, որ կուսակցության XXIV համագումարի օրերին և դրանից հետո կոմունիստների մեծ համաժողովի որոշումները մեկնաբանում էր մասսաներին, նրանց շրջանում ստեղծում խանդավառություն։ Դրա փայլուն ապացույցն են տնտեսական այն ակնհայտ հաջողությունները, որ ձեռք են բերել շրջանի արտադրական ձեռնարկությունները և հանրային տնտեսությունները հետհամագումարյան անցած ամիսներին։

Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները պատշաճ են գնահատում գյուղական ուսուցչի, բժշկի, կուլտուրայի բնագավառի աշխատողների և տեխնիկական մտավորականության ջանքերը։ Շրջանի 17 ուսուցիչների, բժիշկների, կուլտուրայի և այլ բնագավառի աշխատողների շնորհվել է վաստակավորի կոչում, 33 մարդ պարգևատրվել է կառավարական շքանշաններով ու մեդալներով, 44 մարդ շրջկոմի պլենումի անդամներ ու անդամության թեկնածուներ են։ Շրջանային, գյուղական և ավանային սովետների դեպուտատների 32 տոկոսը մտավորականներ են։

Մեզ համար գործողության ուղեցույց է ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն միտքը, որ «Մեր սովետական մտավորականությունն իր կոչումն է համարում ստեղծագործական եռանդը նվիրաբերելու ժողովրդի գործին, կոմունիստական հասարակարգի կառուցման գործին։ Մտավորականության թիվը շարունակում է արագորեն աճել։ Ավելանում է գիտաշխատողների, ինժեներների, տեխնիկների, գյուղատնտեսների, ուսուցիչների ու բժիշկների թիվը, իսկ գիտա-տեխնիկական մտավորականության աճի տեմպերը վերջին տարիներին մեզ մոտ սկսել են գերազանցել մյուս բոլոր սոցիալական խմբերի աճի տեմպերին»։ Շարունակելով զարգացնել այդ միտքը, ընկ. Բրեժնևը նշում է, որ այդ պրոցեսն օրինաչափ է և արդյունք է կուսակցության քաղաքականության, «որի նպատակն է ըստ ամենայնի արագացնելու գիտա-տեխնիկական առաջադիմությունը, է՛լ ավելի բարձրացնելու ժողովրդի կուլտուրան և կրթվածությունը»։ Շրջանի մտավորականությունը համագումարի արդյունքների քննարկման ժամանակ ջերմորեն արձագանքեց կուսակցության Կենտրոնական կոմիտեի այս գնահատականին և ավելի եռանդուն ձեռնամուխ եղավ իր առջև դրված խնդիրների լուծմանը։

Վճռական օրեր են հիմա մեր շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Մեր աշխատավորները ջանում են օր առաջ ավարտել հանրային հոտի համար կեր կուտակելու շատ պատասխանատու գործը։ Նրանք նախապատրաստվում են հացահատիկային կուլտուրաների բերքահավաքին։ Ամառանոցներում հայրենանվեր գործեր են կատարում անասնապահները։ Ամենուրեք գյուղի մարդիկ պայքարում են գյուղատնտեսության վերելքն ապահովելու համար։ Եվ այս պատասխանատու շրջանում նրանց հետ են մտավորականները։ Նրանք դաշտավարների ու անասնապահների համար զրույցներ են անցկացնում ու դասախոսություններ կարդում, մասնակցում գյուղի հասարակական-քաղաքական կյանքին։ Մտավորականներին այս օրերին կարելի է հանդիպել նաև հնձվորների հետ աշխատելիս։

Եվ եթե անցած կիսամյակում շրջանը առաջընթաց քայլ է կատարել կուսակցության XXIV համագումարի որոշումների կենսագործման ճանապարհին, ապա այդ գործում մեծ է նաև մտավորականության ներդրումը։

---

# ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

ՆԻՆԱ ՄՈՍԻՆՅԱՆ

Նոյեմբերյանի շրջանի «Ջեյթուն» սովխոզի
կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար

Նոյեմբերյանի շրջանի «Ջեյթուն» սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը միշտ էլ գործողության ուղեցույց է ունեցել գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ կուսակցության համագումարների ու ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, հետևողականորեն խորամուխ եղել հանրային արտադրության հարցերի մեջ, օգնել սովխոզի դիրեկցիային՝ նոր հնարավորություններ ու ռեզերվներ հայտաբերելու և գործողության մեջ դնելու, այս կամ այն ճյուղում նկատված թերությունները վերացնելու համար։ Կարելի է ասել, որ մեր սովխոզի արտադրության ոչ մի բնագավառ չի վրիպում կուսկազմակերպության ու նրա բյուրոյի տեսադաշտից։

Մեզ մոտ արտադրության վճռական, առաջատար ճյուղը պտղաբուծությունն է, որը տալիս է համախառն եկամտի ավելի քան 95 տոկոսը։ Հասկանալի պատճառով մենք գլխավոր ուշադրությունը նվիրում ենք այդ ճյուղի զարգացմանը։

Ընդամենը քսան տարվա պատմություն ունի մեր սովխոզը, բայց դարձել է շրջանի առաջավոր տնտեսություններից մեկը. նրա համբավը վաղուց արդեն դուրս է եկել մեր հանրապետության սահմաններից։ Երկու տասնամյակի ընթացքում, կուսկազմակերպության ղեկավարությամբ, կոմունիստների ակտիվ մասնակցությամբ, սովխոզի մարդիկ պտղատու այգիների տարածությունն ընդարձակել և 8-ից հասցրել են 1000 հեկտարի, պետությանը տվել միլիոնավոր ռուբլիների օգուտ։ Անցած տարիներին զգալիորեն ավելացել է պտուղների համախառն արտադրանքը։ Ահա մի բնորոշ ցուցանիշ. 1954 թ. արտադրվել է 60 տոննա պտուղ, մինչդեռ 1969-ին միայն պետությանը տրվել է 5.020 (կամ շրջանի համախառն արտադրանքի կեսից ավելին), 1970-ին՝ 5.520 տոննա։

Անցած հնգամյակը մեր մարդկանց համար եղավ աշխատանքային խիզախումների արգասավոր ժամանակաշրջան։ Տնտեսությունը բոլոր ցուցանիշներով կատարեց իր առաջադրանքները. պլանից դուրս արտադրեց 1240 տոննա միրգ, ստացավ 1.110 հազար ռուբլու օգուտ։ Իրացումը 1966 թ. 754 հազարից եզրափակիչ տարում հասավ 2 միլիոն 269 հազար ռուբլու։

Սակայն չպետք է կարծել, թե հաջողությունները ձեռք են բերվել դյուրին ճանապարհով։ Ընդհակառակը, նախընթաց տարիներին կուսկազմակերպությունը, սովխոզի դիրեկցիան հանդիպել են ոչ քիչ դժվարությունների, հաղթահարել տնտեսության առաջընթացն արգելակող բազմաթիվ խոչընդոտներ, լուծել հրատապ մի շարք խնդիրներ։

Պրակտիկան ցույց է տալիս, որ եթե կուսկազմակերպությունը մոտ է կանգնած հանրային արտադրությանը, ամենօրյա հոգատարություն և պահանջկոտություն է ցուցաբերում գործի գլուխ կանգնած մարդկանց նկատմամբ, ստեղծագործորեն է մոտենում աշխատանքի կազմակերպմանը, անընդհատ կատարելագործում ղեկավարման մեթոդները, ապա՝ հաջողությունները լինում են ակնառու, հուսալի և տևական։

Մեր տնտեսության զարգացման հեռանկարային պլանում կարևոր տեղ է հատկացվում նոր բերքատու սորտերի ներդրմանը։ Անցյալում այս ասպարեզում շատ սխալներ են թույլ տրվել։ Կուսկազմակերպությունը քանիցս անդրադարձել է այդ հարցերին, ընդունել գործին օգնող որոշումներ։ Դրանց կարևոր արդյունքներից մեկը տնկարանի հիմնումն էր։ Այժմ արդեն այգիներն ընդարձակում ենք սեփական տնկարանում աճեցրած, կլիմայափոխված սորտերով, որոնք լավ հարմարվում են տեղի պայմաններին և բարձր բերք տալիս։ Լավագույն սորտերի ընտրության ու աճեցման գործում գնահատելի է գլխավոր գյուղատնտես, կոմունիստ Զ. Սահակյանի կատարած ներդրումը։

Արտադրության արդյունավետության բարձրացման հարցը միշտ էլ մտահոգում է կուսբյուրոյին, բոլոր կոմունիստներին։ Մենք խույս ենք տալիս այն ամենից, ինչ քիչ օգտակար է, ոչ-հեռանկարային։ Այսպես, 26 հեկտար կեռասենու այգուց, ոչ պիտանի սորտի ծառեր տնկելու պատճառով, երկար տարիներ ցածր բերք էր ստացվում։ Կուսբյուրոն և դիրեկցիան քննարկեցին այդ հարցը և մշակեցին համատեղ միջոցառումներ։ Այդ տարածությունում կեռասենին փոխարինեցինք դեղձենու և սալորենու բարձր բերքատու լավագույն սորտերի տնկիներով և հասանք գոհացուցիչ արդյունքի։

Կուսբյուրոն մշտապես հետաքրքրվում է աշխատանքի կազմակերպման բարելավմամբ, դիրեկցիայի հետ լուծում կնճռոտ, մեծ դժվարություն ներկայացնող հարցեր։ Նման դեպքում հարկ է լինում մոբիլիզացնել կոմունիստների ուժերը, նրանց տալ որոշակի հանձնարարություններ, դիմել վերադասմարմինների օգնությանը։ Անցած տարի, օրինակ, մրգի իրացումը վտանգված էր. առևտրական կազմակերպությունները չէին կատարում իրացման առաջադրանքը։ Այրումի պահածոների գործարանը ևս չէր ապահովում բերքի տեղափոխումը։ Շուտով կուսժողովում քննարկեցինք «Բերքահավաքի ընթացքի, բերքի պահպանության և կուսկազմակերպության խնդիրները» հարցը։ Զեկուցողը՝ դիրեկտոր Բ. Վարդանյանը, և կոմունիստներ Գ. Քարիմյանը, Հ. Կարապետյանը, Զ. Սահակյանը, Հ. Հովհաննիսյանը քննադատեցին առևտրական կազմակերպությունների ու պահածոների գործարանի ղեկավարներին, բացահայտեցին մեր տնտեսությունում տեղ գտած թերությունները։ Ժողովի որոշման քաղվածքներն ուղարկեցինք այդ կազմակերպություններին, սահմանեցինք գիշերային հերթապահություն։ Շուտով գործերը շտկվեցին։ Գործարանն, օրինակ, 2000-ի փոխարեն ընդունեց 2400 տոննա միրգ։

Անասնաբուծությունը, ճիշտ է, մեզ մոտ արտադրության առաջատար ճյուղ չէ, բայց որոշակի դեր է խաղում սովխոզի էկոնոմիկայում։ Անցյալում



այն թերագնահատված էր. անբավարար էր անասունների խնամքը, կերը ռացիոնալ չէր օգտագործվում, շռայլումներ ու վատնումներ էին լինում, ցածր էր ֆերմայում աշխատող մարդկանց պատասխանատվությունը։ Այդ ամենի հետևանքով թերակատարվում էին մթերատվության առաջադրանքները։

Կուսկազմակերպությունը չէր կարող հաշտվել թերությունների հետ։ Եվ ահա 1969 թ. հունվարին, բազմակողմանի նախապատրաստությունից հետո, կուսակցական դռնբաց ժողովում քննարկեցինք «Անասնապահական մթերքների արտադրության ավելացման ուղիները և կուսկազմակերպության խնդիրները» հարցը։ Քննարկումն անցավ գործարար մթնոլորտում։ Կուսժողովը կոնկրետ հանձնարարություններ տվեց ֆերմայում աշխատող բոլոր կոմունիստներին։ Երիտասարդ կոմունիստ Վ. Խաչատրյանին, օրինակ, հանձնարարվեց հետևել կերի ռացիոնալ օգտագործմանը։ Ժողովից հետո մի քանի անգամ ուսումնասիրեցինք ֆերմայի գործերի վիճակը, անցկացրինք անասնապահների արտադրական խորհրդակցություն, կուսբյուրոն անդրադարձավ ժողովի որոշման կատարման ընթացքին։

Թվարկած և ուրիշ միջոցառումների իրականացմամբ աստիճանաբար շտկվեց դրությունը, ֆերմայի ղեկավարները՝ վարիչ Վ. Մանուկյանն ու բրիգադավար Կ. Սահակյանը, և անասնապահներն սկսեցին ավելի պատասխանատվությամբ վերաբերվել իրենց պարտականությունների կատարմանը, բարելավեցին հանրային հոտի կերակրումն ու խնամքը։ Լուրջ հաջողություն էր կադրերի հոսունության կանխումը։ Եվ ահա արդյունքը. ինչպես 1969 թ., այնպես էլ անցած տարի սովխոզը գերակատարեց կաթի ու մսի արտադրության ու պետությանը դրանց հանձնման առաջադրանքները, նշանակալիորեն բարձրացրեց կովերի կաթնատվությունը։

Այդ ժողովում արծարծվեց նաև հանրային հոտի կերի բազայի ամրապնդման հարցը։ Չէ՞ որ մթերատվության աճը, առաջին հերթին, պայմանավորված է դրանով։ Մեզ մոտ սովորություն դարձավ, նախքան կերի կուտակմանն անցնելը, հրավիրել կուսբյուրոյի ընդլայնված նիստ, մշակել միջոցառումների կոնկրետ ծրագիր։ Դրա համաձայն նախապես կոմպլեկտավորում ենք բրիգադները, նրանց տալիս որոշակի հանձնարարություն, լուծում փոխադրական միջոցների հարցը, մոբիլիզացնում բոլոր ուժերը, կազմակերպում հունձը այն տեղերում, որտեղից հնարավոր է խոտ քաղել։

Այս ամենից հետո զարմանալի չէ, որ վերջին տարիներին մենք սկսել ենք կատարել նաև կերի կուտակման պլանը։ Անցած տարի, օրինակ, նախատեսված 350-ի փոխարեն, կուտակեցինք 450 տոննա լավորակ խոտ, նույնքան էլ՝ սիլոս։

Կուսկազմակերպության ոչ մի միջոցառում, դիրեկցիայի ոչ մի մտահղացում և, ընդհանրապես, արտադրական որևէ լուրջ խնդիր հնարավոր չէ իրականացնել առանց աշխատողների բարձր պատասխանատվության, կոմունիստների ակտիվ մասնակցության։ Բնավ զարմանալի չէ, որ ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևն այնքան կարևոր նշանակություն տվեց կադրերի ընտրությանն ու դաստիարակությանը՝ ընդգծելով, որ կադրերի կարգապահության և պատասխանատվության բարձրացումը մեր կարևորագույն խնդիրներից մեկն է։ Ահա թե ինչու կուսբյուրոն մշտապես զբաղվում է կադրերի ընտրությամբ, կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխմամբ ու մոբիլիզացմամբ։ Մարդիկ այս կամ այն գործին նշանակվում են ըստ իրենց

գործնական հատկանիշների: Մեր կուսկազմակերպությունը բաղկացած է
ՍՄԿԿ 46 անդամ-թեկնածուներից: Նրանցից 35-ն անմիջականորեն աշխա-
տում են արտադրության պատասխանատու տեղամասերում:
Նյութական բարիքների արտադրության ոլորտում կոմունիստները ցու-
ցաբերում են մեծ բարեխղճություն, կարգապահության լավ օրինակ տալիս.
հանդես գալիս օգտակար նախաձեռնություններով, ապահովում իրենց ավան-
գարդային դերը, բարձր պահում կոմունիստի կոչումը: Արտադրության մեջ
ընդգրկված մեր բոլոր կոմունիստները քայլում են մրցության առաջին շարքում,
հաջողությամբ ղեկավարում իրենց վստահված տեղամասերի գործերը, կա-
տարում և գերակատարում պետական առաջադրանքները:
Հմուտ բրիգադավար է կոմունիստ Հ. Կարապետյանը: Վեց տարի շարու-
նակ գլխավորել է կուսկազմակերպության գործունեությունը, իսկ այժմ իր
խորհուրդներով օգնում է կուսբյուրոյին: Նրա ղեկավարած № 5 բրիգադան,
ուր աշխատում են երեք ազգի ներկայացուցիչներ, աչքի է ընկնում բարձր
կարգապահությամբ, համերաշխությամբ, արժանացել է կոմունիստականի
կոչմանը: Բրիգադայի կոլեկտիվը միշտ հավատարիմ է մնում այդ կոչմանը,
պատվով լուծում իր առջև ծառացած բոլոր խնդիրները, ամեն տարի գերակա-
տարում պտուղների արտադրության պլանը:
Հողի, աշխատավորի հետ կապված մարդ է № 12 բրիգադայի բրիգադա-
վար Ռ. Բաղդասարյանը՝ սովխոզի հիմնադիրներից մեկը: Հմուտ պտղաբույծ
էր, առաջ քաշվեց, առանց արտադրությունից կտրվելու ավարտեց Կիրովա-
կանի գյուղատնտեսական տեխնիկումն ու հիմա առավել բանիմացորեն է
ղեկավարում բրիգադայի գործերը: Ամեն տարի պլանից դուրս 300—400 տոն-
նա միրգ են հավաքում նրա բրիգադայի մարդիկ:
Պտղաբուծական 12 բրիգադների բրիգադավարներից 10-ը կոմունիստ-
ներ են, բոլորն էլ՝ բարեխիղճ, եռանդաշատ, առաջավոր: Անցած տարի առավել
լավ արդյունքի հասան կոմունիստներ Ն. Սեդրակյանի, Պ. Ղազարյանի, Գ.
Հովհաննիսյանի, Մ. Նալբանդյանի ղեկավարած բրիգադները: Մի քանի հար-
յուր տոննա արտապլանային պտուղ— ահա նրանց ջանքերի արգասիքը:
Կոմունիստի անձնական օրինակից շատ բան է կախված: Հաճախ նրա
լավ գործը, անձնական օրինակը միանգամայն փոխում են իրավիճակը: Նշեմ
մեկ օրինակ: Նախանցյալ տարի, բերքահավաքի եռուն օրերին վարորդները
չէին ցանկանում աշխատանքի ժամից դուրս միրգ տեղափոխել Այրումի պա-
հածոների գործարան: Օրվա հավաքած բերքը, իրացվելու փոխարեն, մնում էր
և բացասաբար ազդում հաջորդ օրվա բերքահավաքի ընթացքի վրա (տարա-
ները զբաղված էին լինում): Անհրաժեշտ էր ինչ-որ միջոցի դիմել: Եվ այստեղ
կարևոր նշանակություն ունեցավ կոմունիստի անձնական օրինակը: Ավտո-
վարորդներ Ս. Պողոսյանն ու Մ. Մովսիսյանը լավ նախաձեռնության սկիզբ
դրեցին՝ աշխատանքային ժամից հետո ևս սկսեցին միրգ տեղափոխել: Նրանց
օրինակին հետևեցին անկուսակցական վարորդները: Գործը մեծապես շահեց.
կանխվեց բերքի փչացումը, տնտեսությունը կատարեց իրացման առաջա-
դրանքը: Անցած տարի ևս մեքենա-տրակտորային պարկի կոմունիստները
մեծ ավանդ մուծեցին տնտեսության ընդհանուր հաջողություններում: Նույն
Ս. Պողոսյանը 200 տոննայից ավելի միրգ տեղափոխեց Այրումի պահածո-
ների գործարան: Նման օրինակները շատ են:
Կոմունիստների ակտիվությունն ու ավանգարդային դերը բարձրացնելու



նպատակով՝ կուսբյուրոն ձեռնարկում է զանազան միջոցներ: Արդյունավետ,
իրեն արդարացրած ձև է ճյուղերի ղեկավարների, մասնագետների և շարքա-
յին կոմունիստների հաշվետվությունների ունկնդրումը:
Երբեմն մենք, հանրային արտադրության շահերից ելնելով, կատարում
ենք կադրերի վերատեղաբաշխում կամ կոմունիստներին տալիս կոնկրետ
հանձնարարություններ՝ այս կամ այն ճյուղին գործնական օգնություն ցույց
տալու համար: Այսպես, № 10 բրիգադայում մի ժամանակ նորատունկ այգի-
ների խնամքը վատ էր կազմակերպվում, կային նաև այլ կարգի թերություն-
ներ, ցածր էր աշխատանքային կարգապահությունը: Հարկ եղավ № 2 բրի-
գադայի բրիգադավար, երիտասարդ կոմունիստ Լ. Անտոնյանին տեղափոխել
հետ մնացող բրիգադան: Ստանձնելով գործը՝ Լ. Անտոնյանը առաջին հերթին,
ծանոթացավ նյութական բարիքներ ստեղծող մարդկանց, լուրջ խոսակցու-
թյուն ունեցավ նրանց հետ, մոբիլիզացրեց պտղաբույծների ուժերը: Այստեղ
սովորույթ դարձավ ծառերի խնամքն ու բուժումը կատարել ագրոտեխնիկա-
կան կանոններով ու սահմանված ժամկետներում:
Կուսկազմակերպության հոգատարության ու դաստիարակչական արդյու-
նավետ գործունեության շնորհիվ բոլոր կոմունիստներն էլ արտադրության
առաջավորներ են: Մեր կազմակերպությանը պատիվ է բերում, որ նրանցից
22-ն արժանացել են բարձր պարգևների: Սովխոզի դիրեկտոր Բ. Վարդան-
յանին, օրինակ, շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:
Կոմունիստականի կոչմանն արժանացած բրիգադայի բրիգադավար Հ. Կարա-
պետյանն Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր է, բրիգադավարնե-
րից Ն. Սեդրակյանը պարգևատրվել է «Աշխատանքային արիության համար»,
Գ. Հովհաննիսյանն ու Ռ. Բաղդասարյանը՝ ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի ոսկե և արծաթե
մեդալներով:
1956 թ. սկսած՝ սովխոզը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճում-
ների ցուցահանդեսի մասնակից է, պարգևատրվել է Հոկտեմբերյան հեղափո-
խության 50-ամյակի հուշադրոշով, լենինյան համամիութենական հոբելյա-
նական պատվոգրով: Այդ ամենի մեջ կուսկազմակերպությունն ունի իր ար-
ժանի ավանդը:
Կուսկազմակերպությունը տարիներ շարունակ գլխավորում է Հոկտեմբեր-
յանի շրջանի «Նաիրի» և Աբխազական ԻՍՍՀ Գալիփշի շրջանի Իլյիչի անվան
ցիտրուսաբուծական սովխոզների կոլեկտիվների հետ ծավալված սոցիալիս-
տական մրցությունը, կազմակերպում փոխայցելություններ, այդ մրցությունը
ծառայեցնում տնտեսության վերելքին: Հիմա սովխոզի կոլեկտիվը պայքա-
րում է կոմունիստականի կոչմանն արժանանալու համար:
Նոր հնգամյակը նոր խնդիրներ է դրել նաև մեր տնտեսության առջև:
Առաջիկա հինգ տարում մենք այգիների տարածությունը կընդարձակենք 170
հեկտարով: Պտղի համախառն արտադրանքը, նախորդ հնգամյակի համեմա-
տությամբ, կավելացնենք ավելի քան 5200 տոննայով: Անցած հինգ տարի-
ներին մեր սովխոզում կառուցվել են բնակելի նոր տներ, շահագործման է
հանձնվել կուլտուրայի տունը, լրիվ ասֆալտապատվել են փողոցները, անց-
կացվել է բնական գազ, խմելու նոր ջրատար և այլն: Այդ կարգի աշխատանք-
ներ կծավալվեն նաև նոր հնգամյակում: Այդ խնդիրների լուծումը մեծ ջանքեր
ու եռանդ է պահանջում նաև մեր կուսկազմակերպությունից:

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՇԱՀՈՒՅԹԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏՆՏԵՍԱՎԱՐՄԱՆ ՍԻՍՏԵՄՈՒՄ*)

Ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդրի՝ ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելքի ապահովման համար ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նախատեսվում են՝ ավելացնել շահույթը, բարձրացնել արտադրության շահութաբերությունը, կատարելագործել տնտեսական խթանման ֆոնդերի ձևավորման ու օգտագործման կարգը, ավելի լայնորեն օգտագործել ֆինանսա-վարկային մեխանիզմը՝ հանուն տեխնիկական առաջընթացի և արտադրության ինտենսիվացման։ Սրանք, իրենց հերթին, պահանջում են բարձրացնել սոցիալիստական շահույթի ու շահութաբերության տեսական ուսումնասիրության մակարդակը, կատարելագործել դրանց վերլուծության, կանխորոշման և պլանավորման ձևերն ու մեթոդները։ Հայտնի է, որ արդյունաբերական ձեռնարկությունների գործունեության

Հայտնի է, որ արդյունաբերական ձեռնարկությունների գործունեության պլանավորման և նյութական խրախուսման համար իրացման ցուցանիշի հետ մեկտեղ, առաջին պլանի վրա են մղված նաև շահույթ և շահութաբերության ցուցանիշները։ Շահույթը դադարել է, այսպես ասած, «նեղ» ֆինանսաբյուջետային ցուցանիշ լինելուց։ Այն դիրեկտիվ ցուցանիշ է ո՛չ միայն առանձին ձեռնարկության, այլև ողջ ժողովրդական տնտեսության համար։ Տնտեսական ռեֆորմով վճռական քայլ արվեց կոլեկտիվ և անձնական նյութական շահագրգռվածությունը շահույթի և շահութաբերության հետ կապելու գործում։ Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցած ձեռնար-

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցած ձեռնարկություններում անհամեմատ բարձր տեմպերով աճեց աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի իրացման ծավալը և շահույթի մասսան։ Ռեֆորմի իրականացման տարիներին զարգացման բարձր տեմպերը հնարավորություն ընձեռեցին, մի կողմից, ավելացնելու պետական բյուջեին մասհանվող գումարների չափը, ապահովելով համաժողովրդական շահը, մյուս կողմից, մեծ գումարներ թողնելու ձեռնարկությունների տնօրինությանը՝ տնտեսական խթանման ֆոնդեր ստեղծելու համար։ Բավական է հիշատակել, որ 1971 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, մեր հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ արտադրվող շահույթը աճելու է 13,5 տոկոսով. ըստ որում, արդյունաբերության մեջ՝ 16,2 տոկոսով՝ հասնելով

---

* Տպագրվում է հարցադրման կարգով։— Խմբ.։



մոտ 209 մլն ռուբլու, որից 90 տոկոսը բաժին է ընկնելու տնտեսավարման նոր սիստեմին անցած ձեռնարկություններին։ Հատկանշական է, որ այդ ժամանակաշրջանում շահույթից բյուջեին կատարվող վճարումները աճելու են 9,4, իսկ տնտեսական խթանման ֆոնդերին կատարվող մասհանումները՝ 18,2 տոկոսով։

Այդ դրականի հետ մեկտեղ, փաստացի նյութերի վերլուծությունը ցույց է տալիս, որ ոչ բոլոր ձեռնարկություններում են շահույթի ու շահութաբերության ցուցանիշները ազդում տնտեսական խթանման ֆոնդերի միջոցով կոլեկտիվ և անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման վրա, էապես խրթանում՝ պլաններում հաշվի առնելու արտադրության արդյունավետության բարձրացման բոլոր հնարավորությունները։ Ուստի, արդյունաբերական ձեռնարկությունների պլանավորման, հատկապես տնտեսական խթանման ֆոնդերի, գործող սիստեմը դեռևս պետք է կատարելագործվի։ Այստեղից հրամայական պահանջ է դառնում, տնտեսական ռեֆորմի ընթացքի գիտական վերլուծության ու ընդհանրացումների հիման վրա, նոր ասպեկտով մոտենալ նաև շահույթի տեսությանն ու պրակտիկային։

Շահույթը տնտեսական բարդ կատեգորիա է, որի մեջ խաչաձևվում են ո՛չ միայն տնտեսա-արտադրական, այլև սոցիալ-քաղաքական բնույթի բազմաթիվ հարցեր։ Թերևս այդ է պատճառը, որ այսօր մեր տնտեսագիտական գրականության մեջ տվյալ պրոբլեմի շուրջ կան ծայրահեղ տեսակետներ. որոշ տնտեսագետներ, ընդունելով սոցիալիզմի պայմաններում հավելյալ աշխատանքի և հավելյալ արդյունքի առկայությունը, ընդունում են նաև հավելյալ արժեքի գոյությունը և շահույթը համարում հավելյալ արժեքի դրսևորում։ Տնտեսագետների մի այլ խումբ, իրավացիորեն մերժելով սոցիալիզմի պայմաններում հավելյալ արժեքի գոյությունը, միաժամանակ չի ընդունում նաև հավելյալ և անհրաժեշտ արդյունքը, շահույթը արհեստականորեն հակադրում է աշխատավարձին, առաջինի բարձրացումը դիտում որպես երկրորդի նվազում։

Նշված տեսակետներին բնորոշ ընդհանուրն այն է, որ հավասարության նշան է դրվում տարբեր հասարակարգերում հավելյալ արդյունքի և արժեքի ու դրանց դրսևորման ձևերի միջև։ Այս կապակցությամբ Կ. Մարքսը նշում է. «Հավելյալ աշխատանքն առհասարակ, իբրև տվյալ պահանջմունքների չափից վեր աշխատանք, պետք է գոյություն ունենա մշտապես։ Բայց կապիտալիստական, ինչպես և ստրկատիրական սիստեմի դեպքում և այլն նա հակամարտ ձև ունի...» (Կապիտալ, հ. 3, մաս 2, 1949, էջ 359)։ Այդ հակամարտությունը կապիտալիզմի պայմաններում արտահայտվում է նրանով, որ հավելյալ արդյունքը հակադրվում է անհրաժեշտ արդյունքին, շահույթը՝ աշխատավարձին։ Սակայն այդ չի նշանակում, որ սոցիալիզմի պայմաններում օբյեկտիվորեն գոյություն ունեցող հավելյալ արդյունքը պետք է հակասության մեջ գտնվի անհրաժեշտ արդյունքի, իսկ շահույթը՝ աշխատավարձի հետ։ Ընդհակառակը, սոցիալիզմի պայմաններում և հավելյալ և անհրաժեշտ արդյունքի, շահույթի և աշխատավարձի միջև կա օրգանական, խոր միասնություն, որը խարսխվում է արտադրամիջոցների հանրային սոցիալիստական սեփականության վրա։ Միաժամանակ միասնությունը չի վերացնում դրանց միջև եղած այն խոր տարբերությունը, որը դրսևորվում է դրանցից յուրաքանչյուրի առանձնահատուկ դերով՝ հասարակական վերարտադրության մեջ։

Սոցիալիզմի պայմաններում հավելյալ արդյունքի դերի, նրա օգտագործման ու շահույթի հետ ունեցած կապի վերաբերյալ չափազանց արժեքավոր է Վ. Ի. Լենինի ասույթը. «Շահույթը նույնպես բավարարում է «հասարակական» պահանջմունքները։ Հարկավոր է ասել, որտեղ հավելյալ արդյունքը պատկանում է ոչ թե սեփականատերերի դասակարգին, այլ ամբողջ աշխատավորներին և միայն նրանց» (տե՛ս Ленинский сборник, XI, стр. 381—382)։ Հետագայում մի ուրիշ առիթով Վ. Ի. Լենինը նկատել է, որ պետական ձեռնարկությունների անվնասաբեր ու շահութաբեր դարձնելը նույնպես բանվոր դասակարգի շահերի պաշտպանությունն է (տե՛ս Ленин, ПСС, т. 44, стр. 494)։

Ընդունելի է դարձել այն տեսակետը, որ սոցիալիզմի պայմաններում օբյեկտիվորեն գոյություն ունի և՛ անհրաժեշտ, և՛ հավելյալ արդյունք։ Շահույթը հիմնականում հավելյալ, մասամբ անհրաժեշտ արդյունքի մի մասն է։ Սակայն իրականում այդ ձևավորումը անմիջականորեն չի դրսևորվում, այլ անցնում է զանազան փուլերով ու ենթարկվում բազմաթիվ բարդ կերպափոխումների։ Ըստ որում, որոշ տնտեսագետների կարծիքով շահույթը հասարակության համար արդյունքի արժեքի մի մասն է, ուրիշների կարծիքով՝ զուտ եկամուտ։

Սոցիալիստական շահույթի պրոբլեմը քննարկելիս՝ այսօր չի կարելի սահմանափակվել միայն որակական վերլուծությամբ (որն է դրա աղբյուրը). պետք է նույնքան ուշադրություն նվիրել նաև քանակական վերլուծությանը (ինչպիսի մեծություն պետք է ունենա այն զուտ եկամտի կամ հասարակության համար արդյունքի արժեքի դրսևորման մեջ)։ Այդ պրոբլեմի ճիշտ լուծումն սկզբունքային, մեթոդոլոգիական նշանակություն ունի գնագոյացման հետագա կատարելագործման և լիակատար տնտեսական հաշվարկի արմատավորման համար։ Շահույթը պետք է դիտել ո՛չ միայն որպես զուտ եկամտի կամ հասարակության համար արդյունքի արժեքի մի մաս, այլ գումարի այն նվազագույնը, որն անհրաժեշտ է նորմալ պայմաններում գործող յուրաքանչյուր ձեռնարկության համար։

Տնտեսական նոր ռեֆորմի առաջին շրջանում արդյունաբերական ձեռնարկությունների պլանավորման ու տնտեսական խթանման սիստեմում շահույթի ու շահութաբերության ցուցանիշների օգտագործումը հիմնականում արդարացվում է. ռեֆորմի երկրորդ շրջանում պետք է բարձրանա այդ կատեգորիաների դերը, կատարելագործվեն դրանց պլանավորման ու հաշվառման ձևերն ու մեթոդները։

Արտադրության արդյունավետության բարձրացման գործում շահույթի խթանիչ դերի մեծացումը սերտորեն առնչվում է դրա բաշխման գործող սիստեմի կատարելագործման խնդիրներին։ Եվ դա այն պարզ պատճառով, որ շահույթի բաշխման սիստեմի կատարելագործման աստիճանը արտադրա- հարաբերությունների կատարելագործվածության դրսևորման ձևերից է։ Սոցիալիստական տնտեսությունում բաշխման հարաբերությունների այս ակտիվ կողմի վրա լուրջ ուշադրություն է նվիրել Լենինը։ Նա ասել է, որ այդ բաշխումը մի մեթոդ է, մի գործիք, մի միջոց՝ արտադրությունը բարձրացնելու համար։

Շահույթի բաշխման նոր կարգը, նախորդի համեմատությամբ, ունի անվիճելի առավելություններ և անհամեմատ ավելի ակտիվ է ներգործում արտադրության արդյունավետության բարձրացման վրա։ Միաժամանակ պետք



է նշել, որ այդ ասպարեզում սպառված չեն բոլոր հնարավորությունները։ Շահույթի բաշխման սիստեմի կատարելագործումն այսուհետև ևս պետք է ընթանա այնպիսի ուղիով, որ մի կողմից, ապահովվի համապետական շահը, մյուս կողմից, սոցիալիստական ձեռնարկություններում խթանվի կոլեկտիվ և անձնական նյութական շահագրգռվածությունը։ Այս տեսակետից մեծ դեր է կատարում ֆոնդավճարը։ Որպեսզի ֆոնդավճարը էապես ներգործի ձեռնարկության արտադրության արդյունավետության բարձրացման վրա (որի համար և կյանքի է կոչված), անհրաժեշտ է, որ այն զգալի տեսակարար կշիռ ունենա ձեռնարկության շահույթում, ընդհանուր գումարում և դրանցից բյուջեին կատարվող մասհանումներում։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ արդյունաբերական շատ ձեռնարկությունների համար ֆոնդավճարը էական նշանակություն չունի։

Շահույթի բաշխման բնագավառում ֆոնդավճարի պրոբլեմի հետ սերտորեն առնչվում է նաև կենտրոնացված կապիտալ ներդրումների ֆինանսավորման ու վարկավորման գործող սիստեմների, ինչպես և տոկոսային քաղաքականության հետագա կատարելագործումը։ Տնտեսագիտական գրականությունն այդ առումով բազմաթիվ առաջարկներ է անում։ Դրանցից, անկասկած, ուշադրության արժանի է կենտրոնացված կապիտալ ներդրումների նպատակով տրվող երկարատև վարկերի դիմաց գանձվող տոկոսադրույքների բարձրացման առաջարկը։ Այն, ընդհանուր առմամբ, ընդունելի է, սակայն դրա կիրառման ժամանակ պետք է նկատի ունենալ հետևյալը. տնտեսավարման նոր պայմաններում պետությունը պետք է տոկոսային իր քաղաքականությամբ նպաստի, որպեսզի արդյունաբերական ձեռնարկությունները երկարատև վարկերի միջոցով իրականացնեն ժողովրդական պլաններով նախատեսված կենտրոնացված կապիտալ ներդրումները։ Բայց, միաժամանակ, այդ վարկերի դիմաց գանձվող տոկոսներն այնպիսին պետք է լինեն, որ նպաստեն կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացմանը։

Մինչդեռ, գործնականում, դրանք ոչ միայն չեն արտացոլվում վճարման ենթակա շահույթների մեջ ու անմիջականորեն չեն կապվում տնտեսական խթանման ֆոնդերի հետ, այլև, միջին հաշվով, 5—10 անգամ ցածր են ֆոնդավճարի համար սահմանված տոկոսաչափերից։ Նպատակահարմար է ժամկետային երկարատև վարկերի համար գործող տոկոսադրույքը (տարեկան 0,5 տոկոս) պահպանել կամ բարձրացնել չնչին չափով, իսկ ժամկետանց վարկերի դիմաց բարձրացնել՝ հասցնելով առնվազն ֆոնդավճարի դրույքաչափին, և դրանք արտացոլել ոչ թե շահույթներից կատարվող պլանային ծախսերի, այլ առաջնահերթ վճարումների մեջ՝ դրանով իսկ տոկոսները կապել տնտեսական խթանման ֆոնդերի հետ։

Այս միջոցառման իրականացումը, անշուշտ, դրական ներգործություն կունենա արդյունաբերական ձեռնարկություններում կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման վրա՝ շինարարական-մոնտաժային աշխատանքների պլանների կատարման, արտադրական հիմնական ֆոնդերի շահագործման հանձնման, գործող հիմնական ֆոնդերի լրիվ կարողությամբ նորմատիվային ժամկետներում յուրացման առումով, եթե, միաժամանակ, խիստ բարձրացվի նախագծային, շինարարական, մատակարարող կազմակերպությունների պատասխանատվությունը։ Ճիշտ է, տնտեսական ռեֆորմի իրականացման ընթացքում կիրառվեցին մի շարք միջոցառումներ՝ վերը նշված կազ-

մակերպությունների պատասխանատվության բարձրացման ասպարեզում, սակայն դրանք դեռևս չեն կարող փոխհատուցել այն վնասները, որոնք առաջանում են արդյունաբերական ձեռնարկություններում ոչ-որակյալ նախագծային-նախահաշվային փաստաթղթերի, շինարարական-մոնտաժային աշխատանքների ժամկետների ձգձգման, սարքավորումների մատակարարման պլանների թերակատարման հետևանքով։

Այնուհետև, դեռևս թույլ է տոկոսային չափանիշի ներգործությունն արդյունաբերական ձեռնարկությունների նաև շրջանառու միջոցների օգտագործման արդյունավետության բարձրացման վրա։ Գործող կարգի համաձայն, պետական բանկն արդյունաբերական ձեռնարկությունների շրջանառու միջոցների ձևավորման նպատակով հատկացրած կարճատև վարկերի դիմաց կարող է, ըստ էության, մեծ տոկոսներ գանձել միայն բարձր շահութաբերության մակարդակ ունեցող ձեռնարկություններից և այդ էլ այն դեպքում, երբ դրանց համար վերադաս կազմակերպությունները նախապես սահմանեն ֆոնդավճարի մեծ տոկոսներ։ Սակայն, ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ բարձր շահութաբերություն ունեցող արդյունաբերական ձեռնարկությունների համար ֆոնդավճարը էական նշանակություն չունի ո՛չ շահույթի ընդհանուր գումարի, ո՛չ պետական բյուջեին շահույթից կատարվող ընդհանուր վճարի, և ո՛չ էլ հաշվարկային շահութաբերության որոշման համար։ Ուստի, բարձր շահութաբեր ձեռնարկությունների համար էական նշանակություն չեն կարող ունենալ նաև վարկային այն տոկոսները, որոնք պետական բանկին մասհանվում են շահույթներից՝ առաջնահերթ վճարումների կարգով, նույնիսկ այն դեպքում, եթե այդ բարձր տոկոսաչափերը կրկնապատկվեն։ Այնուհետև, պետական բանկի կարճատև վարկերի համար սահմանված նոր տոկոսաչափերը էական ազդեցություն չունեն շրջանառու միջոցների օգտագործման արդյունավետության բարձրացման վրա նաև ցածր շահութաբեր, պլանային-վնասով աշխատող արդյունաբերական ձեռնարկությունների համար այն պարզ պատճառով, որ այդ ձեռնարկությունները դուրս են ֆոնդավճարի ազդեցության ոլորտից, հետևաբար և՝ վարկային բարձր տոկոսների ազդեցության ոլորտից։

Շրջանառու միջոցների օգտագործման արդյունավետության բարձրացման համար անհրաժեշտ է ֆոնդավճարը կիրառել ոչ թե շրջանառու միջոցների մի մասի, այլ դրա ողջ արժեքի նկատմամբ և ճշգրտել ըստ ֆոնդերի շահութաբերության ցուցանիշների հաշվարկման կարգը։ Նման եղանակը կնպաստի արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասում (որոնց շահութաբերության մակարդակը մոտենում է միջին ճյուղայինին) բարձրացնելու շրջանառու միջոցների օգտագործման արդյունավետությունը։ Հարկ է նկատել, որ ֆոնդավճարը չպետք է կիրառել արդյունաբերական ձեռնարկության ողջ շրջանառու միջոցների արժեքի, մասնավորապես դրամական միջոցների, նկատմամբ, անկախ այն բանից, թե դրանք սեփական են (հաշվարկային հաշվում, դրամարկղում գտնվող միջոցները և այլն), թե փոխառու (առաքված ապրանքա-նյութական արժեքների, բացված ակրեդիտիվների համար տրված վարկերը և այլն)։ Շրջանառու միջոցների այդ մասի ձերբազատումը ֆոնդավճարից պետք է տնտեսապես խթանի ձեռնարկություններին՝ արտադրանքն ապրանքայինից դրամականի վերածելու համար։ Այլ խոսքով, անհրաժեշտ է ֆոնդավճարը տարածել ապրանքա-նյութական արժեքները նորմավորող շրջանառու միջոցների մնացորդի նկատմամբ, անկախ նորմատիվի չափից և դրա ծածկման աղբյուրների (սեփական, թե վարկային) բնույթից։



Ավելորդ չի լինի նկատել, որ ժողովրդական տնտեսության, առավել ևս արդյունաբերության մեջ օգտագործվող ողջ շրջանառու միջոցների միայն 20 տոկոսն է դրամական արժեքով արտահայտվում, իսկ 80-ը ապրանքա-նյութական արժեքներով, որոնք, վերը նշված առաջարկն ընդունվելու դեպքում, կընդգրկվեն ֆոնդավճարի ներգործության ոլորտը։ Այնուհետև, եթե ֆոնդավճարը կիրառում ենք ապրանքա-նյութական արժեքների մնացորդի նկատմամբ, ապա ձեռնարկությունները, ունենալով վարկավորված գերնորմատիվային ապրանքանյութական արժեքներ, դրանց դիմաց պետք է կատարեն կրկնավճար, մի կողմից՝ պետական բանկին (բարձր տոկոսներ), մյուս կողմից՝ պետական բյուջեին (ֆոնդավճար)։ Թվում է, տնտեսական հաշվարկի շահերից ելնելով, չպետք է «պատժվեն» և՛ ֆոնդավճարով, և՛ բարձր վարկային տոկոսներով լավ աշխատող արդյունաբերական այն ձեռնարկությունները, որտեղ, պլանները գերակատարելու շնորհիվ, օբյեկտիվորեն գոյանում են վարկավորված գերնորմատիվային ապրանքա-նյութական արժեքներ։ Այս դեպքում գերնորմատիվային ապրանքա-նյութական արժեքները պետք է վարկավորվեն արտոնյալ պայմաններով՝ առնվազն ցածր տոկոսներով։ Արդյունաբերական ձեռնարկությունների շրջանառու միջոցների նկատմամբ ֆոնդավճարի կիրառման շրջանակների ընդլայնումը, անշուշտ, կպահանջի ավելի խոր հիմնավորել և՛ ֆոնդավճարի, և՛ պետական բանկի տոկոսաչափերի օպտիմալ մակարդակները, նրանց միջև եղած փոխադարձ կապերը, ճշգրտել ըստ ֆոնդերի շահութաբերության (և՛ ընդհանուր, և՛ հաշվարկային) որոշման կարգը։ Սրանք էլ, իրենց հերթին, կպահանջեն ֆոնդավճարի տոկոսաչափերը դիֆերենցել ըստ հիմնական արտադրաֆոնդերի և շրջանառու միջոցների, մի բան, որը վաղուց ի վեր գոյություն ունի վարկային տոկոսների համար։

Արդյունաբերական ձեռնարկություններում ստեղծվող շահույթի բաշխման սիստեմի կատարելագործման բնագավառում ամենաբարձր ու դժվարին խնդիրներից է կոլեկտիվ և անձնական տնտեսական ու նյութական շահագրգռվածության սկզբունքների ճիշտ հաշվառումը։ Ձեռնարկությունը և նրա կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ պետք է էապես շահագրգռված լինեն եղած հնարավորությունների ռացիոնալ օգտագործման, արտադրության ընդհանուր վերելքի, ինչպես և շահույթի ավելացման ու շահութաբերության բարձրացման համար։

Այս առումով տնտեսական նոր ռեֆորմով կատարվեց կարևոր քայլ՝ թույլատրվեց ձեռնարկություններին իրենց շահույթների հաշվին ստեղծելու տնտեսական խթանման ինքնուրույն երեք ֆոնդ։ Բայց փաստերը ցույց են տալիս, որ այդ ֆոնդերի ձևավորման գործող մեխանիզմը (և՛ խրախուսման ցուցանիշների, և՛ սահմանվող նորմատիվների գծով) անհրաժեշտ է կատարելագործել ու հղկել։

Այս հարցն այժմ նոր տնտեսական ռեֆորմի սկզբունքների կատարելագործման ասպարեզում ծավալված բանավեճի ամենասուր ու բարդ պրոբլեմներից է և այդ բնագավառում արտահայտվում են զանազան, նույնիսկ խիստ ծայրահեղ, տեսակետներ։ Գերակշռող է այն տեսակետը, որ արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական խթանման սիստեմում իրացման ցուցանիշի հետ մեկտեղ, շահույթը և շահութաբերությունը հիմնականում արդարացնում են և այդ սիստեմի բարելավումը պետք է ընթանա այդ ցուցանիշների կատարելագործման ուղիով։ Ուստի, որպեսզի արտադրության արդյունա-

վետության և շահույթի բաշխման միջև եղած ֆունկցիոնալ կապը առավել ուժեղ ու անմիջական լինի, անհրաժեշտ է և՛ ավելացնել շահույթից խթանման ֆոնդերին մասհանվող գումարների չափը, և՛ ուժեղացնել կոլեկտիվ ու անձնական շահագրգռվածության կախումը այդ ֆոնդերից։

Նպատակահարմար է շահութաբեր ձեռնարկություններում նոր տեխնիկայի արմատավորման ու պարգևի ծախսերը (ինչպես նաև գիտահետազոտական ու նման բնույթի մի շարք այլ ծախսեր) հանել ինքնարժեքից և մտցնել տնտեսական խրախուսման ֆոնդերի մեջ՝ համապատասխանաբար բարձրացնելով նորմատիվները։ Նման եղանակով հնարավոր կլինի ո՛չ միայն բեռնաթափել ինքնարժեքն իրեն ոչ-հատուկ ծախսերից, պարզություն մտցնել նշված ծախսերի աղբյուրներում, այլև, որ ամենակարևորն է, նոր տեխնիկայի արմատավորման բոլոր ծախսերը, հետևապես և դրանց դիմաց վճարվող պարգևները, խրախուսման ֆոնդերի միջոցով անմիջական կախվածության մեջ դնել ձեռնարկության գործունեության այնպիսի ցուցանիշներից, ինչպիսիք են՝ շահույթը և շահութաբերությունը։

Երբ հարցի վերլուծությանը մոտենում ենք շահույթների բաշխման կատարելագործման տեսակետից, ապա պարզվում է, որ տնտեսական խրախուսման ֆոնդերի ձևավորման գործող կարգը չի կարող նպաստել կարևորագույն արտադրատեսակների պլանի կատարմանը, որովհետև ձեռնարկությունը (նկատի ունենք մեքենաշինականը) ինչ չափով էլ թերակատարի այդ արտադրատեսակների իրացման պլանը, դրա խրախուսման ֆոնդերին շահույթից փոխանցվող գումարները կարող են կրճատվել 25 տոկոսից ոչ ավելի։ Ակնհայտ է, որ այդպիսի սահմանափակումը տնտեսապես չի խթանում ձեռնարկություններին՝ վերը նշված արտադրատեսակների պլանային առաջադրանքների կատարման գործում։

Ինչպես տեսանք, ֆոնդավճարը կյանքի է կոչված, որպեսզի շահույթի բաշխման ժամանակ դրա միջոցով հնարավոր լինի էապես ազդել տնտհաշվարկով գործող ձեռնարկությունների վրա՝ իրենց արտադրական ֆոնդերը արդյունավետ օգտագործելու համար։ Եթե ֆոնդավճարը չկատարի իր այդ հիմնական ֆունկցիան, ապա այն, վաղ թե ուշ, կդադարի գործելուց։ Մինչդեռ, բուրժուական տեսաբանները ֆոնդավճարը համարում են կապիտալի դիմաց ստացվող տոկոս, նրա կիրառումը սոցիալիստական երկրներում դիտում արտադրակապիտալի բուրժուական տեսության ընդունում և հրաժարում արժեքի աշխատանքային տեսության մարքս-լենինյան ուսմունքից։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում շահույթը և՛ իր էությամբ ու դերով, և՛ իր ստացման եղանակով ու օգտագործման բնույթով, ոչինչ ընդհանուր չունի կապիտալիստական հասարակարգի շահույթի հետ։ Կապիտալիզմի պայմաններում, որը խարսխված է արտադրամիջոցների մասնավոր կապիտալիստական սեփականության վրա, շահույթի ստացումը ձեռնարկության գոյության վերջնական նպատակն է, իսկ հասարակության համար սպառարժեքների արտադրությունը՝ միայն այդ նպատակին հասնելու միջոցը։ Սոցիալիզմի պայմաններում արտադրության նպատակը հասարակության անդամների նյութական ու հոգևոր աճող պահանջմունքների բավարարումն է։ Սոցիալիստական ձեռնարկություններում շահույթի ավելացումը և շահութաբերության բարձրացումը դրան հասնելու կարևոր պայմանն են։

Վ. Ե. ԽԼՂԱԹՅԱՆ

## ԱՌԱՋԱՎՈՐ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ*

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը մեծ խնդիրներ դրեց գյուղատնտեսության առջև։ Նախատեսվեց նախորդ հնգամյակի համեմատությամբ գյուղատնտեսական մթերքների արտադրության տարեկան միջին ծավալը մեծացնել 20—22 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 37—40 տոկոսով, զգալիորեն իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, ավելի լրիվ չափով բավարարել բնակչության հարաճուն պահանջմունքները՝ սննդամթերքների և արդյունաբերության պահանջմունքները՝ հումքի նկատմամբ։

Այդ խնդիրների լուծման վճռական պայմանը, ասված է համագումարի որոշման մեջ, գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազայի ըստ ամենայնի ամրապնդումն է, հողագործության և անասնապահության քիմիացման, կոմպլեքսային մեքենայացման, հողերի լայն մելիորացման միջոցով գյուղատնտեսությունը ինտենսիվացնելու կուրսի հետևողական իրագործումը։ Համագումարը պահանջեց բարելավել արտադրության տեղաբաշխումը, խորացնել մասնագիտացումը և ուժեղացնել կենտրոնացումը, բարձրացնելով արտադրության արդյունավետությունը, բարելավել աշխատանքի կազմակերպումը, հողի և տեխնիկայի, ինչպես նաև աշխատանքային ռեսուրսների օգտագործումը։ Համագումարը միաժամանակ խնդիր դրեց՝ կատարելագործել աշխատանքի վարձատրության սիստեմը, նպատակ ունենալով բարձրացնել գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածությունը մթերքների արտադրությունը ավելացնելու, որակը բարձրացնելու, ինքնարժեքը իջեցնելու գործում, ավարտելով սովխոզների փոխադրումը լրիվ տնտեսական հաշվարկի։

Լրիվ տնտեսական հաշվարկը տնտեսվարության սոցիալիստական մեթոդ է, որն ուղղված է գյուղատնտեսական մթերքների արտադրության տնտեսական խթանումը ուժեղացնելու և քիչ ծախսումներով ավելի շատ մթերքներ արտադրելու նպատակին։ Այդ ասպարեզում ինչպես ողջ Միությունում, այնպես էլ մեր հանրապետությունում արդեն որոշակի գործ է կատարված։

Հանրապետության գյուղատնտեսության մինիստրության լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրված սովխոզները և գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունները, ճշտությամբ կիրառելով տնտեսական հաշվարկի սկզբունքը, ուժեղացնելով խնայողության ռեժիմը, արդյունավետ օգտագործելով հողն ու տեխնիկան, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները, ան-

* Տպագրվում է հարցադրման կարգով։— Խմբ.։

ցած տնտեսական տարում զգալի հաջողություններ ձեռք բերին արտադրական-ֆինանսական պլանների կատարման գործում: Նրանք գերակատարեցին հացահատիկային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, պտուղների, միամյա և բազմամյա խոտերի, կերի արմատապտուղների, սիլոսային կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման պլանները:

Լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրված սովխոզները գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի պլանը կատարել են 117,1 տոկոսով, իրացմանը՝ 124,9 տոկոսով. պլանից ավել են արտադրել 4,5 միլիոն, իրացրել՝ 7,4 միլիոն ռուբլու մթերքներ: Այդ տնտեսություններում կոնկրետ միջոցառումներ են իրագործվել՝ տնտեսական լծակները գործողության մեջ դնելու և արտադրության բոլոր ճյուղերի ցուցանիշները բարձրացնելու համար: 1969 թ. համեմատությամբ, 1970 թ. մեկ միավոր արտադրանքի վրա կատարվող ծախսերը կրճատվել են 4 տոկոսով, իջել է հացահատիկի, ծխախոտի, կարտոֆիլի, բանջարեղենի, խաղողի, հնդավոր պտղի, կաթի, մսի, ձվի, բրդի, կերի արմատապտուղների, սիլոսային կուլտուրաների, բազմամյա խոտի սերմացուի ինքնարժեքը: 1969 թվականի համեմատությամբ, 1970 թվականին 58,4 տոկոսով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը: 1969 թ. մեկ մարդ-օրվա հաշվով արտադրվել է 6 ռ. 31 կ. արտադրանք, 1970 թ.՝ 10 ռուբլու: Արտադրության շահութաբերությունը 1969 թ. կազմել է 58,8 տոկոս, 1970 թ.՝ 74,1 տոկոս: Մեկ բանվորի հաշվով 1969 թ. ընթացքում արտադրվել է 1942 ռուբլու համախառն արտադրանք, 1970 թ.՝ 2421 ռուբլու, աճը կազմել է 24,6 տոկոս: Համեմատության կարգով հարկ է նշել, որ լրիվ տնտեսական հաշվարկի չանցած սովխոզներում մեկ բանվորի հաշվով 1969 թ. արտադրվել է 1049 ռուբլու, 1970 թ.՝ 1295 ռուբլու համախառն արտադրանք: Բերված տվյալները ցույց են տալիս, որ լրիվ տնտեսական հաշվարկի անցած սովխոզներում մեկ բանվորի հաշվով գրեթե կրկնակի չափով ավելի շատ համախառն արտադրանք է ստեղծվել:

Աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության բարձրացման հետ միասին բարձրացել է նաև աշխատողների աշխատավարձը: 1970 թ. աշխատանքի վարձատրությունը մեկ մարդ-օրվա հաշվով կազմել է 4 ռ. 94 կ., 1969 թ. 3 ռ. 94 կ. փոխարեն, աճը կազմել է 25,3 տոկոս: 1970 թ. մեկ աշխատողի տարեկան աշխատավարձը (հիմնական և լրացուցիչ) կազմել է 1472 ռուբլի, 1969 թ.՝ 1190 ռուբլի: Լրիվ տնտեսական հաշվարկի չփոխադրված սովխոզներում համապատասխանաբար՝ 1160 ռուբլի, 949 ռուբլի: Տվյալները ցույց են տալիս, որ լրիվ տնտեսական հաշվարկի անցած սովխոզներում մեկ աշխատողի տարեկան աշխատավարձը 1970 թ. 312 ռուբլով, 1969 թ.՝ 241 ռուբլով ավելի բարձր է եղել, քան այն սովխոզներում, որոնք չեն անցել լրիվ տնտեսական հաշվարկի:

Սեփական միջոցների հաշվին ընդլայնված վերարտադրության իրականացման շնորհիվ զգալիորեն բարելավվել է արտադրական կարողությունների և հիմնական ֆոնդերի օգտագործումը: Բարձրացել է ֆոնդահատույցը, այսինքն՝ մեծացել է հիմնական արտադրական ֆոնդերի մեկ ռուբլուն ընկնող արտադրանքի թողարկումը: Այսպես, 1000 ռուբլու հիմնական արտադրական ֆոնդերի դիմաց լրիվ տնտեսական հաշվարկի անցած սովխոզներում 1969 թ. թողարկվել է 425 ռուբլու, 1970 թ.՝ 476 ռուբլու համախառն արտադրանք, իսկ



լրիվ տնտեսական հաշվարկի չանցած սովխոզներում համապատասխանաբար՝ 347 ռուբլու և 389 ռուբլու:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության և իրացման պլանները հաջողությամբ կատարելու, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու շնորհիվ կայունացել է տնտեսությունների ֆինանսական դրությունը: Դրանցից շատերը դարձել են կայուն և բարձր շահութաբեր ձեռնարկություններ: 1969 թ. համեմատությամբ, 1970 թ. լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրված սովխոզների շահույթները ավելացել են 44,9 տոկոսով կամ 4,7 միլիոն ռուբլով: 1970 թ. շահույթի պլանը գերակատարվել է 52,2 տոկոսով կամ 5,2 միլիոն ռուբլով: Նախատեսված 9.871.0 հազար ռուբլու դիմաց, ստացվել է 15.025.0 հազար ռուբլի շահույթ:

Լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրված 32 առաջավոր տնտեսություններն էլ գործել են շահույթով: 27 սովխոզներ և գյուղատնտեսական այլ ձեռնարկություններ ունեցել են գերպլանային շահույթ: Առավել բարձր ցուցանիշների են հասել հատկապես Կալինինոյի շրջանի Կալինինի անվան կաթնանասնապահական, Նոյեմբերյանի շրջանի Հաղթանակի, Ջեյթունի, Հոկտեմբերյանի շրջանի Ձերժինսկու անվան, Նաիրիի, Թումանյանի շրջանի Շնողի սովխոզները, Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկան և ուրիշ տնտեսություններ:

Այդ սովխոզները զգալիորեն պակասեցրել են արտադրական ծախսերը, վերացրել են անարտադրողական ծախսումները, գերածախսերը, շռայլումները, կրճատել են կորուստները, կատարելագործել են նյութական և բարոյական շահագրգռության սիստեմը, արդյունավետ են օգտագործել արտադրության ռեզերվները: Այդ ամենի շնորհիվ իջել է արտադրանքի ինքնարժեքը, բարձրացել է արտադրության արդյունավետությունը, սովխոզները դարձել են բարձր շահութաբեր ձեռնարկություններ:

Լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրված սովխոզների և գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների հաջողությունները ավելի մեծ կլինեին, եթե նրանց մի մասի գործունեության մեջ չլինեին թերություններ և բացթողումներ:

Արարատի շրջանի Արմաշի, Շամշադինի շրջանի Պառավաքարի, Սիսիանի շրջանի Նորավանի սովխոզները, Էջմիածնի շրջանի թռչնաբուծական ֆաբրիկան և մի շարք այլ ձեռնարկություններ չապահովեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության և իրացման պլանների կատարումը, թույլ տվեցին արտադրանքի ինքնարժեքի բարձրացում, որի հետևանքով չկատարեցին 1970 թ. շահույթի պլանը:

Ինչպես նշված, այնպես էլ մի շարք այլ սովխոզների և գյուղատնտեսական ձեռնարկությունների արտադրական անբավարար գործունեության հետևանքով գյուղատնտեսության մինիստրության լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրված տնտեսություններն ընդհանուր առմամբ չապահովեցին ծխախոտի, բանջարա-բոստանային կուլտուրաների, բնական խոտի բերքատվության և համախառն բերքի ստացման պլանների կատարումը: Չկատարվեցին նաև բրդատվության, բրդի համախառն արտադրության, պետությանը բուրդ, ծխախոտ և բանջարա-բոստանային կուլտուրաներ հանձնելու պլանները: Բարձրացավ ծխախոտի, բոստանային կուլտուրաների, բնական և ցանովի խոտերի, տավարի մսի և մի շարք այլ մթերքների ինքնարժեքը:

Թույլ են տրվել նաև ֆինանսական կարգապահության խախտումներ և

անտնտեսվարության երևույթներ։ Սեփական շրջանառու միջոցների իմոբիլի-
զացիան կապիտալ շինարարության գծով կազմել է 778.0 հազար ռուբլի։ Կա-
պիտալ շինարարության ամորտիզացիոն գումարներից պետբանկ չի մուծվել
337.8 հազար ռուբլի։ Շահագործման չեն հանձնվել 1.763.0 հազար ռուբլու
արտադրական կարողություններ։ Կատարվել են 142,6 հազար ռուբլու անար-
տադրողական ծախսումներ, գոյացել են 271.0 հազար ռուբլու դեբիտորական,
մեկ միլիոն ռուբլու կրեդիտորական պարտքեր։

Անասունների և թռչունների խնամքը, կերակրումը և պահպանումը վատ
կազմակերպելու հետևանքով տեղի են ունեցել մեծ չափերի հասնող անկում-
ներ և հարկադիր մորթ, որից առաջացած կորուստը կազմել է 558,1 հազար
ռուբլի։

Լրիվ տնտեսական հաշվարկի սկզբունքները ճշտությամբ կիրառելու, գյու-
ղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու և սովխոզային
արտադրության շահութաբերությունը բարձրացնելու նպատակով՝ ՀՍՍՀ գյու-
ղատնտեսության մինիստրությունն ու շրջսովետների գործկոմների գյուղա-
տնտեսության վարչությունները պետք է տնտեսական-կազմակերպական
բնույթի գործուն միջոցների դիմեն և լրիվ տնտեսական հաշվարկի անցած
սովխոզներին օգնեն՝ եղած թերությունները ամենակարճ ժամկետում վերաց-
նելու, տնտեսագիտական աշխատանքը բարելավելու, նյութական խրախուս-
ման, ինչպես նաև տնտեսական խթանման մյուս ֆոնդերի բաշխումը և օգտա-
գործումը սահմանված կարգով կատարելու, սովխոզների և մյուս կազմակեր-
պությունների հետ տնտհաշվարկային հարաբերությունների պահպանումն
ապահովելու համար։

Կուսակցության XXIV համագումարի որոշումները կենսագործելու և սով-
խոզները լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրելու համար հանրապետության
գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային կուսակցական, սովետա-
կան կազմակերպությունները և գյուղատնտեսական օրգանները պետք է տնտե-
սական-կազմակերպական բնույթի համապատասխան միջոցառումների դիմեն՝
հողի, կապիտալ ներդրումների և աշխատանքային ռեսուրսների օգտագործու-
մը բարելավելու, վնասաբերության և ցածր շահութաբերության պատճառները
վերացնելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու և յուրա-
քանչյուր տնտեսության էկոնոմիկան ամրապնդելու համար։

Հետևողական աշխատանք պետք է կատարել արտադրության՝ տնտեսա-
պես հիմնավորված մասնագիտացումը և կենտրոնացումը զարգացնելու, նրա
տեխնոլոգիան կատարելագործելու, մեքենայացման մակարդակը բարձրաց-
նելու, աշխատանքի և արտադրության կազմակերպումը բարելավելու, խնա-
յողության ռեժիմը ուժեղացնելու, տնտեսության բոլոր ճյուղերը շահութաբեր
դարձնելու գործում ղեկավար աշխատողների և մասնագետների դերն ու պա-
տասխանատվությունը բարձրացնելու ասպարեզում։

Արտադրության շահութաբերության բարձր մակարդակ ունեցող և արտա-
դրական հիմնական ֆոնդերով ապահովված տնտեսությունները լրիվ տնտե-
սական հաշվարկի փոխադրելը մեծ դժվարությունների հետ կապված չէ։ Դըժ-
վարություններ կան տնտեսապես հետ մնացող, տեխնիկայով, շենքերով և
արտադրական այլ միջոցներով թույլ ապահովված, ցածր շահութաբեր և վնա-
սով գործող սովխոզներում։ Այդ սովխոզները, բացառությամբ ամորտիզա-
ցիոն մասհանումներից, ըստ էության, չունեն կապիտալ ներդրումների ֆի-



նանսավորման սեփական այլ աղբյուր։ Նրանք չեն կարող ընդլայնված վեր-
արտադրություն իրականացնել բանկի վարկի հաշվին։ Դրա ապացույցը տըն-
տեսապես հետ մնացող կոլտնտեսությունների աշխատանքի պրակտիկան է,
որոնք, վարկի հաշվին չկարողանալով իրականացնել ընդլայնված վերարտա-
դրություն, հիմնականում վերակազմվեցին սովխոզների։

Մեր կարծիքով, ցածր շահութաբեր և վնասաբեր սովխոզների էկոնոմի-
կան չի կարելի բարձրացնել առանց բյուջետային հատկացումների։ Արտա-
դրական հիմնական ֆոնդերի ստեղծման և ձեռք բերման նպատակով նրանց
համար պետք է ապահովել այնպիսի մակարդակով բյուջետային հատկա-
ցումներ, որոնք անհրաժեշտ են նորմալ աշխատանքի համար։

1970 թ. անասնապահական հիմնական մթերքների պետական գնման
գների բարձրացումը նպաստեց սովխոզների եկամուտների ավելացմանը և
նրանց արտադրության շահութաբերության բարձրացմանը։ Բայց դրանով
մինչև վերջ չլուծվեց վնասաբերության վերացման պրոբլեմը։ Վերջին տարինե-
րի ընթացքում աճեցին նաև սովխոզների ծախսերը մթերքների արտադրության
վրա, քանի որ բարձրացան վառելիքի և որոշ շինարարական նյութերի գները։
Բացի այդ, սովխոզների ծախսերն ավելացան նաև աշխատանքի վարձատրու-
թյան կատարելագործման կապակցությամբ։

Ծախսերի ավելացման, ինչպես նաև արտադրական անբավարար գործու-
նեության պատճառով մինիստրության 121 սովխոզներ 1970 թ. փակեցին 8,5
միլիոն ռուբլի վնասով։

Արտադրական առաջադրանքները թերակատարելու, կորուստներ, գերա-
ծախս, շռայլումներ և անարտադրողական ծախսեր թույլ տալու հետևանքով
արտադրանքի ինքնարժեքը մինիստրության սովխոզներում պլանի համեմատ
բարձրացավ 27,7 տոկոսով կամ 27,1 միլիոն ռուբլով, այդ թվում անասնա-
պահական մթերքներինը՝ 36,4 տոկոսով կամ 18,2 միլիոն ռուբլով, բուսաբու-
ծական մթերքներինը՝ 18,9 տոկոսով, կամ 8,9 միլիոն ռուբլով։

Միանգամայն անբավարար գործունեություն են ունեցել հատկապես Անիի,
Ապարանի, Արթիկի, Ազիզբեկովի, Մարտունու շրջանների սովխոզները, որոնք
անցյալ տարին փակել են մեծ վնասներով։

Վնասով աշխատող և ցածր շահութաբեր սովխոզները հիմնականում գըտ-
նըվում են հանրապետության նախալեռնային և լեռնային գոտիներում, որ-
տեղ անհրաժեշտ պայմաններ չկան գյուղատնտեսական արտադրությունը բոլոր
ամենայնի զարգացնելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու համար։
Այստեղ արտադրությունը սիստեմատիկաբար տուժվում է անբարենպաստ
եղանակների և բնական աղետների հետևանքով։

Արտադրության տնտեսական պայմանները հավասարեցնելու և յուրա-
քանչյուր ձեռնարկության շահութաբեր աշխատանքի համար նորմալ պայման-
ներ ստեղծելու նպատակով գտնում ենք նպատակահարմար՝ չերտավորել գյու-
ղատնտեսական ձեռնարկությունների կողմից պետությանը վաճառվող մթերք-
ների գնման գները։ Միաժամանակ վնասաբեր, բնական-տնտեսական դժվա-
րին պայմաններում գտնվող սովխոզների համար սահմանել հիմնական
մթերքների գների հավելումներ այն հաշվով, որպեսզի ապահովվի նրանց
արտադրության շահութաբերությունը։

Գների հավելումները հիմնականում, իհարկե, կուղղվեն արտադրության
զարգացմանը և հնարավորություն կտան պակասեցնելու բյուջետային հատ-

*կացումները, վնասաբեր, բնական-տնտեսական դժվարին պայմաններում գտնվող տնտեսություններին կմոտեցնի լրիվ տնտեսական հաշվարկով աշխատելու պայմաններին։ Այդ միջոցառման կիրառումը չի բացառում մտածելու մթերքների գների հետագա կատարելագործման մասին։ Անհրաժեշտ է սահմանել այնպիսի գներ, որոնք ամբողջովին հատուցեն արտադրանքի վրա կատարված ծախսերը, ապահովեն շահույթի ստացումը և բյուջեին կատարվող մուծումները։ Անհրաժեշտ է նաև ստեղծել տնտեսական խթանման ու ապահովագրման ֆոնդեր, ինչպես նաև ժողովրդական տնտեսության զարգացման պլանին համապատասխան ֆինանսավորել ընդլայնված վերարտադրության միջոցառումները։ Բացի այդ, պետք է որոշել յուրաքանչյուր ապրանքային արտադրանքի՝ տնտեսապես հիմնավորված գինը։*

*Ինչպես հայտնի է, հանրապետության նախալեռնային և լեռնային գոտիներում գտնվող սովխոզներում հաճախակի են տեղի ունենում բնական աղետներ, որոնցից առաջացած վնասները հսկայական չափերի են հասնում։ Ապահովագրական ֆոնդերի միջոցների սահմանափակ լինելը հնարավորություն չի տալիս ծածկելու նույնիսկ ցանքերի լրիվ ոչնչացումից ծագած վնասները, որի հետևանքով առաջանում է սեփական շրջանառու միջոցների ճեղքվածք, տնտեսությունները ընկնում են ֆինանսական ծանր դրության մեջ, աշխատողները կորցնում են իրենց վարձատրության այն մասը, որը պետք է ստանային վերջնական արդյունքների համար։*

*Սովխոզներին այդ վիճակից դուրս բերելու, նրանց գործունեությունը բարելավելու և ֆինանսական դրությունը կայունացնելու նպատակով՝ նրանց պետք է վարկ տալ ապահովագրական ֆոնդի միջոցների պակասը լրացնելու, բնական աղետներից առաջացած վնասները և սեփական շրջանառու միջոցների ճեղքվածքը ծածկելու համար՝ վարկի մարումը կատարելով ապահովագրական ֆոնդի միջոցների հաշվին. այդպիսիները չլինելու դեպքում՝ բյուջեի հաշվին։ Բյուջեի օգնությամբ այդ միջոցառումների կիրառումը լրացուցիչ միջոցներ չի պահանջելու, քանի որ, առանց այդ էլ, որպես կանոն, բյուջեի հաշվին է ծածկվում սովխոզների շրջանառու միջոցների ճեղքվածքը։*

*Ցածր շահութաբեր և վնասով աշխատող սովխոզները, գործող կանոնադրության համաձայն, փաստորեն զրկված են աշխատողներին նյութապես խրախուսելու հնարավորությունից։ 1970 թ. սովխոզների 48 տոկոսը նյութական խրախուսման ֆոնդերում միջոցներ չի ունեցել, որպիսի հանգամանքը բացասաբար է անդրադարձել արտադրության արդյունավետության բարձրացման վրա։*

*Ծախսերը տնտեսելու և վնասները կրճատելու գործում սովխոզների աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով՝ գտնում ենք նպատակահարմար, վնասաբեր սովխոզներում պլանային վնասների պակասեցման միջոցով, վերջին երեք տարվա միջինի չափով գոյացած գումարների հաշվին ստեղծել նյութական խրախուսման ֆոնդ, այդ գումարների 15 տոկոսի չափով, բայց ոչ ավել աշխատավարձի տարեկան պլանային ֆոնդի 12 տոկոսից, սոց-կուլտմիջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդ՝ 10 տոկոսի չափով։ Բացի այդ, սովխոզների օգուտների ազատ մնացորդը վերցնելու հաշվին ստեղծել տնտեսական խթանման կենտրոնացված ֆոնդ՝ վերցրած ազատ օգուտների 10 տոկոսի չափով։ Ֆոնդը օգտագործել վնասաբեր և ցածր շահութաբեր առանձին սովխոզներին օգնելու և նրանց նույնանման ֆոնդերը համալրելու համար։*



*Սովխոզների տնտեսական ինքնուրույնությունը ընդլայնելու նպատակով տնտեսապես նպատակահարմար է թույլատրել նրանց՝ որոշելու այն բարձր որակավորում ունեցող աշխատողների ցուցակը, որոնց պաշտոնային (հաշվարկային) դրույքները բարձրացվելու է մինչև 30 տոկոսի չափով և այդ նպատակի համար օգտագործել ձեռնարկության աշխատավարձի տարեկան պլանային ֆոնդի մինչև մեկ տոկոսը, գոյություն ունեցող 0,3 տոկոսի փոխարեն։*

*Գյուղատնտեսական արտադրական ձեռնարկությունների շահագրգռվածությունը բարձրացնելու համար՝ նպատակահարմար է շուկայում իրացված մթերքները մտցնել պետությանը մթերքներ վաճառելու պլանի կատարման մեջ։*

*Կարծում ենք, որ արվող առաջարկությունների կիրառումը դրականորեն կնպաստի սովխոզային արտադրության հետագա զարգացման, նրա արդյունավետության բարձրացման վրա, նպաստավոր պայմաններ կստեղծի բոլոր սովխոզների, այդ թվում նաև վնասաբեր և ցածր շահութաբեր սովխոզների համար լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրելու համար։*

*Հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային կուսակցական, սովետական կազմակերպությունները և գյուղատնտեսական օրգանները, ինչպես նաև գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտը մեծ անելիքներ ունեն բոլոր սովխոզները և գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունները նախապատրաստելու և լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրելու գործում։*

*Ելնելով յուրաքանչյուր ձեռնարկության շահութաբերությունից, տնտեսական-արտադրական առանձնահատուկ պայմաններից և հնարավորություններից, ըստ տարիների պետք է որոշել պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին փոխադրվող տնտեսությունների քանակը և հետևողական աշխատանք կատարել այդ խնդիրը հաջողությամբ լուծելու համար։*

Ա. Գ. ՄԱՐԴՈՅԱՆ
ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության
կոլտնտեսությունների և սովխոզների գործերի
գլխավոր վարչության պետ

---

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդման մեջ ասված է, որ անցած կիսամյակում ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ ԷՐ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԱ-ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՏԵԽՆԻԿԱՅՈՎ։ Գյուղատնտեսությանը մատակարարվել են 152 հազար տրակտոր (ֆիզիկական միավոր), այդ թվում 59 հազար հերկող տրակտոր, 83 հազար բեռնատար և մասնագիտացված ավտոմեքենա, 46 հազար հացահատիկային կոմբայն, 4,9 ճակնդեղահավաք, 19 հազար սիլոսահավաք, 3,1 հազար եգիպտացորեն հավաքող և 4,8 հազար կարտոֆիլահավաք կոմբայն, 3,3 հազար չանարի մեքենա, 26 հազար շարահնձիչ, 105 հազար տրակտորային գութան, 13 հազար երեսլար գութան, 95 հազար կուլտիվատոր, 79 հազար ցանիչ, 75 հազար հնձիչ, 36 հազար տրակտորի փոցխ, հանքային պարարտանյութեր շաղ տվող 24 հազար մեքենա, օրգանական պարարտանյութեր շաղ տվող 30 հազար մեքենա, 8,7 հազար հերբիցիդասրսկիչ ... 

# Գիտության աշխարհում

Ստորև հրապարակում ենք ամերիկյան ֆիզիկոս, քիմիայի պրոֆեսոր, հումանիտար գիտությունների դոկտոր, աշխարհի մի շարք ակադեմիաների և գիտական ընկերությունների անդամ, ատոմային էներգիայի գծով ԱՄՆ հանձնաժողովի նախագահ, Նոբելյան մրցանակի դափնեկիր, ՍՍՀՄ ԳԱ պատվավոր ակադեմիկոս՝ Հլեն Թեոդոր Սիբորգի ուշագրավ հոդվածը, որ զետեղված է ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՊԱԳԱՆ միջազգային տարեգրքի 1970 թ. երրորդ պրակում:

## ՈՒՐ Է ՏԱՆՈՒՄ ՄԵԶ ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ

Մարդը, հավանաբար, իր պատմության, իր զարգացման արդի փուլին հասավ, երբ նրա ստեղծած տեխնիկան և նրա բարոյականությունը հառնեցին դեմ-հանդիման և մարդն այլևս չկարողացավ մեկուսի դիտել փաստն ու դրա կարևորությունը: Նա ունակ է տեսնելու, որ այնքան անհամատեղելի սկզբունքները, ինչպես թերմոդինամիկայի երկրորդ օրենքն է և ոսկե հատվածի կանոնը, հավասարապես հաշվի են առնվում նրա ապագան որոշող լուծումներ մշակելիս: Ես գտնում եմ— և կարծում, թե շատերն են այս տեսակետին— որ վերջին քսան տարում մեր կյանքը վճռականորեն գոյավորած ուժերը ո՛չ միայն ընդլայնել են մեր մտահորիզոնները, այլև հարկադրել դժվարություններով լի ուղևորություն կատարել դեպի այդ հորիզոնները: Մեր ճամփան նոր է, դժվարին: Հետևում պայքարի ու զարգացման, հաղթանակների ու նվաճումների միլիոն տարվա առաջշարժումն է: Եվ մենք ենթադրում էինք, թե շարժվում ենք զատ-զատ: Սակայն, կարծում եմ, այժմ արդեն ըմբռնել ենք, որ ամենքս միևնույն նավով ենք նավում: Ես գտնում եմ, որ դրանով մենք գիտությանն ենք պարտական: Ու մեր ապագան կախված է այն բանից, թե ինչպես կօգտվենք գիտության ընձեռած հզորությունից:

Բոլորս, անշուշտ, գիտենք, որ գիտությունը գոյություն ունի վերջին քսան տարուց շատ ավելի վաղ: Որպես մարդու մտածողության և գործողությունների կարգավորման միջոց, այն հնուց ի վեր բազում տեսանկյուններով ուղեկցում է մեզ: Փորձարարական գիտությունը— արդի գիտության հիմնաքարը— սկզբնավորվել է մի քանի դար առաջ: Գիտության ու տեխնիկայի միավորումն սկսվել է անցյալ դարում, իսկ այս հարյուրամյակի սկզբին գիտությունն ու տեխնիկան թափանցել են ինդուստրիայի ոլորտը: Բայց միայն վերջին տասնամյակում հասարակությունն ընդհանուր առմամբ իր վրա զգաց անող արագությամբ տեխնիկայի փոխարկվող գիտական տեսության ներգործությունը:

Նախքան այդ ներգործությունների ու պրոբլեմների առանձին արդյունքներին անդրադառնալը, որոնք ծագում են դրանց իսկ կապակցությամբ, ես կուզեի ընդհանուր գծերով պատմել գիտության վերջին նվաճումների և այն մասին, թե ինչպես են դրանք ընդլայնում մեր մտահորիզոնները:

Բանականությամբ օժտված մարդը, բանականություն, որը հնարավորություն է ընձեռում նրան խորհելու ու հիշելու, տպավորվելու ու մտքեր հաղորդելու, իր ստեղծագործական էվոլյուցիայով մեծ չափով պարտական է ինքն իրեն: Իր ընթացքով ու թափով այն բավականաչափ գերազանցում է մարդու բնական էվոլյուցիային. ֆիզիկապես մենք շատ չենք



տարբերվում քարե դարում ապրող մեր նախնիներից: Մենք ապրում ենք ժամանակի, ջերմության և քիմիական հարաբերակցությունների նեղ տարածությունում: Մեզնից յուրաքանչյուրն ինչ-որ չափով անզոր է ու թույլ, ողջ աշխարհի հետ մենք կապված ենք միայն խիստ սահմանափակ հնարավորություններով օժտված մեր հինգ զգայարաններով: Սակայն հույժ կազմակերպված բանականությունը, որ մենք «գիտություն» ենք անվանում, և մարդկանց հույժ կազմակերպված միավորումը, որ մենք «հասարակություն» ենք անվանում, թույլ են տալիս մեզ ընդլայնելու մեր զգայությունների սահմանները և արտասովոր չափերով բազմապատկելու մեր էներգիան: Մենք կարողացել ենք շատ բան իմանալ մեր և շրջապատող աշխարհի մասին, սովորել ենք հարմարվել շրջապատող միջավայրի այնպիսի պայմանների, որոնք աննպաստ են ո՛չ միայն մարդու, այլև որևէ կյանքի գոյության համար ընդհանրապես:

Տեսողության զգայությունը շրջապատող աշխարհի տեղեկությունների մեր գլխավոր հայթայթիչն է եղել միշտ: Եվ, համենայն դեպս, որքան էլ զարմանալի են տեսողության մեր օրգանները— աչքերը, նրանք տալիս են մեզ անմիջաբար շրջապատող աշխարհի խիստ սահմանափակ պատկերը: Այսօր, շնորհիվ գիտական նորույթների, որոնք մշակվել կամ կատարելագործվել են հիմնականում վերջին քսան տարիների ընթացքում, մենք այնքան ենք ընդլայնել մեր տեսողության հնարավորությունների սահմանները, որ «տեսողություն» հասկացությունն արդեն նոր սահմանման կարիք ունի: Մենք ի վիճակի ենք այժմ անուղղակի վկաները լինելու մոլորակի մակերեսի ցանկացած մասում կատարվող գրեթե բոլոր իրադարձությունների: Մենք կարող ենք «տեսնել» շատ ավելի հեռավոր աստղեր, քան նրանք, որոնք մեր կարծիքով, տիեզերքի «արտաքին սահմանում» էին գտնվում: Մենք հնարավորություն ունենք լուսանկարելու միլիոնավոր լուսային տարիներ առաջ տեղի ունեցած տիեզերական անցքերը: Մենք ի վիճակի ենք պարզորոշ պատկերացնելու ատոմի կառուցվածքը և հսկելու դրա քայքայվող մասնիկների ուղին, թեև դրանց կյանքի տևողությունը միլիարդերորդական վայրկյանից էլ պակաս է: Մենք կարող ենք դիտել կյանքի միկրոաշխարհը և նշմարել այնպիսի ինքնաբազմացող պարզ օբյեկտների մանրամասն կազմությունը, ինչպես վիրուսներն են, թեև դրանցից մի քանիսն այնքան փոքր են, որ մի ամբողջ տրիլիոն կարող է հարմարավետ տեղավորվել գնդասեղի գնդիկի վրա: Մեր տեսադաշտի հնարավորությունների այդչափ ընդլայնումը թույլ է տալիս մեզ մանրազնին ուսումնասիրելու մեր սեփական կենդանի բջիջների կառուցվածքը և ժառանգականության քիմիական հիմունքները:

Մեր լսողության զգայության հնարավորության սահմանները նույնպես հսկայական չափերով մեծացրել է տեխնիկան. այն մեզ հասկանալի հնչյունները փոխարկում է էներգիայի այլազան ձևերի, փոխադրում դրանք մեզ համար վիթխարի տարածություններ, այնուհետև կրկին վերածում մեզ ծանոթ զուգորդումների ու ալիքների երկայնության, որոնք ունակ են ընկալելու մեր լսողական նյարդերը: Մոլորակի միմյանցից հեռավոր այնպիսի վայրերից, ինչպես՝ Գրին Բենկն է (Արևմտյան Վիրգինիա), Ջոդրել Բենկը (Անգլիա), Ղրիմի Պ. Ն. Լեբեդևի անվան ֆիզիկայի ինստիտուտի աստղադիտարանը, մեր հսկա «ականջները»՝ ռադիոաստղադիտակներն ենք ուղարկել ամենահեռավոր գալակտիկաներն ու ընդունում ենք դրանց սահմաններից դուրս և հեռավոր աշխարհներից մեզ հասնող ազդանշանները: Մենք ականջ ենք դնում դրանց, հուսալով՝ հայտնաբերել հնչյունների այնպիսի զուգակցումներ, որոնք վկայեին հաղորդակցության ձգտող բանական կյանքի գոյությունը տիեզերքի հեռավոր ծայրերից որևէ մեկում: Մենք «լսում» ենք «շարքային» երկրաշարժերի ձայները երկրագնդի որ կետում էլ դրանք լինեն, կարողանում ենք որոշել դրանց ինտենսիվությունը և հաճախ, նույնիսկ, տեղանքի ճիշտ դիրքը: Մենք լսում (և տեսնում) ենք ծովի անհունները: Դրա շնորհիվ մենք ո՛չ միայն սովորել ենք հայտնաբերել գրեթե բոլորովին լուսազուրկ այդ աշխարհի շնչավորն ու անշունչ օբյեկտները, այլև պարզել, որ օվկիանոսային անհունների խավարը լռակյաց մի աշխարհ չէ, որ ձկների և մյուս բնակիչների ձայները, հիրավի, դարձնում են այն կռռոցով ու ճռռոցով լեցուն հնչյունների ջունգլիները:

Բարեբախտաբար, մենք ստեղծել ենք նոր զգայություններ, ինչպես և հավասարապես ընդլայնել մեր բնատուր զգայությունների հնարավորության սահմանները: Մենք չունենք զգայությունների բնական օրգաններ՝ ունակ ընկալելու մագնիսական դաշտերը կամ ճառագայթման լայնածավալ դիապազոնը, ինչպես և սպեկտրների սահմանափակ տեղամասերը, որոնք համապատասխանում են տեսանելի լույսին, ջերմությանը, լսելի ձայնին: Եվ, այնուամենայնիվ, լաբորատորիայում թե ուղեծրում, Երկրի թե Արեգակի շուրջը, մենք կարողանում ենք հայտնաբերել նվազագույն ճառագայթման գրեթե բոլոր ձևերը:

Բայց որքան էլ կատարյալ լինեն մեր բնատուր զգայությունների այդ լրացումները, դրանք ոչինչ չէին տա մարդուն, եթե նա օժտըված չլիներ հիշելու, տպավորվելու և իր տպավորությունները ու մտքերը հաղորդելու ունակությամբ, որոնք նա ձևավորում է, ելնելով այդ իսկ տպավորություններից: Միայն հիշողությունն ու շփումն են հնարավորություն ընձեռում մարդկությանը՝ զարգացնելու իր կոլեկտիվ բանականությունը. միայն հիշողությունն ու շփումն են հնարավորություն ընձեռում մարդուն օգտագործելու իր զգայական օրգանների կուտակած տպավորությունները: Ուստի, մեզ համար մեծ երջանկություն է, որ գիտելիքներ ձեռք բերելու մեր կարողությունները ընդարձակող գիտական հեղափոխությունը պարգևեց մեզ նաև էլեկտրոնային սարքեր՝ հսկայական չափերի հասնող նոր տեղեկությունների մշակման, տեսակավորման, պահպանման, ըստ պահանջի հանձնելու, բազում տվյալներ պահանջող խնդիրների լուծման համար: Եթե չլինեին այդ սարքերը, ապա ինչպե՞ս կկարողանայինք հաղթահարել վիթխարի չափերով ավելացող ինֆորմացիայի հոսանքը. չէ՞ որ ամեն տարի, եթե վերցնենք միայն գիտությունը, ավելի քան 60 լեզուներով 100.000 ամսագիր է լույս ընծայվում և, այդ թիվը, յուրաքանչյուր տասնհինգ տարին մեկ, կրկնապատկվում է:

Եթե վերջին քսան տարիները տեխնիկայի վիթխարի ծավալման շնորհիվ դարձել են մարդու՝ իր զգայական օրգանների և կոլեկտիվ բանականության հնարավորության սահմանների կատարելագործման վկաները, ապա, անտարակույս, այդ տարիները եղել են նաև, թեև հավանաբար պակաս չափով, մարդու իսկ էական կատարելագործման վկաները: Կենսապրոցեսները և մեր մեջ ու շրջապատող միջավայրում գործող բիոլոգիական բազում ուժերն ըմբռնելու հաջողությունները հնարավորություն են ընձեռում ավելացնելու կյանքի միջին տևողությունը, նվազեցնելու հիվանդությունների և տառապանքների բեռը, երկար ապրելու և սակավ հիվանդանալու: Բայց այդ կարևոր առաջընթացը, որի համար մենք երախտավոր ենք, կարող է մոտ ապագայում պակաս նշանակալից թվալ այն ամենի հանդեպ, ինչ սպասվում է: Նոր, ես կասեի, հուզող փոփոխությունների հեռանկարներ են ուրվագծվում հենց մարդու մեջ, ընդ որում, դրանցից մի քանիսը կարող են տեղի ունենալ ոչ հեռավոր ապագայում: Դրանք, հավանաբար արգասիքը կլինեն միմյանցից հեռու մի շարք բնագավառների— օրգանիզմի քիմիայի, ուղեղի և նյարդային համակարգի էլեկտրաքիմիական բնույթի, մեր ծագումնաբանական կառուցվածքի վերաբերյալ նոր գիտելիքների, ինչպես և ինժեներ-քիմիկոսների, վիրաբույժների, էլեկտրոնիկայի և բիոքիմիայի բնագավառի մասնագետների հաջողությունների:

Հարյուրամյակների ընթացքում մարդը փոխել է իրեն այնպիսի պարզ սարքերի օգնությամբ, ինչպիսիք են՝ վերջավորությունների պրոթեզները, լսողական ապարատները և նույնիսկ արհեստական ատամները: Այժմ մենք սկսում ենք մտածել ու գործել, նախատեսելով ներքին ձևափոխություններ, ներքին օրգանների մասերի, ապա նաև ամբողջ օրգանների փոխարինումը մարդու իսկ ստեղծած արհեստական փոխարինիչներով: Սովորական է դարձել զարկերակը դակրոնե խողովակով փոխարինելը: Այսօր արդեն մարդու կյանքն են փրկում այնպիսի ներքին սարքեր, ինչպիսիք են՝ «արհեստական երիկամը», սրտի գործունեության ռիթմիկ կարգավորիչները, «սիրտ-թոքեր» մեքենաները: Մեծ ջանքեր են գործադրվում՝ ստեղծելու արհեստական երիկամներ, սրտի ռիթմի կարգավորիչներ և անգամ մեխանիկական սիրտ, որոնք հիվանդը կարողանա կրել իր վրա: Նման սարքերը, հիրավի, կդառնային մարդու մարմնի մասը: Փորձեր են արվում ուրիշ մարդկանց և նույնիսկ կենդանիների մարմնի առողջ մասերի օգնությամբ «վերանորոգելու» մարմնի ջարդված կամ հիվանդությունից վնասված մասերը: Վերջին տարիներին նշանակալի հաջողություններ են ձեռք բերվել մարդկային օրգանների փոխպատվաստման հիմունքների ու մեթոդների ստեղծման ոլորտում:

Դժվար է անդրադառնալ բիոքիմիկոսների վերջին տարիներին ձեռք բերած բոլոր խոշոր նվաճումներին: Կյանքի պրոցեսների մեր ըմբռնումն այնպիսի փուլի է հասել, որ, ինչպես վերջերս բավական լրջորեն հաստատեց ամերիկյան քիմիական ընկերության պրեզիդենտ դոկտոր Չարլզ Պրայսը, 1940 թվականին ատոմային ռումբ պատրաստելու նպատակով կառավարության մշակած ծրագրին համանման ազգային ծրագիրը, թերևս, հնարավորություն կընձեռեր մարդուն սովորել կյանք ստեղծել: Բայց, առանց դրա էլ, հավանաբար, մենք այդ նպատակին կհասնենք մինչև այս հարյուրամյակի վերջը:

Կյանքի բիոքիմիական հիմունքների մեր ըմբռնմանը զուգահեռ մեծանում է հետաքըրքրասիրությունն ուղեղի և նյարդային համակարգի հիմնական մեխանիզմների հանդեպ: Դրան համապատասխան էլ գիտելիքներ են կուտակվում: Եթե այդ բնագավառի ներկա հետազոտությունները— ներառյալ նաև քիմիական միացությունների կիրառումը՝ հիշողության և ուսուցման ունակության վրա ներգործելու նպատակով— մոտավոր պատկերացում են տալիս գալիք հնարավորությունների վերաբերյալ, ապա մենք կարող ենք վկաները դառնալ հոգեկան հիվանդությունների բուժման վճռական հաջողությունների: Մենք կարող ենք տեսնել նաև մարդու օրգանիզմում հոգեկան ու ֆիզիկական պրոցեսների վրա ներգործող քիմիական պրեպարատների մի քանի այլ հրաշալի գործադրումներ, որոնք կունենան շատ լուրջ սոցիալական հետևանքներ և դրանց գործադրման համար կպահանջվի ամենայն զգուշություն ու վերահսկողություն:

Ուղեղի գործունեության էլեկտրական բնույթը և դրա համեմատությունը հաշվողական մեքենաների հետ դարձան համեմատաբար երիտասարդ գիտության-կիբեռնետիկայի հիմքը: Կիբեռնետիկան, մի այլ նոր գիտության-բիոնիկայի հետ մեկտեղ, խորհել տվեց, թե որքան հեռուն կարող է գնալ մարդն իր բնատուր, սեփական «եսը» միացնելով իր ստեղծագործական էվոլյուցիայի մեխանիկական արգասիքներին: Հիշյալ բնագավառների գիտության նվաճումներն առիթ են տալիս մտորելու, որ ապագայում հնարավոր կլինի մեկեն ուղեղի մեջ ներարկել ինֆորմացիան կամ ստեղծել այնպիսի կիբեռնետիկական կառավարող սիստեմներ, որոնք թույլ կտան մարդուն միայն մտքի հրամաններով վարելու իրենից հեռու գտնվող մեքենաները: Մարդն ու մեքենան այդքան սերտորեն կապող վերոհիշյալ բնագավառի աշխատանքն արդեն հանգեցրել է «կիբորգ»— կիբեռնետիկական օրգանիզմ— նոր տերմինի ստեղծմանը: Մարդ-կիբորգն այսօր զգալի չափով իրական է: Այն կարևոր ներդրում է կատարում տիեզերքի նվաճման, միջուկային էներգիայի, օվկիանոսագիտության զարգացման մեր ծրագրերի իրականացման ոլորտում— այլ խոսքով, այնտեղ, ուր մարդը պետք է գործի թշնամական, կյանքի համար վտանգավոր միջավայրում: Ե՛վ ուղղակի, և՛ անուղղակի իմաստով մարդու հորիզոնները ընդլայնվել են հիմնականում շրջապատող միջավայրի նոր պայմանները թափանցելու, դրանց հարմարվելու, այնտեղ գործելու ունակության շնորհիվ: Վերջինս նա ձեռք է բերել ոչ բնական էվոլյուցիայի ընթացքում առաջացած ինչ-որ էական փոփոխություններով. այդ սապարեզում վիթխարի քայլեր կատարելու հնարավորություն ընձեռեց գիտության ու տեխնիկայի զարգացմամբ արտահայտված ստեղծագործական էվոլյուցիան:

Բազմապիսի է մեր հարմարունակությունը շրջապատող միջավայրի նոր պայմաններին: Առանձին դեպքերում մենք ստիպված ենք աշխատել վտանգավոր պայմաններում: Դրա ցայտուն օրինակն է լաբորատորիայի աշխատակցի գործը՝ միջուկային ռեակտորի առկայությամբ. ճառագայթապաշտպան զրահավոր հագուստով, նա օգտագործում է իր ձեռքի յուրաքանչյուր շարժումն ընդօրինակող մանիպուլյատորներ (ինչպես երբեմն անվանում են՝ «կախարդական ձեռքեր») խիստ մեծ ռադիոակտիվությամբ օժտված նյութերով աշխատելու համար: Ձեռքերի հույժ զգայուն մեխանիկական այդ հավելումները թույլ են տալիս մարդուն աշխատելու այնպիսի միջավայրում, ուր այլ կերպ նա չէր կարող մուտք գործել:

Երբ մենք ընկնում ենք այնպիսի միջավայր, ուր չենք կարող նորմալ գոյություն պահպանել, ապա վերցնում ենք հետներս սովորական աշխարհում մեզ շրջապատող ողջ անհրաժեշտը: Այդ արվում է, օրինակ, ակվալանգի օգնությամբ, եթե խոսքը ջրի տակ կատարվող կարճատև աշխատանքների կամ ստորջրյա որևէ ապարատի մասին է, եթե մեզ հարկավոր են ջերմություն, լույս, թթվածին, առավել շատ դյուրաշարժություն և բարձր ճնշումից պաշտպանվելու միջոց: Արդարև, ակներև է այն փաստը, որ մենք կարողացանք իջնել օվկիանոսային ամենախորը գրեթե հատակը, որոնց խորությունն ավելի քան 10 կիլոմետր է: Եվ, այնուամենայնիվ, մենք դեռ նոր ենք սկսում «ներքին տիեզերքի» տարածությունների լուրջ հետազոտությունները:

Հարկ չկա հանգամանալի անդրադառնալու այն աշխատանքներին, որոնք ձեռնարկվում են տիեզերական տարածությունները մեր առջև բացող հորիզոնների ուսումնասիրման համար, այն հաջողություններին, որոնց մենք հասել ենք այդ ճանապարհին: Վերջին տարիներս ողջ աշխարհի ուշադրությունը մեծ մասամբ սևեռվել է մարդու բաց տիեզերք դուրս գալու վրա: Եվ այնտեղ ուղևորվելիս մարդն իր վրա է կրում երկրում իրեն շրջապատող միջավայրը: Նա պետք է փոխադրի դա մեծ տարածություններ, եթե ցանկանում է թափանցել տիեզերքի հեռավոր խորքերը կամ մանրակրկիտ հետազոտել այն հսկայական տարածությունները, որոնք պատրաստվում է ուսումնասիրել և, հավանաբար, բնակելի դարձնել:

Տիեզերական տարածությունների յուրացման մեր ծրագրում, թերևս, առավել ուշագրավն այն է, որ հարազատ մոլորակից դուրս

գալու մարդու ձգտման իրականացումը պահանջում է գիտության՝ նրան հայտնի գրեթե բոլոր բնագավառների ուժերի լարում: Այդ, թերևս, քչերն են ըմբռնում: Մինչդեռ, հազիվ թե մենք հանդիպենք մարդկային գիտության կամ տեխնիկայի այնպիսի բնագավառի, որն առնչություն չունենար մարդուն Լուսին, իսկ ապագայում նաև այլ մոլորակներ տեղափոխելու հետ: Առանց էներգիայի դերի քննարկման լիարժեք չէր լինի մեր այս տեսությունն այն մասին, թե գիտությունն ու տեխնիկան ինչպես են ընդլայնել մեր հորիզոնները: Չէ՛ որ հենց էներգիայի ստացումը, դրա փոխարկումը և կառավարումը թույլ տվին մարդուն իրականացնելու այն ամենը, ինչի շուրջ խոսվեց վերը: Եվ մեր իսկ փոխառնչություններն էներգիայի հետ— ինչպես ենք օգտագործում և ինչի վերածում այն— մեր առջև բացում են վիթխարի հեռանկարներ և առաջադրում խիստ բարդ պրոբլեմներ:

Երբ մարդը հայտնագործեց, որ ատոմային միջուկի ճեղքումից արտազատվում է հսկայական չափերի էներգիա, պարզ դարձավ, որ որոշ (համեմատաբար կարճ) ժամանակ անց մեր տրամադրության տակ բավականաչափ էներգիա և տեխնիկական միջոցներ կլինեն երկրագնդի քաղաքակրթությունը կամ ամբողջովին ոչնչացնելու, կամ աննախընթաց բարձունքների հասցնելու համար: Բայց ատոմի էներգիան ուշագրավ է ո՛չ միայն իր բացարձակ հզորությամբ: Միջուկային էներգիայի օգտագործման բազմապիսի հնարավորությունները, եթե նկատի առնենք և՛ միջուկների տրոհումը, և՛ ճառագայթումը, մեր առջև բացում են էներգետիկ նոր հնարավորություններ: Միջուկային գիտությունն ու տեխնիկան թույլ կտան մեզ (պլուտոնիում արհեստական տարրի և ուրանի արհեստական իզոտոպի միջոցով) բնական տարրերի— ուրանի և թորիումի— մեջ պարփակված գրեթե ողջ էներգիան փոխարկելու օգտակար էներգիայի՝ գործնականում անսպառ աղբյուրի: Եվ մենք կկարողանանք այդ իրականացնել հենց այն ժամանակ, երբ մեր քաղաքակրթության արագ աճող պահանջներն էներգիայի նոր աղբյուրների անհրաժեշտություն հարուցեն:

Ինչպե՞ս կներգործի միջուկային էժան էներգիայի առատությունը մեր քաղաքակրթության վրա: Եկեք մտովի տեղափոխվենք գալիքը— 50—100 տարով առաջ անցնենք: Պատկերացրեք, այդ ժամանակ մենք կունենանք վիթխարի էլեկտրակայաններ, որոնք օգտագործում են միջուկների տրոհման, գուցե և սինթեզման էներգիան: Դրանք կարտադրեն այժմվանից բազում անգամ էժան էլեկտրաէներգիա, խիստ էժան էներգիայի՝ իբրև էլեկտրականության կամ տեխնոլոգիական ջերմության տեսակի, մեծ չափերով օգտագործումը կփոխի մեր հարաբերակցությունը շատ նյութերի նկատմամբ: Դա թույլ կտա առավել արդյունավետ աղազերծելու ծովաջուրը, թորելու հոսող ջուրը և ստացված մաքուր ջուրը կրկին օգտագործելու քաղաքներին ու գյուղատնտեսությանը մատակարարելու համար: Դա հնարավորություն կընձեռի տնտեսապես արդյունավետ շահագործելու սակավ օգտակար հանածոներ պարունակող հանքերը, որոնք մենք ստիպված ենք մշակել անհրաժեշտ շատ նյութեր ստանալու համար: Դա կթույլատրի ամբողջովին օգտագործելու արտադրաթափուկները, այնպես, որ մեր քաղաքակրթության մեջ կանհետանա «մնացուկներ» հասկացությունը: Դրա շնորհիվ մենք կկարողանանք արտադրել ամենաբազմապիսի սինթետիկ նոր նյութեր և հետաքրքրական շատ բարեփոխումներ մտցնել բնական հարստությունների գործադրման ասպարեզում:

Ինչպիսի՞ տեսք կունենա այդ ամենը: Երևակայեք, բնակավայրերից հեռու գտնվող վիթխարի արդյունաբերական կոմպլեքս, այն սպասարկող անձնակազմը սակավաթիվ է, որովհետև կոմպլեքսի շատ սարքավորումներ ավտոմատացված են: Այդպիսի կոմպլեքսի էներգետիկ սիրտը ատոմային մեծ էլեկտրակայանն է, որի կարողությունը չափվում է բազմամիլիոն կիլովատներով: Էներգետիկ այդ սրտի հետ անմիջականորեն կապված և շուրջը տեղավորված են զանազան գործարաններ: Դրանցից շատերը միմյանց հետ փոխանակում են նյութեր ու կիսաֆաբրիկատներ: Այդ գործարաններից մեկն արտաքին աշխարհից ստանում է մետաղաջարդոն և ամենայլազան թափոններ: Դրանք ենթարկվում են ավտոմատների օգնությամբ կատարվող ռենտգենյան ֆլյուորեսցենտային անալիզի և այլ հետազոտությունների: Ստացված տվյալների հիման վրա նյութերն էլեկտրալիզի և էլեկտրամագնիսային մեթոդներով մանրացվում են, տեսակավորվում, ստորաբաժանվում: Վերջնական արդյունքը— որն, ըստ էության, նոր հումք է— կրկնաօգտագործման է ուղարկվում կոմպլեքսի մյուս գործարանները, որոնք, միաժամանակ, այլ աղբյուրներից ևս հումք են ստանալու:

Ի՞նչ են արտադրելու այդ գործարանները: Դրանք մշակելու են ալյումինիում, օգտագործելով իլմենիտ, բոքսիտ և կավ: Դրանք բանեցնելու են մեծ քանակությամբ ածխաջրածներ (որոնք այլևս հարկ չկա ծախսելու որպես վառելանյութ) և արդյունաբերության ու



գյուղատնտեսության համար քլորացման մեթոդով արտադրելու են լուծիչներ, ինսեկտիցիդներ, պլաստիկ զանգվածներ և բազմաթիվ այլ նյութեր: Հողագործությանը խիստ անհրաժեշտ պարարտանյութերի համար դրանք արտադրելու են մեծ քանակությամբ ազոտ ու ֆոսֆատ: Պողպատ են ստանալու ջրածնային վերականգնման մեթոդով: Էլեկտրական մեծ վառարաններում ֆոսֆատները, սիլիկահողերը և կրաքարն ու զանազան աղեր վերածվելու են ապակու և ապակեթելիկով ամրանավորված կերամիկայի տարբեր տեսակների: Այդ գործարաններում էլեկտրոլիզի մեթոդով ստացվելու է նաև քլոր, կաուստիկ և մագնիում: Ընդ որում, մագնիումը, հավանաբար, կստացվի ծովաջրից՝ դրա աղազերծման պրոցեսում՝ միջուկային երկնպատակ ռեակտորի օգնությամբ: Ռեակտորներից կարող են օգտվել նաև մյուս գործարանները, բոլորովին նոր, շատ նյութեր-այլազան պոլիմերներ, ջերմադիմացկուն հատուկ մետաղներ, նոր ձուլվածքներ, հնարավոր է և մեծ քանակությամբ անդրուրանային տարրեր ստանալու համար: Անդրուրանային տարրերի որոշ մասը կդառնա միջուկային նոր վառելանյութ, որը կօգտագործվի զանազան սարքերում՝ տիեզերական թռչող ռեակտորներից մինչև մարդու մարմինը մտցված արհեստական սիրտը:

Ես անդրադարձա միայն որոշ արտադրանքների, որոնք կարող են պատրաստել ատոմային էլեկտրակայանների էներգիան գործադրող արդյունաբերական խոշոր կոմպլեքսները: Հարկ է ավելացնել, որ այս ամենը կըստեղծվի գրեթե անաղմուկ և առանց օդի կեղտոտման: Հաղորդակցման գետնուղիները, կոնվեերային ժապավենները և խողովակաշարերը կգան փոխարինելու խճուղային և երկաթուղային խճողված ճանապարհներին: Կանհետանան գործարանային խողովակների ցցապատնեշները, ալևս չի աղտոտվի մթնոլորտը:

Էժան էլեկտրաէներգիայի առատությունն էապես կփոխի մարդու և հասարակության հարաբերությունը— տրանսպորտը և կապը, կյանքը քաղաքում և գյուղում, աշխատանքը և ազատ ժամանակը— կարճ ասած՝ մարդու կյանքի գրեթե բոլոր պատկերացնելի սահմանները:

Եկեք խորհենք այդ փոփոխություններից մի քանիսի մասին՝ սկսելով տրանսպորտից: Երբ խոսվում է տրանսպորտի միջոցների ժամանակակից նորությունների վերաբերյալ, ապա արագության վրա է սևեռվում ողջ ուշադրությունը: Բայց անհրաժեշտ է նկատի ունենալ և այլ հանգամանքներ՝ կապված մեզ շրջապատող աշխարհին և հենց մեզ հասցվող վնասների հետ— ծուխը, աղմուկը, քաղաքների գերբնակեցվածությունը, ինչպես նաև այդ միջոցների անվտանգ ու հարմարավետ օգտագործման, վերջապես, այն հանույքների հետ, որ դրանք պետք է պատճառեն մարդուն:

Քննարկենք այդ հանգամանքներից մի քանիսը: Վերջերս սկսել են որոշ ուշադրություն նվիրել էլեկտրամոբիլի ստեղծմանը: Էլեկտրամոտորով այդպիսի ավտոմոբիլը, ըստ էության, քաղաքի և կարճ ճամփորդությունների համար լավագույնը կլիներ: Այն աղմկոտ չի լինի, դրա շարժիչը արտաժայթքող գազերով չի աղտոտի օդը, հնարավոր կլինի առանց դժվարության ակումուլյատորները լիցքավորել սպասարկման կայաններում կամ հենց գարաժում ու կանգառներում, դրանք ցանցին միացնել, օգտագործելով հասարակությանը միջուկային ռեակտորների մատակարարած էլեկտրաէներգիան: Կարելի է ավտոմատացնել ակումուլյատորների լիցքավորման պրոցեսը, որպեսզի այն կատարվի վաղ առավոտյան, նախքան էներգիայի պահանջի «պիկի» ժամերը: Նման ավտոմեքենաները հեռավոր ճամփորդությունների համար օգտագործելիս, բարձր արագության էլեկտրագնացները կկատարեն յուրատեսակ «լաստանավի» դեր: Դուք կարող եք ձեր ավտոմեքենան բառնալ այդպիսի «լաստանավի» և ճանապարհին հարմարավետ վագոնում հանգստանալ: Բայց, գուցե, երկաթուղիները կկարողանան վարձակալության տալ այնպիսի էլեկտրամոբիլներ, որ հնարավոր լինի դրանցից օգտվել ցանկացած կայարանում:

Անկասկած, կան մարդիկ, որոնք ապագա ցամաքային տրանսպորտը բոլորովին այլ կերպ են պատկերացնում, գտնելով, թե օդաբարձավոր ապարատները լիովին դուրս կմղեն անվավոր փոխադրամիջոցները: Հետաքրքրական կլիներ մի հայացք գցել ցամաքային տրանսպորտի ձևափոխմանը՝ էներգետիկ վիթխարի ռեսուրսներ ունեցող հասարակարգում:

Ինչ վերաբերում է ծովերին ու օվկիանոսներին, կարծում եմ, այնտեղ կգերիշխի միջուկային էներգիան և ո՛չ միայն իբրև փոխադրաէներգիայի աղբյուր: Հեռու չէ այն օրը, երբ ատոմը կհեղաշրջի մեր փոխհարաբերությունները օվկիանոսի հետ: Միջուկային էներգիան կօգնի հետազոտելու և ճանաչելու այդ լայնարձակ ու քիչ ուսումնասիրված տարածությունները, կծառայեցնի դրանք մարդուն: Գալիք հարյուրամյակներում, գուցե և ավելի շուտ, մեզնից շատերի համար ծովը

նույնպիսի տուն կլինի, ինչպես ցամաքը: Մարդիկ կաշխատեն դրա մակերևույթին և խորքերում, այնտեղից կստանան նյութական բարիքներ ու հանույք: Օվկիանոսում տեղակայված ատոմային էլեկտրակայանները կպնդեն և կվերամշակեն նրա հանքային հարստությունները, իսկ ատոմաշարժիչներով նավերն այնտեղից սնունդ կքաղեն: Ու, թերևս, մայրցամաքային շելֆի առափնյա ծանծաղուտները կդառնան մեր ժամանցի սիրված վայրերը: Ատոմաշարժիչների լայն կիրառումը նավատորմում կարող է արմատապես փոխել օվկիանոսներով միջցամաքային բեռնափոխադրանքը: Ես նկատի ունեմ ո՛չ միայն այն, որ ատոմաշարժիչի սարքերով նավերը լավագույնը կլինեն և կբարձրանա դրանց բեռնատարողությունը: Հիմնովին կբարեփոխվեն օվկիանոսներով փոխադրման ու բեռնաբարձման մեթոդները: Հավանաբար, ապագայում կտեսնենք, թե ինչպես ապրանքագնացքը կընտտենա ուղղակի դոկին, ուր կսպասի ատոմանավը՝ առևտրանավատորմի բեռն ընդունելու: Բազմազան արկղներ ու հակեր բարձելու փոխարեն ավտոմատ մեծ ամբարձիչները անիվների վրայից կբարձրացնեն հսկա բեռնարկղները (ըստ էության վագոնները) և կողք-կողքի կտեղավորեն նավամբարներում: Ապա բեռնարկղներով լի նավը կկտրի կանցնի օվկիանոսը, արագ կբեռնաթափվի և նավակալի վրա կառնի ետդարձի բեռը: Բեռնավերամշակման նման միջոցն արդեն իրական է դառնում ժամանակակից որոշ նավերի համար: Ատոմաշարժիչ սարքեր ունեցող բարձրավտոմատացված նավում խիստ փոքրաթիվ անձնակազմ է հարկավոր, իսկ վառելիքի պաշարի պակասը կլրացվի մի քանի տարին մեկ անգամ. ռեակտորի ժամկետանց ակտիվ գոտին կհանվի սարքից ու դրա փոխարեն կտեղադրվի նորը:

Կապի միջոցների հեղաշրջումը, որ տեղի կունենա առատ էներգիա ունեցող հասարակարգում, հավանաբար, կնսեմացնի ապագայում կատարվելիք մյուս բոլոր փոփոխությունները: Շատերը գտնում են, որ կապի միջոցների կատարելագործմամբ խիստ կմարի ճամփորդելու ցանկությունը: Նրանք ասում են. «Եթե մարդը կարող է դիտահեռախոսով հաղորդակցվել մոլորակի գրեթե ցանկացած բնակչի հետ և, չթողնելով տան հարմարավետությունները, երկրագնդի ուզած վայրից, գրեթե, վայրկենաբար ստանալ փափագած ինֆորմացիան, ապա էլ ինչո՞ւ պետք է անհանգստացնի իրեն ճանապարհորդություններով»: Առայժմ այդ հարցին ոչ ոք չի կարող պատասխանել: Ժամանակը ցույց կտա, թե ապագայում մենք որչափ կգնահատենք անձնական սերտ հարաբերությունները և արտաքին աշխարհ դուրս գալու, նորը սեփական աչքերով տեսնելու մեր ձգտումը:

Միջուկային մեր գիտությունն ու տեխնիկան թույլ կտան մեզ ստեղծելու էներգիայի բավական կոմպակտ աղբյուրներ՝ իրականացնելու դեպի տիեզերք հետագա քայլերը— մեզ և անհրաժեշտ սարքերը հասցնելու արեգակնային համակարգության մոլորակներին: Հնարավոր կլինի այդ իրագործել միջուկաշարժիչներով հրթիռների և միջուկա-էներգետիկ օժանդակ սիստեմների օգնությամբ, որոնք այժմ մշակման փուլում են գտնվում, իսկ մի մասը՝ հաջողությամբ օգտագործվել է զանազան սարքերում:

Միջուկային էներգիան կարևորագույն դեր կխաղա դեպի արեգակնային համակարգության մոլորակները մարդու թռիչքներն իրականացնելու գործում: Միջուկաշարժիչներով հրթիռները և միջուկաէլեկտրատեխնիկ սիստեմները էական առավելություններ ունեն միջմոլորակային ուղևորությունների համեմատ: Զգողական մեծ ուժ արձակելու ունակ հզոր միջուկաշարժիչներով հրթիռները հարկավոր կլինեն՝ հաղթահարելու մոլորակների տիեզերական դաշտի ձգողականությունը: Իսկ ձգողական ոչ մեծ ուժ արձակող թեթև միջուկաէլեկտրական սիստեմները կօգտագործվեն հեռավոր տիեզերական թռիչքների ժամանակը կրճատելու համար:

Միջուկառեակտորներից էներգիա ստացող սարքերը կարող են օգտագործվել նաև կյանքն ապահովող սիստեմները և մյուս սարքերը թռիչքների ընթացքում գործի դնելու համար: Միջուկաշարժիչները կապահովեն տիեզերանավերի անվտանգ, անվնաս վայրէջքը:

Մոլորակի մակերևույթը նվաճելուց հետո միջուկային էներգիան պետք կլինի գիտական սարքավորումները, կապի ապարատները, կյանքն ապահովող սիստեմները գործի դնելու նպատակով: Էլեկտրաէներգիայի երկարատև աշխատող գեներատորներն անհրաժեշտ կլինեն լաբորատորիաներին ու աստղադիտարաններին: Դրանք պետք կգան նաև այն միջավայրի ստեղծման ու պահպանման համար, որում մարդը կկարողանա ապրել ու արդյունավետ աշխատել: Շատ կարևոր է ունենալ տրանսպորտի միջոցներ և այնպիսի ուրիշ սարքավորում, որ շարժման մեջ դրվեր միջուկային ուժասարքով զույգված գեներատորներից լիցքավորվող մարտկոցներով: Միջուկաշարժիչներով հրթիռները կարելի է օգտագործել մոլորակներից զանազան նմուշներ Երկիր բերելու համար:



Մարդը կարող է նույնիսկ բնակվել մոլորակի վրա, եթե հաջողվի զանազան նյութերի տարրալուծման միջոցով միջուկային էներգիան օգտագործել մոլորակներում արհեստական մթնոլորտ ստեղծելու համար, ուր մարդիկ ապրել կարողանան:

Էներգետիկ հեղափոխությունը վերջին մի քանի տասնամյակում արտահայտվել է ո՛չ միայն սոսկ էներգազինվածության աճով: Այն խիստ կատարելագործեց էներգիայի, ջերմության, լույսի և ճառագայթման զանազան տեսակների արտադրությունն ու կառավարումը: Այդ հեղափոխությունը կապված է արտասովոր արագությունների հետ. դրանք հանգեցրին այն բանին, որ որոշ բնագավառներում գրեթե սովորական է դարձել առաջներում չօգտագործվող ժամանակի այնպիսի չափերը, ինչպես՝ նանովայրկյանն է (վայրկյանի միլիարդերորդական մասը): Այդ հեղափոխությունն անքակտելի է տրանսպորտի և կապի միջոցներում կատարված արմատական փոփոխություններից, մարդկության կուտակած գիտելիքների ծավալի մեծացումից.

Եթե մի հայացք գցենք վերջին քանի տարիների ընթացքում մեր մտահորիզոնների ընդլայնմանը, ապա մեր ընդհանուր նվաճումները, իրոք, մեծ տպավորություն կթողնեն: Գալիքի հանդեպ որոշ խորհրդածությունների հետ մեկտեղ նման ակնարկը շատ կողմերով կարող է անգամ շփոթեցնել, իսկ շատերին ապագան նույնիսկ վախեցնում է: Բայց բուն էությունը, անշուշտ, թվերն ու փաստերը չեն: Գիտության առաջընթացը չի կարելի զատել սոցիալական առաջընթացից, ինչպես անկարելի է խոսել տեխնիկայի մասին, առանց այն մարդկային արժանիքների հետ կապակցելու: Ինչ ուղղությամբ էլ մենք ընթանալու լինենք դեպի նոր, լայնարձակ հորիզոնները, գնում ենք իբրև մարդկանց մի անբաժան ընտանիք: Արդ: ի՞նչ է խոստանում մեզ այդ ուղևորությունը: Ի՞նչ ապագա է սպասում մեզ:

Ընդլայնելով մեր հորիզոնները, գիտությունը, անկասկած, ֆիզիկապես մերձեցնում է մեզ: Ես գտնում եմ, որ նույնը կարելի է ասել և հոգեկան մերձեցման վերաբերյալ— գիտության առաջընթացն ընդլայնում է մարդկանց համագործակցությունն ու փոխըմբռնումը: Գիտությունն առաջանում է ընդհանուր ինտելեկտուալ գանձարանում, և դա խթանում է ինտերնացիոնալիզմի ամրապնդմանը: Չնայած որոշ երկրների գիտական գերազանցությանը, գիտության տաղանդները ոչ մի ազգության մենաշնորհը չեն: Հարկ չկա թափանցելու պատմության խորքերը՝ գիտության որոշակի բնագավառներում շատ երկրների գիտնականների ակնառու ներդրման օրինակ գտնելու համար: Վերջին երեք տասնամյակներում Հանի, Ֆերմիի, Ժոլիո-Կյուրիի, Կուրչատովի, Ռեզերֆորդի, Բորի, Էյնշտեյնի, Սցիլարդի, Լոուրենսի, Կոմպտոնի, Օպենհայմերի, դը Խեվեշիի և շատ ուրիշ գիտնականների, որոնց անուններն անհնար է թվարկել այստեղ, ինտերնացիոնալ խմբի ջանքերով ծնվեց միջուկային դարը:

Ժամանակակից գիտությունն այնքան դինամիկ ուժ է, որ նրա հաջողությունները և նրա գոյությունն իսկ պահանջում են բոլոր բնագավառների համագործակցության ուժեղացում: Բազմաթիվ մասնագիտացված բնագավառներում բունկումներով զարգացող, ամենաբազմապիսի աղբյուրներում կուտակվող գիտական ու տեխնիկական գիտելիքներն ինֆորմացիայի հավաքման ու դրա փոխանակման համար պահանջում են վիթխարի ջանքերի միավորում: Հանուն գիտության զարգացման կենսականորեն անհրաժեշտ է ընդլայնել ինտերնացիոնալ կապերը: Մենք միայն այժմ ենք սկսում սովորել առավել արդյունավետ տնօրինել ամեն օր բովանդակ աշխարհում գրի առնվող և հաղորդվող ինֆորմացիայի շշմեցուցիչ հոսանքը:

Համագործակցությունը մեծ դեր է խաղում գիտության համար և գիտական սարքավորումների օգտագործման ասպարեզում: Գիտական ապարատների խիստ թանկությունն անհրաժեշտ է դարձնում խոշոր սարքերի ու լաբորատորիաների համատեղ օգտագործումը: Ես կարծում եմ, որ ապագայում մենք վկաները կլինենք միջազգային բազմաթիվ սարքերի ստեղծման, ինչպիսիք ԿԵՌՆ-ում— միջուկային հետազոտությունների եվրոպական կենտրոնում օգտագործվող սարքն է: Բացի այն, որ նմանօրինակ կոոպերացիայից ինքը՝ գիտությունն է շահում, անհրաժեշտ է նկատի ունենալ նաև, որ գիտության գործնական կիրառումը, հասարակության հետ նրա փոխկապերը ևս պահանջում են միջազգային համագործակցություն: Գիտության ընդունած վճիռների արդյունքները և գիտական առաջընթացի բարօրությունն անքակտելիորեն կապված են ողջ մարդկության բարեկեցության հետ: Դրանք ներգործում են կյանքի— ծննդի, առողջության, մահվան վրա: Դրանք ներգործում են կյանքի պայմանների— սննդամթերքով ու բնակարանով ապահովելու, մարդուն շրջապատող միջավայրի վրա, դրանք ներգործում են մարդկանց միջև սերտ հարաբերությունների— կապի և տրանսպորտի միջոցների վրա, ի վերջո, դրանք ներգործում են մարդկության ընդհանուր վիճա-

կի— պատերազմի և խաղաղության վրա: Ահա ինչու, մտաբերելով գիտության խաղացած դերը, մենք խորապես շահագրգռված ենք արտասահմանի գիտնականների գործերով և գիտակցում ենք, որ պարտավոր ենք տարածել մեր երկրում ձեռք բերած օգտակար գիտելիքները:

Բնության իմացության բնագավառում գիտական հետազոտություններն այսօր դուրս են գալիս ազգային սահմաններից: Այնպիսի բնագավառների համար, ինչպիսիք են օդերևութաբանությունն ու կլիմայաբանությունը, օվկիանոսաբանությունն ու երկրաբանությունը, աստղաբաշխությունն ու տիեզերական հետազոտությունները լաբորատորիաներ պետք է հանդիսանան մոլորակի բոլոր օվկիանոսները, նրա ողջ ցամաքը, մթնոլորտը և բովանդակ աշխարհի անսահման տարածությունները: Ողջ երկրագունդն ընդգրկող գիտության այդ բնագավառներն ստեղծեցին համաշխարհային զարմանալի սերտ համագործակցություն նույնիսկ այնպիսի երկրների միջև, որոնք ունեն քաղաքական սուր տարաձայնություններ: Օդերևութաբանական ծրագրի իրականացմանը համագործակցում է ավելի քան 100 երկիր: Տիեզերական հետազոտությունների ամերիկյան ծրագրի իրականացմանը մասնակցում է ավելի քան 50 երկիր, մենք սկսում ենք անմիջականորեն համագործակցել Սովետական Միության հետ: Բացի դրանից, միջուկային էներգիայի բնագավառում մենք մեծ հաջողությամբ ինֆորմացիաներ ու մտքեր էինք փոխանակում Սովետական Միության հետ:

Ես գտնում եմ, որ այս ամենը մեզ կանգնեցնում է այն փաստի առաջ, որ մենք չենք կարող այլևս ապրել մի աշխարհում, ուր մարդկանց միայն փոքրաթիվ մասն է վայելում քսաներորդ հարյուրամյակի շնորհած կյանքի բարիքները: Յուրաքանչյուր ապրած տարի հանգեցնում է մեզ այն գիտակցությանը, որ ստեղծվել է տեխնիկական, սոցիալական, քաղաքական ու բարոյական անհրաժեշտություն— սովորել միասին հաշտ ու խաղաղ ապրել, առավել շատ հաղորդակցվել ձեռք բերած գիտելիքներով և բաժանել այդ գիտելիքների շնորհիվ ստեղծած առատությունը, մինչև, վերջապես, կգա այն ժամը, երբ բոլորը հավասարապես կկրեն աշխատանքի լուծը և բոլորը կկարողանան օգտվել այն բարիքներից, որոնցից այժմ օգտվում են մեզնից քչերը միայն: Աշխարհն արդեն բաղկացած չէ տեղական կամ ռեգիոնալ քաղաքակրթություններից, որոնք կարող են ծաղկել կամ քայքայվել ինքնին: Մեր քաղաքակրթությունն այսօր դարձել է գլոբալ և միասնական: Յուրաքանչյուր ազգի և ինչ-որ չափով ամեն մի առանձին մարդու գործունեությունն էապես ներգործում է մեր ընդհանուր ճակատագրի վրա:

Քիչ չէ այն մարդկանց թիվը, որոնք երկյուղում են գիտության ու տեխնիկայի այժմյան բուռն զարգացումից: Նրանք դրանում ապահումանիզմի վտանգ են տեսնում: Նրանք մտածում են, որ տեխնիկան դուրս է գալիս մեր հսկողությունից, և մենք նրա տիրակալը մնալու փոխարեն դառնում ենք նրա ստրուկները: Ես չեմ կարող համաձայնել նրանց մտքերի հետ: Անցյալ, ուզած դարերի մարդկանց կյանքի պայմանների և մեր ժամանակի կյանքի համեմատությունը ցույց կտա, որ մենք անհամեմատ առաջ ենք անցել: Ընդ որում, ես նկատի ունեմ ո՛չ միայն մարդկանց համար ստեղծված հարմարավետությունը, հիվանդության, սովի ու շրջապատող միջավայրի քմահաճույքների ծանր տառապանքների նվազումը: Մարդկանց ավելի ու ավելի մեծ մասն է հաղորդակցվում առավել բարձր, առավել հարուստ, իր ողջ ծավալով ինտերնացիոնալ կուլտուրային, որ ներառնում է տարբեր երկրների ու ժամանակների վիթխարի ժառանգությունը: Անցյալ օրերի արվեստը, երաժշտությունն ու գրականությունը պահպանվում, վերակենդանանում ու վերստեղծվում են՝ հարստացնելով մեզ: Այդ ամենն ամբողջացնում է կուլտուրայի մեր սեփական ավանդը, ավանդ, որն իր չափերով գերակշռում է բոլոր դարերինը: Մենք ազատ շատ ժամանակ ունենք այդ ողջ հարստությունը վայելելու: Ու եթե առերևույթ նմանության ինչ-որ սահմաններ կան, որ արդյունք են մեր մասսայական արտադրության մեթոդների, ապա այդ սահմանների ներսում գոյություն ունեն մեծ ազատություն ու անհատականություն: Այսօր մենք ընտրության ավելի մեծ ազատություն ունենք, քան մեր նախնիները: Մենք ունենք ինքնաարտահայտման առավել մեծ ազատություն: Մենք ավելի զերծ ենք տգիտությունից, սնոտիապաշտությունից, քարացած սովորույթներից, և, հետևաբար, առավել ազատ կարող ենք տնօրինել մեր ապագան, մեր ստեղծագործական էվոլյուցիան:

Ես հավատում եմ, որ մենք կարող ենք դառնալ **մեր** ճակատագրի տերն ու տնօրենը: Եվ հիմքեր չկան մտահոգվելու, որ տեխնիկայի բուռն գրոհը անակնկալի կբերի մեզ. մենք իրազեկ ենք դրան: Մենք կռահում ենք (և, ընդհանրապես, ոչ այնքան ուշ, ինչպես մեզնից շատերն են կարծում), տեխնիկայի զարգացման տեմպերը, նրա արդյունավետությունը, նրա խոր ներգործությունը: Ուստի, մենք կարող ենք կանխատեսել, ծրագրել և աշխատել ապագայի կերտման համար:

Մեզնից շատերը ծանոթ են այն լուրջ պրոբլեմներին, որոնք այսօր ծառացած են մարդկության առաջ: Դրանց մասին դուք կարդում եք թերթերում և ամսագրերում, լսում ռադիոյով, դրանց նվիրված հեռուստատեսային հաղորդումներ դիտում: Դրանք— շրջապատող միջավայրի աղտոտումը, սովը, ջրի սակավությունը, ազգաբնակչության արագ աճը, քաղաքների զարգացման հետ կապված պրոբլեմներն են: Եվ, այս ամենից զատ, այն աղետը, որից մարդկությունը դեռևս չի ազատվել— միջուկային զենքի կործանարար, մեր օրերում վիթխարի ուժով ծանրաբեռնված պատերազմի սպառնալիքը:

Եվ, այնուամենայնիվ, ես համոզված եմ, որ այդ բոլոր պրոբլեմները հնարավոր է լուծել, եթե մենք անհապաղ զբաղվենք դրանցով և համառորեն աշխատենք լուծել դրանք: Այժմ արդեն ազգային և ինտերնացիոնալ վիթխարի ջանքեր են գործադրվում այդ պրոբլեմներից յուրաքանչյուրի համար: Ինտերնացիոնալ համագործակցության ակնառու օրինակ է ատոմային էներգիայի օգտագործման նպատակով միջազգային գործակալության աշխատանքը: Այն ո՛չ միայն կարևոր ներդրում է ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման ուղիների մշակման բնագավառում, այլև առաջատար դեր է կատարում ատոմը խաղաղ պահելու, ատոմային զենքի տարածումը վերահսկելու ոլորտում: Այդ կազմակերպությունը, ուր մտնում է 97 անդամ-պետություն, հսկում և վերահսկում է միջազգային երաշխիքների սիստեմները, տեսչական ու վերահսկողական սիստեմը: Այդ սիստեմը կոչված է ապահովելու, որ խաղաղ նպատակների համար նախատեսված միջուկային նյութերը, սարքերն ու տեխնիկան չօգտագործվեն ռազմական նպատակներով: Ատոմային էներգիայի կիրառման միջազգային գործակալության այդ սիստեմն արդեն գործում է: Միջազգային այդ ծրագիրն սկսում է կենսագործվել սպառազինության սահմանափակման ասպարեզում. այն իրականացվում է Ամերիկայի Միացյալ Նահանգների և Սովետական Միության համաձայնությամբ ու հավանությամբ: Այդպիսի կազմակերպությունը, իրոք, արժանի է ամենայն գովեստի ու աջակցության:

Ես հավատում եմ, որ գիտությունն ու տեխնիկան կօգնեն մարդկությանը՝ իրականացնելու իրենց իղձերը, որոնք դարեր շարունակ լոկ երազներ են մնացել: Վերջին տասնամյակների առաջընթացն էապես ընդլայնեց մեր մտահորիզոնները. մեզ տվեց նոր գիտելիքներ և արտադրությանը՝ սքանչելի բազում նոր գործիքներ. հնարավորություն ընձեռեց տեսնելու այն բաղձալի նոր աշխարհի առկայծումները, որոնք իրականություն կդառնան, եթե հենվելով ժամանակակից նվաճումների վրա, շարունակենք առաջ ընթանալ: Ուրեմն, եկեք ձեռքներս ծալած չնստենք և արբենանք արվածով: Եկեք շարունակենք առաջ ընթանալ, գիտելիքներ կուտակենք, կիրառենք դրանք կյանքում: Եկեք լարված աշխատենք, օգտագործենք իմացության մեր նոր գործիքները, որպեսզի կարողանանք ուղղորդվել դեպի լայնատարած հորիզոնները, իրականացնել մարդկության առջև բացվող մեծ հեռանկարները:



# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



## ԳՅՈՒՂԱԿԱՆ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

*Սովետական իշխանության տարիներին ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, կենցաղային ու աշխատանքային պայմանների բարելավման, բժշկական գիտության առաջընթացի և սովետական առողջապահության կատարելագործման շնորհիվ, մեր ազգաբնակչության առողջապահության գործում ձեռք են բերվել վիթխարի հաջողություններ։ Խոսելով սովետական առողջապահության անցած դժվարին, բայց փառավոր ուղու մասին, բնավ չպետք է անտեսել գյուղական առողջապահությունը, ուր նվաճումներն ակնբախ են։*

*Սակայն, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1968 թվականի հուլիսի 5-ի՝* Առողջապահության հետագա բարելավման միջոցառումների և երկրում բժշկական գիտության զարգացման մասին *որոշման մեջ, գյուղական առողջապահության բնագավառում ձեռք բերված հաջողությունների հետ մեկտեղ, «Գյուղական ազգաբնակչությանը ցույց տրվող բուժօգնության որակը և ծավալը ետ են մնում քաղաքային ազգաբնակչությանը ցույց տրվող բուժօգնության որակից ու ծավալից»։*

*Դա ամբողջովին վերաբերում է նաև Հայկական ՍՍՀ առողջապահությանը։ Մեզ մոտ ևս ակներև են քաղաքային ու գյուղական ազգաբնակչությանը ցույց տրվող բուժօգնության տարբերությունները, որոնք, ամենից առաջ, արտահայտվում են հանրապետության գյուղական վայրերում նյութա-տեխնիկական անբավարար բազայով, բժշկական կադրերի, հատկապես, տարբեր մասնագետների պակասով, բժշկական սպասարկման համեմատաբար ցածր կուլտուրայով։ Գյուղական վայրերի առողջապահական հիմնարկությունների ինչպես հարկն է ապահովված չեն նորագույն բժշկական սարքավորումներով, ապարատներով, գործիքներով, հիվանդանոցները՝ նաև մահճակալներով։ Մեր երկրի առողջապահական օրգանների գլխավոր խնդիրն այժմ մասնագիտացված բուժօգնության կազմակերպումն է, այն գյուղական ազգաբնակչությանը մոտեցնելը։*

*ՍՍՀՄ-ում առողջապահության զարգացման ընթացքը ցույց է տալիս, որ այդ պրոբլեմը ներկայումս սովետական առողջապահության կատարելագործման տրամաբանական շարունակությունն է։ Այն հնարավոր է իրականացնել մեր ողջ հասարակության առաջընթացի, տնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունների շնորհիվ։*



*Մասնագիտացված բուժօգնությունը գյուղական ազգաբնակչությանը մոտեցնելու համար ամենից առաջ հարկ է ստեղծել առողջապահական միջոցների համապատասխան նյութատեխնիկական բազա, որն ի վիճակի լինի ապահովելու տվյալ շրջանի բնակիչներին ցույց տրվող բուժկանխարգելիչ որակյալ օգնությունը։*

*Գյուղական առողջապահության սիստեմի հիմնական օղակը շրջանային հիվանդանոցն է։ Փորձը ցույց է տվել, որ շրջկենտրոնի ժամանակակից հիվանդանոցը պետք է լինի խոշոր, բազմապրոֆիլ, նորագույն սարքավորումներով հագեցած։ Այդ դեպքում այն կլինի ո՛չ միայն բուժական հիմնարկ, այլև բժիշկների կատարելագործման բազա։ Այժմ Հայկական ՍՍՀ-ի շատ շրջաններում արդեն կան նման հիվանդանոցներ, մյուսներում էլ ստեղծվում են։ Իսկ ինչպիսի՞ն պետք է լինեն տեղամասային մանր հիվանդանոցները։ Այդ հարցը լուծելիս պետք է հաշվի առնել ազգաբնակչության թիվը, նրա առողջական վիճակը, աշխարհագրական պայմանները։ Ըստ երևույթին, անհրաժեշտ կլինի նաև պահպանել որոշ փոքր հիվանդանոցներ։ Դա վերաբերում է հատկապես այն ստացիոնարներին, որոնք գտնվում են շրջկենտրոնից տասնյակ կիլոմետր հեռու կամ տեղավորված են դժվարամատչելի վայրերում։*

*Նպատակահարմար է շրջկենտրոնին մոտ գտնվող խոշոր (25 և ավելի մահճակալանոց) հիվանդանոցները վերածել մասնագիտացված բժշկական հաստատությունների կամ դարձնել շրջանային ստացիոնարների բաժանմունքներ։ Հարմար կլիներ շրջկենտրոնին մոտ գտնվող բազմաթիվ փոքր հիվանդանոցները (մինչև 25 մահճակալանոց) վերածել գյուղական բուժական ամբուլատորիաների՝ պահպանելով ծննդաբերական բաժանմունքները։ Այդտեղ տեղամասային բժիշկն ազատ կլինի ստացիոնարի հետ կապված տնտեսական բազում հոգսերից և ուշադրությունը հիմնականում կբևեռի պոլիկլինիկայի աշխատանքների, ինչպես նաև սանիտարա-համաճարակային ծառայության վրա։ Կարող են հարցնել՝ կարիք կա՞ ընդհանրապես փակելու փոքր տեղամասային հիվանդանոցների մեծ մասը։ Կարծում ենք, ժամանակն է այդ անելու և ահա թե ինչու։ Վերլուծելով հանրապետության գյուղական շրջանների ազգաբնակչությանն սպասարկող հիվանդանոցային հիմնարկությունների գործունեությունը, տեսանք, որ բազմաթիվ փոքր հիվանդանոցներում մահճակալները տարիներով օգտագործվում են ոչ լրիվ։ Դրա հետ միասին այնտեղ ցածր է բուժսպասարկման կուլտուրան, անհրաժեշտ պայմաններ չկան ախտորոշման և հիվանդների բուժման համար։ Բացի այդ, յուրաքանչյուր մահճակալի համար այստեղ ծախսվում են ավելի շատ միջոցներ, քան խոշոր, բազմապրոֆիլ հիվանդանոցներում։*

*Ի՞նչ է ստացվում. պետությունը տեղամասային հիվանդանոցներին հատկացնում է բավականաչափ միջոցներ, դրանց համար ստեղծում նյութատեխնիկական բազա, այնտեղ կադրեր է ուղարկում, իսկ ցանկալի արդյունք չկա և, որ կարևորն է, իրենք՝ գյուղի բնակիչները, գոհ չեն փոքր ստացիոնարների գործունեությունից։ Դրանով է բացատրվում հանրապետական, քաղաքային կամ շրջանային հիվանդանոցում բուժվելու նրանց ձգտումը՝ հիվանդությունն ախտորոշելու կամ բուժելու նպատակով։*

*Ժամանակին փոքր հիվանդանոցները կարևոր դեր են խաղացել գյուղական ազգաբնակչության ստացիոնար բուժօգնությունը կազմակերպելու գործում։ Բայց այժմ, բժշկության առաջընթացի, տրանսպորտի և հաղորդակցման*

ուղիների զարգացման պայմաններում, դրանք չեն նպաստում գյուղական առողջապահության վերելքին։

Ազգաբնակչության բուժսպասարկումը բարելավելու նպատակով մասնագիտացված բուժօգնություն կազմակերպելու, այն բնակչությանը մոտեցնելու համար՝ հանրապետության առողջապահության մինիստրությունը ձեռնարկել է շրջանային բազմապրոֆիլ հիվանդանոցների ստեղծմանը, դրանց ամրապնդմանը։ Բնավ չթերագնահատելով նման ձեռնարկի նշանակությունը՝ մտածում ենք. հնարավոր ու նպատակահարմա՞ր է արդյոք մոտակա տարիներին այն կիրառել ողջ հանրապետության մասշտաբով. ուրիշ ի՞նչ կարելի է անել նշված պրոբլեմի արագ ու ճիշտ լուծման համար։

Ահա թե ինչու գտնում ենք, որ ներկայումս չի կարելի բոլոր հարցերը, ինչպես և բարձրորակ բուժօգնության իրականացումը, կապել հիմնականում մայրաքաղաքի հետ և, դրանից ելնելով, ամեն մի նոր բան այդ բնագավառում ստեղծել միևնույն տեղում՝ Երևանում։

Մեր ընդհանուր առողջապահության զարգացման հեռանկարային պլանում պետք է նախատեսել, որ բացի մայրաքաղաքից, աստիճանաբար բժշկական ծառայության նոր խոշոր կենտրոններ ստեղծվեն և այլ վայրերում՝ պահպանելով տերիտորիալության ու մատչելիության սկզբունքը։ Դրա համար անհրաժեշտ է հանրապետության՝ միմյանց մոտ գտնվող, բնական և պատմաարադիցիոն ընդհանրությամբ օժտված մի շարք շրջաններում ստեղծել բժշկասանիտարական գոտիներ։ Առողջապահության կազմակերպման սիստեմի այդ նոր օղակը բժշկասանիտարական տվյալ գոտում ծառայության շառավղի մեջ մտնող շրջանների ու բժշկական հիմնարկների համար կարող է դառնալ կազմակերպամեթոդական և բժշկակոնսուլտատիվ կենտրոն։

Բժշկասանիտարական յուրաքանչյուր գոտի պետք է ունենա՝ 1. Նյութատեխնիկական հզոր բազա— խոշոր, բազմապրոֆիլ հիվանդանոց՝ 500—600 մահճակալով և որակյալ կադրերով։ 2. Այստեղ պետք է գործի զոնալ (կամ համարային) կոնսուլտատիվ պոլիկլինիկա՝ բոլոր կաբինետներով ու ախտորոշման լաբորատորիաներով։ Պոլիկլինիկայի գլխավոր խնդիրներից մեկը կլինի պարբերաբար մասնագետներ ուղարկել տարբեր բնակավայրերը կոնսուլտացիաներ անցկացնելու, բուժօգնություն կազմակերպելու նպատակով։ Սանիտարական ավիացիայի, նորագույն սարքավորումներով հագեցած շտապ բուժօգնության օպերատիվ բաժանմունքը պետք է կազմի կարևոր օղակ բժշկասանիտարական գոտու կառուցվածքում և ցույց տա այդպիսի հիմնարկի գոյության արդյունավետությունը։ Կազմակերպա-մեթոդական ծավալուն գործունեության համար զոնալ հիվանդանոցներին կից պետք է գործեն կազմակերպված մեթոդկաբինետներ։ Բազմապրոֆիլ հիվանդանոցի բազայի վրա կարելի է ստեղծել ուսումնական հիմնարկ միջին բուժաշխատողների համար և գործնական պարապմունքներ անցկացնել բարձր կուրսերի բժիշկ-ուսանողների հետ։ Բացի նշվածներից, բժշկասանիտարական գոտիների կենտրոններում պետք է գործի սանիտարական տրանսպորտի կենտրոնացված ավտոբազա՝ տարբեր արհեստանոցներով, դեղատնային վարչության զոնալ պահեստով, բուժսանտեխնիկայի մեծ խանութով։ Հասկանալի է, որ, պահպանելով այդպիսի գոտիների ստեղծման աշխարհագրական սկզբունքը, դրանք ամենից առաջ պետք է կազմակերպվեն այնտեղ, որտեղ արդեն նման աշխատանքի ծավալման համար գոյություն ունեն համեմատաբար լավ պայմաններ։ Այդպիսի բազաների կառուցմանը պետք է հատկացվեն ֆինանսական ու նյութական խոշոր միջոցներ, ավելի ռացիոնալ օգտագործվեն առողջապահության կապիտալ ներդրումները։



Սույն աշխատանքը մեզ մոտ ամենևին չի վնասի շրջանային հիվանդանոցներին, քանի որ մեր հանրապետությունում դրանք տեղավորված են տիպային նոր շենքերում, որոնք հիմնականում կառուցվել են վերջին տարիներս։

Ելնելով ֆիզիկոաշխարհագրական պայմաններից, հաղորդակցման ճանապարհների վիճակից ու մատչելիությունից, ինչպես և համապատասխան նյութատեխնիկական բազայի առկայությունից ու մոտ ապագայում նրա աճման հեռանկարներից՝ Հայաստանի սահմաններում կարելի է կազմակերպել կենտրոնական բժշկասանիտարական վեց գոտի— Երևանի, Լենինականի, Կիրովականի, Իջևանի, Սևանի ջրավազանի, Գորիսի։

Ստեղծված բժշկասանիտարական գոտիների հիմնական խնդիրը գյուղական ազգաբնակչության պատշաճ բուժսպասարկման կազմակերպումն է։

Այժմ, երբ միութենական բոլոր հանրապետություններն արդեն ունեն սոցիալական հիգիենայի և առողջապահության կազմակերպման իրենց փորձված գիտական կադրերը, նպատակահարմար և ավելի ճիշտ է յուրաքանչյուր հանրապետությունում գյուղական առողջապահության կազմակերպման ու կատարելագործման պրոբլեմները հիմնականում լուծել տեղերում, տեղի գիտական ուժերով, որը հնարավորություն կընձեռի ավելի կարճ ճանապարհով հասնելու գյուղական առողջապահության ամենահրատապ հարցերի պարզաբանմանը մեր երկրում։

Հանրապետության բժշկական և բժիշկների կատարելագործման ինստիտուտներում ստեղծված են, օրինակ, տարբեր պրոբլեմային լաբորատորիաներ, որոնք զբաղվում են գիտության հեռանկարային հարցերով։ Բայց առողջապահության կազմակերպման ու սոցիալական հիգիենայի ամբիոններին կից նման գիտական օղակներ չկան, որոնց օգնությամբ հնարավոր լինի ամբիոնների գիտահետազոտական աշխատանքների պլանը շաղկապել գործնական բժշկության հրատապ հարցերի հետ և գիտականորեն հիմնավորված պատասխաններ տալ առողջապահության կազմակերպման ու կատարելագործման ժամանակակից պրոբլեմներին ընդհանրապես, գյուղականին՝ մասնավորապես։

Ժողովրդական առողջապահության շահերը պահանջում են, որ գյուղական առողջապահության հետագա զարգացումն ու կատարելագործումն ընթանան խիստ գիտական հիմունքներով։

Ահա այն հարցերից ու պրոբլեմներից մի քանիսը, որոնք անհանգստացնում ու հետաքրքրում են մեզ՝ գյուղական բժիշկներիս։ Դրանց լուծումը կօգներ ավելի շատ բան անելու հօգուտ սովետական մարդու առողջության, աշխույժության ու երկարակեցության։

Ա. Պ. ՀԱՅՐԻՅԱՆ
Արարատի շրջանի Արմաշ գյուղի տեղամասային
հիվանդանոցի գլխավոր բժիշկ
ԷԼԶԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Տեղամասի բժիշկ

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ՀԲԱՂՎԱԾՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ՄԵԶ ՄՈՏ

Զբաղվածությունը կարևոր սոցիալ-տնտեսական պրոբլեմ է: Ժողովրդի
նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարումը մեծապես
կախված է ողջ աշխատունակ բնակչության զբաղվածության աստիճանից:
Սակայն տնտեսագիտական գրականության մեջ մինչև այժմ միասնական
կարծիք չկա սոցիալիզմի ժամանակ զբաղվածության պրոբլեմի վերաբերյալ:
Տնտեսագետների մի մասը (Մ. Յա. Սոնին, Դ. Ի. Վալենտեյ, Վ. Յագոդկին,
Ի. Մասլովա) ընդունում է այդ պրոբլեմի գոյությունը, իսկ մյուսը՝ անտեսում:
Գ. Ա. Պրուդենսկին գրում է. «ՍՍՀՄ-ում, սկսած 1930 թվականից, լրիվ
ապահովվում է աշխատունակ բնակչության զբաղվածությունը, իսկ «զբաղ-
վածություն» տերմինն այժմ արդեն չի կիրառվում մեր գիտական աշխատու-
թյուններում և սոցիոլոգիական հետազոտություններում» (Г. А. Пруденский,
Время и труд, М., «Мысль», 1965, стр. 119):
Կասկածից վեր է, որ սոցիալիզմի ժամանակ զբաղվածության պրոբլեմը
նույնական չէ կապիտալիզմի ժամանակ գոյություն ունեցող պրոբլեմի հետ:
Ելնելով հենց դրանից, որոշ տնտեսագետներ մեր երկրում գործազրկության բացա-
կայությունը հանգեցնում են զբաղվածության պրոբլեմի բացակայությանը:
Զբաղվածության պրոբլեմը սոցիալիզմի պայմաններում ունի ո՛չ թե համ-
ընդհանուր, այլ ռեգիոնալ բնույթ, որը պայմանավորված է երկրի առանձին
տնտեսական շրջանների պատմատնտեսական ու բնական հանգամանքներով:
Սոցիալիզմի պայմաններում լրիվ զբաղվածության պրոբլեմը սկզբունքորեն
նոր բովանդակություն է ստանում և արտացոլում կոմունիստական շինարա-
րության կարևոր օրինաչափություններից մեկը՝ ողջ աշխատունակ բնակչու-
թյան մասնակցության ապահովումը հասարակական արտադրության մեջ:
Սակայն արտադրաուժերի արագ զարգացումը հարուցում է աշխատունակ
բնակչության զբաղվածության ապահովման նոր հարցեր՝ տեխնիկական
առաջընթացի շնորհիվ ազատվող աշխատուժի վերաորակավորումն ու հասա-
րակական արտադրության մնացած տեղամասերում նրա աշխատանքի տե-
ղավորումը, արտադրության կառուցվածքի ու ծավալի փոփոխությունը, գյու-
ղական բնակչության բացարձակ կրճատումը, արդյունաբերության և գյուղա-
տնտեսության առանձին ճյուղերի արտադրության սեզոնային բնույթը, աշ-
խատանքային հասակ ունեցող երիտասարդության աշխատանքով ապահո-
վելը, երկրի տնտեսական շրջանների և ժողովրդական տնտեսության ճյուղե-
րի միջև աշխատուժի վերաբաշխման պրոբլեմները և այլն:
Հնարավոր չէ զբաղվածության պրոբլեմն ըստ ամենայնի քննարկել՝
առանց բացահայտելու բնակչության տնտեսական օրենքի էությունը: Տնտե-
սագիտական գրականության մեջ տվյալ օրենքի բնորոշման կարևոր մեթոդա-



բանական սխալն այն է, որ բնակչության օրենքը միահյուսվում է այլ տնտեսական օրենքներին կամ նույնացվում դեմոգրաֆիական պրոցեսներին: Բնակչության տնտեսական օրենքը և բնակչության աճի օրենքը արտահայտում են տարբեր պրոցեսներ: Եթե բնակչության տնտեսական օրենքն արտահայտում է հասարակական արտադրության մեջ աշխատունակ բնակչության օգտագործման աստիճանը և տիրապետող արտադրահարաբերությունների ծնունդ է, ապա բնակչության աճի օրենքը բնութագրում է դրա վերարտադրության որոշակի տեսակը, որի տեմպերը զանազանվում են տարբեր սոցիալ-տնտեսական պայմաններում և անմիջականորեն կախված են ինչպես տնտեսական, այնպես և քաղաքական, կուլտուրական, ընտանեկան-կենցաղային, հոգեբանական, բնական-կենսաբանական գործոններից: Դրանք նույնացնելու և առավել ևս մեկ տնտեսական օրենքով արտահայտելու փորձերը բարդացնում են թե՛ մեկի և թե՛ մյուսի վերլուծությունը: Կապիտալիստական արտադրաեղանակի խոր և բազմակողմանի վերլուծման հիման վրա Մարքսը հայտնագործեց բնակչության կապիտալիստական օրենքը. «...բանվոր բնակչությունը կապիտալի կուտակում առաջ բերելով՝ հենց դրանով էլ ինքը աճող չափերով արտադրում է այն միջոցները, որոնք նրան դարձնում են հարաբերականորեն ավելցուկ բնակչություն: Սա բնակչության՝ արտադրության կապիտալիստական եղանակին հատուկ օրենքն է» (Կապիտալ հ. 1, էջ 661—662): Կարևոր նշանակություն ունի նաև տնտեսական և դեմոգրաֆիական պրոցեսների սահմանազատումը: Տնտեսական պրոցեսները արտադրության, փոխանակության, բաշխման և սպառման ոլորտներում ընթացող պրոցեսներ են, մինչդեռ, դեմոգրաֆիական պրոցեսները վերաբերում են բնակչության կյանքին և նրա շարժման բնագավառին, որոնք, ամենից առաջ, բնութագրվում են ծնելիությամբ, ամուսնությամբ, մահացությամբ:

Անկախ բնակչության տնտեսական օրենքի տարբեր բնորոշումներից, մեր տնտեսագետները միակարծիք են այն հարցում, որ այդ օրենքի կարևորագույն գծերը բնակչության լրիվ զբաղվածությունն ու նրա ընդլայնված վերարտադրությունն են:

Բնակչության տնտեսական օրենքի բովանդակությունը պետք է արտացոլի որոշիչը, գլխավորը՝ մարդկանց գոյության և բազմացման մեջ: Այդ գլխավորը սոցիալ-տնտեսական պայմաններն են, այսինքն՝ մարդկանց արտադրահարաբերությունները: Մարդկանց գոյության ու բազմացման գործում որոշիչը աշխատանքն է, իսկ վերջինս բնութագրող կարևոր գործոններից է բնակչության զբաղվածության աստիճանը: Բնակչության տնտեսական օրենքի բնորոշման հարցում, մեր կարծիքով, ընդունելի են այն հեղինակների տեսակետները, որոնք այդ օրենքի բովանդակության մեջ ներառում են աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածությունը հանրօգուտ աշխատանքով և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը: Իրավացի չեն այն տնտեսագետները, որոնք այդ օրենքին տալիս են համապարփակ բնույթ, նրա մեջ ներառելով տնտեսական հարաբերությունների մի մեծ կոմպլեքս, որի հիմքում ընկած են տարբեր դեմոգրաֆիական և տնտեսական երևույթներ: Բնակչության տնտեսական օրենքը, ինչպես և ամեն մի տնտեսական օրենք, ունի օբյեկտիվ բնույթ և պատկանում է յուրահատուկ օրենքների կատեգորիային, քանի որ, Մարքսի արտահայտությամբ՝ «Արտադրության ամեն մի առանձին պատմական եղանակին իրականում հատուկ են բնակչության առանձին, պատմական բնույթ ունեցող օրենքներ»:

Տնտեսագիտական գրականության մեջ տարածված է այն տեսակետը, թե լրիվ զբաղվածություն ասելով պետք է հասկանալ հասարակական տնտեսության մեջ աշխատողների թվի առավել ավելացման հասնելու ձգտումը: Այլ խոսքով, լրիվ զբաղվածությունը նույնացվում է հանրային տնտեսության մեջ ողջ աշխատունակ բնակչության առավելագույն օգտագործման հետ: Մինչդեռ, լրիվ և առավելագույն զբաղվածություն «հասկացությունները» անհրաժեշտ է սահմանազատել: Առաջինը ցույց է տալիս զբաղվածության աստիճանը, իսկ

առավելագույնը՝ աշխատանքային ռեսուրսների զբաղվածության մակարդակը։ Վերջինս սովորաբար արտացոլում է հասարակության աշխատանքային ռեսուրսների կիրառման արդյունավետությունը, նրանց բաշխումը հանրային, տնային և անձնական օժանդակ տնտեսության և արտադրությունից կտրված ուսման մեջ։ Լրիվ զբաղվածություն կարող է լինել հասարակական տնտեսության մեջ աշխատանքային ռեսուրսների օգտագործման տարբեր մակարդակների դեպքում։ Դա հիմնականում պայմանավորված է կանանց զբաղվածության տարբեր աստիճաններով, քանի որ, որպես կանոն, բոլոր աշխատունակ տղամարդիկ աշխատում են հասարակական տնտեսության մեջ կամ սովորում են արտադրությունից կտրված։ Յուրաքանչյուր տվյալ ժամանակաշրջանում բնակչության լրիվ զբաղված լինելը դեռևս չի նշանակում, թե հետագայում հասարակությունը չպետք է վճռի այդ պրոբլեմը։ Ովքեր ինչ-ինչ պատճառներով հասարակական տնտեսության մեջ չեն աշխատում, կարող են դրա անհրաժեշտությունն ունենալ հետագայում։

Եթե նկատի ունենանք և այն, որ բնակչության նոր կոնտինգենտը մշտապես աշխատունակ է դառնում, ապա պարզ կլինի, թե ինչու լրիվ զբաղվածության կատեգորիան ունի որոշակի կոնկրետ բովանդակություն և խիստ շարժուն սահմաններ։ Լրիվ զբաղվածության օբյեկտիվ անհրաժեշտությունը սոցիալիզմի ժամանակ բխում է արտադրության եղանակով պայմանավորված բաշխման սկզբունքից։ Դա նախ՝ նշանակում է, որ ողջ աշխատունակ բնակչությունն զբաղված է հանրօգուտ աշխատանքով։ Եվ որքան բարձր է բնակչության զբաղվածության աստիճանը հասարակական արտադրության մեջ, այնքան նշանակալի է ազգային եկամտի աճը, վերջին հաշվով, ժողովրդի բարեկեցության մակարդակը, ուրեմն և բնակչության պահանջարկը՝ սպառման առարկաների նկատմամբ։ Դա խթանում է արտադրության ընդլայնմանը, որը, իր հերթին, նոր պայմաններ է ստեղծում բնակչության զբաղվածության աճի համար։ ՍՄԿԿ XXIV համագումարում, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—75 թվականների հնգամյա պլանի դիրեկտիվների վերաբերյալ Ա. Ն. Կոսիգինի զեկուցման մեջ մատնանշված է, որ անցյալ հնգամյակում մեր երկրում «ապահովվել է աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածությունը»։

Վերջին տարիներին բուրժուական մի շարք տնտեսագետներ կարծում էին, որ ՍՍՀՄ-ում նոր տնտեսական ռեֆորմը գործազրկություն կառաջացնի, քանի որ աշխատանքի արտադրողականության աճը կթելադրի ձեռնարկություններին արձակել ավելորդ բանվորներին, իսկ նրանց արտադրության մի այլ ճյուղում զբաղեցնելու հնարավորություն չի լինի։ Այսպիսի «անհանգստությունը» իզուր է, անհարկի։ Սոցիալիզմի պայմաններում որևէ ձեռնարկությունից ազատված բանվոր-ծառայողները գործազուրկներ չեն դառնում, ինչպես կապիտալի երկրներում, այլ, ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման պահանջներին համապատասխան, զբաղեցվում են այլ ճյուղերում ու բնագավառներում։

Աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացումը մեզ մոտ բնակչության լրիվ զբաղվածությունն ապահովելու պարտադիր պայմանն է, որի շնորհիվ աճում են կապիտալ ներդրումները, ընդլայնվում է արտադրությունը և բարձրանում բնակչության զբաղվածության մակարդակը։

Աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածությունն ապահովվում է նաև սոցիալիստական արտադրության անընդհատ և անճգնաժամ աճով։ 1966—69 թթ. օրինակ, մեր հանրապետությունում կառուցվել են ավելի քան 80 նոր արդյունաբերական ձեռնարկություն, արտադրամաս և արտադրատեղամաս, որոնց համար պահանջվեցին մեծ թվով բանվորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ծառայողներ։ Այսպես, եթե 1960 թվականին հանրապետությունում բանվոր-ծառայողների միջին տարեկան թվաքանակը կազմել է 427, 1966-ին՝ 670, ապա 1969 թվականին այն կազմել է 804 հազար մարդ։

Որոշակի առանձնահատկություն ունի բնակչության զբաղվածության հարցը գյուղատնտեսության մեջ։ Դա հետևանք է արտադրության սեզոնայ-



նության։ Գյուղատնտեսական արտադրության կազմակերպման արդի մակարդակը, տեխնիկական զինվածության ու ինտենսիվացման աստիճանը չեն ապահովում աշխատուժի համաչափ ու լրիվ զբաղվածությունը տարվա ընթացքում։ Գյուղատնտեսության աշխատողների աշխատաժամանակի տարեկան ֆոնդի ոչ-լրիվ օգտագործումը տնտեսական կորուստ է հասարակության համար։ Այսպես, մեր հանրապետության կոլտնտեսություններում 1968 թվականին աշխատաժամանակի հնարավոր ֆոնդը, միջին հաշվով, մեկ աշխատունակի կողմից (տարվա ընթացքում, 280 օրվա հաշվով) օգտագործվել է 63,5 տոկոսով (հաշվարկը կատարված է ՀՍՍՀ կոլտնտեսությունների տարեկան հաշվետվությունների հիման վրա)։

Բնակչության մեծ խտություն ունեցող մեր հանրապետությունում, ուր 41 տոկոսը կազմում է գյուղական ազգաբնակչությունը, լրիվ զբաղվածության հարցը հատուկ նշանակություն է ձեռք բերում։ ՀՍՍՀ գյուղատնտեսության մեջ դեռևս ցածր է աշխատաժամանակի տարեկան ֆոնդի օգտագործման մակարդակը, մեծ թիվ են կազմում այն կոլտնտեսականները, որոնք տարբեր պատճառներով չեն մասնակցում հանրային արտադրությանը։

Հանրապետության կոլտնտեսությունների աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման շահերից ելնելով, զգալի աշխատանք պետք է կատարվի ագրարային-արդյունաբերական միջկոլտնտեսային միավորումների անհապաղ ստեղծման համար։ «Ագրարային-արդյունաբերական միավորումները,— նշված է կոլտնտեսականների համամիութենական III համագումարի որոշումներում,— անտարակույս, մեծ ապագա ունեն։ Դա ոչ միայն նոր կազմակերպական ձև է, այլև սոցիալ-տնտեսական կարևոր երևույթ» (Լ. Ի. Բրեժնև, Ճառ կոլտնտեսականների համամիութենական III համագումարում, 1970 թ., էջ 25)։ Այդպիսի ձեռնարկությունների ստեղծումն ունի ինչպես զուտ տրնտեսական, այնպես էլ սոցիալական նշանակություն։ Այն հնարավորություն կընձեռի, ամենից առաջ, բարձրացնելու հանրային տնտեսության արդյունավետությունը։

Ագրարային-արդյունաբերական միավորումների ստեղծումը, անկասկած, կնպաստի գյուղատնտեսական սեզոնային աշխատանքներից հետո կոլտնտեսականներին գործով ապահովելուն։ Բացի այդ, այն հնարավորություն կընձեռի տեխնիկական պրոգրեսի շնորհիվ ազատ աշխատանքային ռեսուրսներն օգտագործելու նաև այդ ձեռնարկություններում։

Ժողովրդատնտեսական պլանավորման և հաշվառման պրակտիկայում տարբերում են զբաղվածությունը՝ հանրային տնտեսության, արտադրությունից կտրված ուսման և անձնական օժանդակ ու տնային տնտեսության մեջ։ ՍՍՀՄ-ում զբաղվածների կատեգորիայի մեջ են մտնում հանրօգուտ գործունեությամբ զբաղվածները։ Հանրօգուտ գործունեություն է համարվում ուսումնառությունը բուհերում, տեխնիկումներում, ինչպես և ուսման մյուս ձևերում։ Հարկ է ընդգծել նաև, որ լրիվ զբաղվածությունը չի նշանակում, թե ողջ աշխատունակ բնակչությունը պետք է գործի հանրային տնտեսության մեջ, անմիջական հասարակական աշխատանքի ոլորտում։ Անձնական աշխատանքի ոլորտը մեզ մոտ վերջինիս կիրառման կարևոր ոլորտներից է։

Ընտանիքը սոցիալիստական հասարակարգում ուրույն հասարակական բջիջ է, որի շրջանակներում է իրականացվում սպառումը, վերականգնվում արտադրության մեջ ծախսված աշխատուժը, երևան են գալիս նոր աշխատողներ։ Անժխտելի է, որ այդ բջջում ծախսվում է աշխատաժամանակի մեծ զանգված։ Այսպես, ՍՍՀՄ-ում տնային տնտեսության վարման համար տարեկան ծախսվում է 125—150 մլրդ ժամ, որը համապատասխանում է 60—70 մլն մարդու ժամանակի տարեկան բյուջեին (տե՛ս П. Т. Олдак, Экон. проблемы повыш. уровня жизни, 1963, стр. 17, Социалистический труд, 1967, №7, стр. 5)։ Ճիշտ չէ այն կարծիքը, թե իբր, տնային տնտեսության մահացմամբ, կվերանա աշխատանքային ռեսուրսների օգտագործումն այդ ոլորտում (А. Э. Котляр, Рабочая сила в СССР, «Мысль», 1967,

стр. 163)։ *Մոտ ապագայում ևս տնային տնտեսությունը կմնա բնտանիքի նյութա-կենցաղային պահանջների բավարարման հիմնական գործոն* (А. Э. Котляр, «Рабочая сила в СССР», М., «Мысль», 1967, стр. 163):

*Սակայն, ի վերջո, սպասարկման ոլորտի զարգացումը և գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականության աճն անխուսափելիորեն կկրճատեն մարդկանց զբաղվածությունը տնային և անձնական օժանդակ տնտեսության մեջ։*

*ՍՍՀՄ և ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության նյութական և ոչ-նյութական արտադրության ոլորտներում զբաղված բնակչության շարժումը հետևյալ պատկերն ունի.*

Զբաղվածությունը ժողովրդական տնտեսության մեջ
ըստ ոլորտների

*(առանց սովորողների և զինծառայողների, տոկոսներով)*

| | 1960 | | 1965 | | 1969 | |
|---|---|---|---|---|---|---|
| | ՍՍՀՄ | ՀՍՍՀ | ՍՍՀՄ | ՀՍՍՀ | ՍՍՀՄ | ՀՍՍՀ |
| Ընդամենը | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 |
| Նյութական արտադրության մեջ | 83,0 | 81,7 | 80,0 | 78,2 | 77,8 | 75,4 |
| Ոչ-նյութական արտադրության մեջ | 17,0 | 18,3 | 20,0 | 21,8 | 22,2 | 24,6 |

*Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ ոչ-նյութական արտադրության ճյուղերում զբաղվածների տեսակարար կշիռն աճում է, որն ուղեկցվում է նյութական արտադրության ճյուղերի զարգացման բարձր տեմպերով և աշխատանքի արտադրողականության աճով։*

*Աշխատավորության մշտապես աճող պահանջմունքների բավարարումը թելադրում է լուսավորության, կուլտուրայի, առողջապահության և ոչ-նյութական արտադրության մյուս ճյուղերի հետագա զարգացում, հետևապես այդ ճյուղերում զբաղվածների թվի ավելացում։ Այսպես, վերոհիշյալ ճյուղերում ՀՍՍՀ-ում կապիտալ ներդրումները 1960 թվականին կազմել են 38 (համադրելի գներով), իսկ 1969-ին՝ 110 մլն ռուբլի, որը ժողովրդական տնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումների 19,2 տոկոսն է։ Ոչ-նյութական արտադրության ոլորտում զբաղվածության առավել արագ աճի տենդենցը կպահպանվի նաև հետագայում։*

*Աշխատանքային ռեսուրսների զբաղվածության բարձրացման պրոբլեմը չի առանձնացվում աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումից։ Աշխատունակ բնակչության զբաղվածության աստիճանի բարձրացումը ենթադրում է նրա ռացիոնալ օգտագործում, որը, սակայն, պետք է համապատասխանի հասարակության ու անհատի շահերին և չհանգեցնի հասարակական աշխատանքի արտադրողականության աճի անկմանը։ Այդ բնագավառում նշանակալից գործ կկատարվի ընթացիկ հնգամյակում։ Աշխատանքային ռեսուրսների զբաղվածության բարձրացման նպատակով իրականացվող միջոցառումները կապահովեն նաև նրանց ռացիոնալ օգտագործումը։*

*Վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը հատուկ որոշումներ ընդունեցին վարչա-կառավարչական ապարատից ազատվածներին աշխատանքով ապահովելու վերաբերյալ։ 1966 թվականին հանրակրթական դպրոցը միաժամանակ ավարտեցին X և XI դասարանների շրջանավարտները։ Բնականաբար, ծագեց բուհ չընդունվածների աշխատանքի տեղավորման պրոբլեմը։ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին կից ստեղծվեց երիտասարդության աշխատանքի տեղավորման հանրապետական հանձնաժողով։ Չնայած դրան, շրջանավարտների 9,9 տոկոսը, իսկ 1968 թվականին*



*7 տոկոսը աշխատանքի չտեղավորվեց։ Դրությունն առանձնապես բարվոք չէր Աշտարակի, Բասարգեչարի և Մարտունու շրջաններում։*

*Աշխատունակ բնակչության զբաղվածության ասպարեզում սոցիալիզմի կարևոր առավելություններից է և այն, որ մեզ մոտ կանանց սոցիալական դրությունը հնարավորություն է ընձեռում հանրային տնտեսության մեջ նրանց ամենալայն մասնակցություն ապահովելու։ Այժմ աշխատունակ կանանց ավելի քան* $^3/_4$*-ը զբաղված է հանրային տնտեսությունում և ուսումնառությամբ, ընդ որում, նրանք ժողովրդական տնտեսության մեջ աշխատողների ավելի քան կեսն են* («Экономические планирование в СССР», гл. в. М., 1967, стр. 164)։ *ՀՍՍՀ-ում նրանք ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվոր-ծառայողների 41 տոկոսն են կազմում։ Ընդ որում, առողջապահության և ֆիզկուլտուրայի հաստատություններում՝ 79, լուսավորության՝ 61, հասարակական սննդում՝ 51, գյուղատնտեսության և անտառային տնտեսության մեջ՝ 44, արդյունաբերության՝ 43 տոկոսը և այլն («Սովետական Հայաստանը 50 տարում», Երևան, 1970, էջ 198—199)։ Կանանց զբաղվածության ավելացումը ժողովրդական տնտեսության պահանջներն աշխատուժով բավարարելու աղբյուր է և տնտեսական աճի կարևոր գործոն։ ՀՍՍՀ բնակչության աշխատանքային ակտիվության բնույթի փոփոխությունը 1965 և 1968 թթ. երևում է ներքոհիշյալ աղյուսակի տվյալներից.*

Աշխատանքային ռեսուրսների բաշխումն ըստ զբաղվածության հիմնական տեսակների[1]
*(տոկոսներով)*

| | 1965 | 1968 |
|---|---|---|
| Ընդամենը աշխատանքային ռեսուրսներ | 100 | 100 |
| Դրանցից զբաղված են՝ | | |
| հանրային տնտեսությունում և արտադրությունից կտրված ուսման ոլորտում | 84,2 | 87,2 |
| տնային և անձնական օժանդակ տնտեսությունում | 15,8 | 12,8 |

*1965—1968 թթ. աշխատանքային ռեսուրսների զբաղվածությունը տնային և անձնական օժանդակ տնտեսության ոլորտում զգալիորեն կրճատվել է։ Սակայն դա չի նշանակում կանանց աշխատանքի արդյունավետ օգտագործում։ Կանանց ռացիոնալ զբաղվածությունը պայմանավորված է, ամենից առաջ, ծառայությունների ոլորտի, մասնավորապես մանկական նախադպրոցական հաստատությունների ցանցի համապատասխան զարգացմամբ ու ընդլայնմամբ։*

*Վերջին տարիներին աշխատաժամանակի նոր կրճատումը մեր երկրում նույնպես ուղեկցվում էր հանրային տնտեսության մեջ զբաղվածության նշանակալի բարձրացմամբ։ Բացի այդ, առավել չափերի է հասնում նաև ազատ ժամանակը. այն օգտագործվում է մարդու հոգևոր ու ֆիզիկական ունակությունների համակողմանի զարգացման համար։ Բնակչության լրիվ զբաղվածությունը հասարակության յուրաքանչյուր անդամի ունակությունների և ձիրքերի լիովին բացահայտման և դրսևորման պայման է։*

*Աշխատանքի համընդհանրությունը, հասարակական արտադրության մեջ յուրաքանչյուրի մասնակցության անհրաժեշտությունը, վերջին հաշվով, որոշում են այն բանով, թե ինչ չափով են վճռվում նյութական և հոգևոր բարիքների ստեղծման, դրանցով ողջ բնակչության պահանջների բավարարման, նրա կենսամակարդակի բարձրացման, մարդու համակողմանի զարգացման խնդիրները։*

[1] *Աղյուսակը կազմված է ՀՍՍՀ ԿՎՎ-ի տվյալների հիման վրա։*

Հ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆ

# Ժուռնալիստի ՆՈԹԵՐ

## ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՆՈՐԻ ԶԳԱՑՈՂՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ

*ՀՍՍՀ Մինիստրների սովետի հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեի նախագահի առաջին տեղակալ*

ՄԵՐ մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը շատ բան են անում երկրի ներքին կյանքի հրատապ, սովետական մարդկանց իսկապես հետաքրքրող պրոբլեմների և միջազգային գործերի օպերատիվ լուսաբանման համար, օգնում են տարածելու կոմունիստական շինարարության առաջավոր փորձը, մերկացնում հակակոմունիզմի գաղափարական ոտնձգությունները: ՍՄԿԿ XXIV համագումարում ժուռնալիստների աշխատանքի վերոհիշյալ բարձր գնահատականը ուրախացնում և միաժամանակ մտահոգում է մեզ: Արտադրական կոլեկտիվների նման, մենք ևս մեր հավաքներում, բանավեճերում ու քննարկումներում նժարելով կատարածը, պարզում, ճշգրտում և որոշում ենք ժուռնալիստական պրակտիկայի խնդիրներն ու պրոբլեմները:

Ժուռնալիստների համար թեմաների նոր, հարուստ հանքաշերտեր կան կուսակցության XXIV համագումարի նյութերում ու որոշումներում: Սակայն այսօր նյութի պակասությունից չէ, որ նեղվում ենք: Համապետական նշանակություն տալով հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը, մենք ևս, հավանաբար, պետք է լրջորեն խորհենք մեր աշխատանքի արդյունավետության՝ գրավոր ու բանավոր խոսքի ազդեցության բարձրացման մասին:

Այս հարցը նոր չէ, բայց յուրաքանչյուր ժամանակահատված ծնում է նոր խնդիրներ, որոնք և պահանջում են նորովի իմաստավորել այն, ինչի մասին գրում ենք:

### ԳԱԼԻՔԻ ԴԻՏԱԿԵՏԻՑ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXIV համագումարի նախապատրաստության շրջանում ինչպես մամուլի, այնպես և ռադիոյի կարևորագույն խնդիրն էր համակողմանիորեն լուսաբանել ութերորդ հնգամյակում սովետական ժողովրդի ձեռք բերած մեծ նվաճումները և այդ հենքի վրա պատկերել գալիքը, որը սևեռված է իններորդ հնգամյակի դիրեկտիվներում: Այդ խնդիրը, թեև որոշ թերացումներով՝ պատվով կատարվեց:



Հիմա, երբ հասարակական կյանքում և արտադրության մեջ արագ և խոր փոփոխություններ են կատարվում, կարևոր նշանակություն է ստանում այն հարցը, թե ինչպիսի դիտակետից է լուսաբանվում այս կամ այն սոցիալական երևույթը, հրատապ պրոբլեմը:

Հեղինակները, ինչպես և թղթակիցները, արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի ակնբախ նվաճումները բացահայտելու նպատակով հաճախ համեմատություն են կատարում այսօրվա և նախասովետական Հայաստանի միջև: Այսպես, ժամանակակից Լենինականը ներկայացնելիս, հիշվում է հին Գյումրին, սննդի արդյունաբերության մասին խոսելիս հիշատակվում է Շուստովի ձեռնարկությունը: Թեմայի նկատմամբ այսպիսի մոտեցումը, հավանաբար, ո՛չ միայն ճիշտ չէ, այլև ժամանակավրեպ, քանի որ նախասովետական շրջանի մեր թշվառությունը չի կարող չափանիշ լինել զարգացման այսօրվա տեմպերը բնութագրելու համար: Հասկանալի է, որ խոսքը, տեսական կամ պատմական բնույթի հաղորդումների մասին չէ: Արդի պրոբլեմները քննարկելիս, պատմական ու կարծես արդեն պարտադիր դարձած էքսկուրսները հեղինակների բանիմացության կամ լիցքավորվածության գրավականը չի կարող լինել: Ավելին այսպիսի մոտեցումը ո՛չ միայն ավելորդ ծանրաբեռնում է, այլև ունկնդիրների ուշադրությունը շեղում է գործի բուն էությունից, պատմական պանուհանքների մեջ խանգարում տեսնել զարգացման հեռանկարը, գտնել անդադար ծնվող նոր խնդիրների լուծման առավել ճշգրիտ ուղիները:

Յուրաքանչյուր հնգամյակ հաջորդում է իր նախորդին. ուստի, հնգամյակի ընթացքը բնորոշելու համար համեմատությունները հիմնականում կարող են անցկացվել նախորդի տվյալների միջև: Չափանիշների այսպիսի տրամաբանված ընտրությունը նաև հնարավորություն կտա խորամուխ լինելու այն հարցում, թե ինչ ռեալ հիմքերի վրա է ծրագրվել գալիքը, ինչպիսի տեմպերով են իրագործվում նախատեսված առաջարկները, որոնք են մեր անելիքները նախագծվածն իրականացնելու ասպարեզում:

Սովետական մարդկանց եռանդը իններորդ հնգամյա պլանի կատարմանը ի սպաս դնելու իմաստով էական նշանակություն ունի ժամանակակից իրականությունը համեմատելու ո՛չ միայն և ո՛չ այնքան անցյալի, այլ հիմնականում գալիքի, ապագայի համար ծրագրված սոցիալ-տնտեսական խնդիրների հետ:

Ինչ խոսք, ապագան մեզ հառնում է գաղափարավորված: Սակայն այդ գաղափարը տիրապետելով մասսաներին սոցիալիստական հասարակության պայմաններում ձեռք է բերում չափի ու կշռելիության հայտանիշեր, հանդես է գալիս որպես «Երրորդ իրականություն»: Հիշենք, որ ժամանակին Մաքսիմ Գորկին գտնում էր, որ գրողներն ու հրապարակախոսներն անցյալն ու ներկան արժեքավորելիս, պետք է ելնեն այդ երրորդ իրականության իմացությունից, պրոպագանդեն այն որպես իդեալ:

Կապիտալիստական անարխիկ հասարակության մեջ, ուր դժվար է կռահել մարդու, հասարակության արտադրական գործունեության սոցիալական, տնտեսական և քաղաքական հետևանքները, ուր հաճախ հասարակական, թեկուզ դրական նպատակները, իրենց իրագործման պրոցեսում կամ վերջնակետում ուղղվում են հենց իր՝ մարդու, հասարակության դեմ, բուրժուական

ժուռնալիստներին նետում են հոռետեսության, սոցիալական վախի հորձանուտը:

Այլ է մեր հասարակության զարգացման ընթացքն ու հունը: Իններորդ հնգամյակի դիրեկտիվ առաջադրանքները ժուռնալիստներին հիմք են տալիս վառ ուրվագծելու գալիքի պատկերը, բնութագրելու մեր առաջընթացը: Ինչպես հայտնի է, կոմունիստական կուսակցության պատմական վիթխարի կանխագծումները վաղուց արդեն ոչ մի կասկած չեն հարուցում: Իսկ հնգամյա իրագործումների ծավալն ու մասշտաբներն օրինական հպարտության զգացում են առաջացնում ամեն մի սովետական մարդու հոգում: Ուրեմն, իրականության հեռանկարը պատկերելիս մենք կյանքը գունազարդելու կարիք չունենք, նման մոտեցումը անհարիր է սովետական ժուռնալիստիկայի ավանդներին:

Ցավով պետք է նկատենք, որ մինչև օրս եթերում, թերթերի սյունակներում երբեմն տեղ են գտնում գորշ կամ պճնազարդված նյութեր, որոնք նույն մեդալի տարբեր երեսներն են: Նյութերը ստացվում են անարյուն, քանի որ թվերի մոգական շրջանակը երբեմն սահմանափակում է հեղինակի տեսադաշտը: Հաճախ թվերի փայլը հաղթահարելու նպատակով իրականության ծավալման բուն պատկերը փոխարինվում է բառային պճնանքով: Այսօր, երբ ժամանակակից կյանքը արածն ու անելիքը կշռադատելու, խորհելու այնքան հարուստ նյութ է տրամադրում, «երրորդ իրականության» չոր, անարյուն, աղքատիկ պատկերումը կամ պատկերի փետրազարդումը, մտապաշարի աղքատության կամ մտքի ծուլության ախտանիշեր են միայն:

Կուսակցության կանխագծումների հիման վրա ստեղծել ապագայի իրական պատկերը, այսօրվա երևույթները, իրադարձություններն արժեքավորել գալիքի բարձունքից, այս է մեր՝ ժուռնալիստներիս հասարակական-քաղաքական պարտքը:

### *ԸՆԴՀԱՆՈՒՐԻ ԵՎ ԱՌՕՐԵԱԿԱՆԻ ԶՈՒԳԱԿՑՈՒՄՈՎ*

ԻՆՆԵՐՈՐԴ հնգամյակի գլխավոր խնդիրը ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի վերելքն է: Սովետական իշխանության առաջին իսկ օրից կուսակցությունը և պետությունը հնարավորի սահմաններում արել են այն ամենը, ինչ նպաստում էր մեր առաջընթացին: Այժմ իրավիճակը բոլորովին այլ է: Սոցիալիստական շինարարության նվաճումները, մասնավորապես, ութերորդ հնգամյակի արդյունքները կուսակցությանը հիմք են տվել ընդլայնելու ծրագրումների շրջանակը: Ներկայումս, խնդիր է դրված բարձրացնել ո՛չ միայն ժողովրդի բարեկեցությունը, այլև զարգացնել սովետական մարդկանց ունակությունները, ստեղծագործական եռանդը: Խնդիրը պարտավորեցնում է հարստացնել նաև մեր հաղորդումների թեմատիկան, լուսաբանվող հարցերի շառավիղը:

Մենք պետք է հրաժարվենք այն պրակտիկայից, երբ պատշաճ կերպով չի պրոպագանդվում սպառման հանրային ֆոնդերի աճը՝ որպես ժողովրդի բարեկեցության բարձրացման և բազմակողմանիորեն զարգացած, բարեկիրթ անհատի դաստիարակության կարևորագույն գործոնի: Ընդ որում, երևույթը հաճախ գնահատվում է արտաքին հայտանիշերով, առանց խորանալու նրա սոցիալական էության մեջ: Այսպես, գյուղատնտեսական տարվա վերջում բավականաչափ տեղեկություններ ենք ստանում կոլտնտեսությունների և կոլ-



տնտեսականների եկամուտների աճի մասին: Այդ նյութերը սովորաբար ընդգրկվում և ավարտվում են տվյալ և անցած տարվա համեմատական թվերով, այլ կերպ ասած, ինչ է ունեցել կոլտնտեսությունը և կոլտնտեսականն անցած տարի և ինչ ունի այսօր: Բայց սա դեռևս գլխավորը չի ասում կոլտնտեսության և կոլտնտեսականի վաղվա օրվա մասին: Ճիշտ այնպես, ինչպես մարդու գրպանում եղած դրամը ոչինչ չի կարող ասել նրա հոգևոր պահանջմունքների և վաղվա ապրելակերպի մասին:

Ինչ խոսք, եկամուտների աճը կարող է իմաստալից ու ներգործուն ինֆորմացիայի, գրույցի ելակետ լինել, եթե չենք սահմանափակվում միայն թվական համեմատություններով, այլ բացահայտում և որոշակի օրինակով ցույց ենք տալիս, թե ռեալ եկամուտների աճն ինչպիսի հնարավորություններ է ստեղծում անձի կամ նրա ընտանիքի հոգևոր պահանջմունքների բավարարման համար, կամ անհատը ինչպես է ծախսում, ինչպես է մտադիր ծախսել իր եկամուտները: Նման հարցերը ինքնաբերաբար, կամայաբար լուծվող հարցեր չեն: Ժուռնալիստների պարտքն է՝ ստեղծագործական զինանոցի բոլոր միջոցներով պայքար մղել ինչպես սպառողական հոգեբանության ու իրապաշտության դրսևորումների դեմ, այնպես և անհատի մեջ արթնացնել ու ամրապնդել իր իսկ բազմակողմանի զարգացմանը նպաստող բանական ու ռեալ պահանջմունքները:

Սովետական պետությունը հսկայական միջոցներ է ներդրել ժողովրդի նյութական ու կուլտուրական վերելքի գործում: Ուրեմն, կարևոր նշանակություն է ստանում այդ միջոցների իրացման, սպասարկման ոլորտի խնդիրների բազմակողմանի, խոր լուսաբանումը: Նկատենք, որ անուշադրության ամեն մի դրսևորում, աշխատավորների կուլտուրական սպասարկման, նրանց հոգևոր պահանջմունքների բավարարման նկատմամբ, հատկապես նորակառույցներում և գյուղական շրջաններում, կարող է վերանել տնտեսական, հասարակական, նույնիսկ քաղաքական զարգացման ընթացքի առջև ծառացող լուրջ խոչընդոտի: Հիմա արդեն, անիմաստ է զատել սոցիալ-կուլտուրականը տնտեսականից կամ քաղաքականից: Մինչդեռ, մեզ մոտ, հաճախ բացակայում է այս կամ այն երևույթը տարբեր կապերի մեջ ու փոխազդեցություններում ներկայացնելու փորձը:

Ինչպես հայտնի է, վերջին տասնամյակի կարևորագույն երևույթներից մեկը արդյունաբերական ձեռնարկությունների տեղաբաշխումն է գյուղական շրջաններում: Մեզ շատ են գրում այդ ձեռնարկությունների կառուցման ընթացքի և կամ արտադրական գործունեության մասին: Բայց թե այդ ձեռնարկություններն ինչպես են վերափոխում գյուղական շրջանների սոցիալ-կուլտուրական դեմքը, ինչպիսի բարեփոխումներ են հարուցում գյուղական շրջանների բնակչության սոցիալական կառուցվածքում, կուլտուրայի զարգացման ինչպիսի խթան են, այդ մասին քչերն են գրում: Բայց չէ որ սովետական պետության սոցիալ-կուլտուրական հսկայական միջոցառումների նպատակը գյուղում, ինչպես նաև արդյունաբերության համաչափ տեղաբաշխման սոցիալական նշանակությունը, քաղաքի և գյուղի էական տարբերությունների վերացումն է:

ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած սոցիալ-կուլտուրական հոյակապ ծրագրի էությունը կարելի է և պետք է բացահայտել տարբեր ձևերով ու համակցություններով: Գրավիչ ու ներգործուն են այն նյութերը, որոնք հագեցված

են մանրամասներով, ճշգրտումներով, առօրեականի և ընդհանուր տնտեսականի զուգակցումով։

*ՓԱՍՏԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ ՊՐՈԲԼԵՄԱՅՆՈՒԹՅՈՒՆ*

ԱՐՏԱԴՐԱՆՔԸ ավելացնել ոչ այնքան մարդկային ռեսուրսների, նոր ձեռնարկությունների կառուցման հաշվին, այլ հիմնականում արտադրության արդյունավետության բարձրացման, գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման, աշխատանքի արտադրողականության աննախընթաց բարձրացման հաշվին։ Այսպիսին է մեր կուսակցության տընտեսական քաղաքականության հիմնական ուղղությունը։

Այս առումով ևս կշռադատելու, խորհելու շատ բան ունենք։ Երբ նայում ես ստացված նյութերի քանակին, կարծես դժգոհելու առիթ չկա։ Բայց այսօր, ինչպես արտադրության մեջ, այնպես և գաղափարական ճակատում, չենք կարող այս կամ այն աշխատողին, առավել ևս ժուռնալիստին գնահատել քանակական ցուցանիշներով միայն։

Պատմության բերումով բանն այնպես էր ընթանում, որ առաջին տեղում էին դրվում քանակական գնահատականները և, բնական է, մեր պրոպագանդան նպատակամղված էր այդ խնդրին։ Սակայն, ժամանակները փոխվել են։ Այսօր պլանների կատարումը, առանց որակական բնութագրի չի կարող դրական երևույթ համարվել։ Մեզ համար միևնույն չէ, պլանները կատարվել են արտադրական կարողությունների ընդլայնման, թե արտադրության ինտենսիվացման միջոցով, բանվորների թվի ավելացման, թե աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, անասնապահական մթերքների արտադրությունն ավելացել է անասունների գլխաքանակի աճի, թե անասունների մթերատվության ու որակական ցուցանիշների բարելավման հաշվին։ Հիրավի փոխվել, ընդլայնվել են արտադրության առջև ծառացած խնդիրները, փոխվել են արտադրությունը վարելու ձևերն ու մեթոդները, բայց ինչպես ցույց է տալիս պրակտիկան, մեր թղթակիցների և շատ հեղինակների պատկերացումները մնացել են նույնը, նրանք գրում են նախկին ձևով, թվածեփելով երևույթը։

Իհարկե, ինֆորմացիան, առաջին հերթին, փաստերի մատուցումն է։ Առանց փաստերի սնամեջ կստացվեն նաև էկոնոմիկական հաղորդումները։ Խնդիրն այսօր այլ կերպ է դրվում՝ ինչպիսի փաստերի մատուցումը և փաստերի ինչպիսի մատուցումը։ Խոսքը վերաբերում է ինչպես դրական, այնպես և բացասական երևույթների բնութագրմանը։

Կար ժամանակ, երբ պլանները կատարած ու գերակատարած ձեռնարկությանը դիպչելը մեծ սրբապղծություն էր համարվում։ Սակայն այսօր ևս շարունակվում է չափից ավելի գովեստներով լցվել եթերն այն ձեռնարկությունների ու ղեկավարների հասցեին, որոնք իրականում քննադատության արժանի վիճակում են։ Ինչո՞ւ։ Իհարկե, գործի քանակական կողմը հիմա էլ կարևոր է, բայց արտադրության կոոպերացման ու արդյունաբերության ճյուղերի միահյուսման արդի պայմաններում, երբ մի ձեռնարկության կենսագործունեությունը անհրաժեշտորեն պայմանավորում է մի այլ ձեռնարկության աշխատանքով, ապա զուտ քանակական ցուցանիշը դադարում է գնահատման չափանիշը լինելուց։ Կուսակցության XXIV համագումարում ընկեր Բրեժնևը ուղղակի նշեց, որ եթե որևէ ձեռնարկություն կատարել է պլանը,



բայց վիժեցրել է կոոպերատիվ մատակարարումները և նրա մեղքով տուժել է մյուս ձեռնարկությունների աշխատանքը, եթե մեկ տեղում ձեռք բերված հաջողությունը պակասորդ է առաջացրել մի այլ տեղում, ապա այդպիսի ղեկավարն արժանի է ոչ թե դրվատանքի, այլ քննադատության։

Անընդհատ որոնումների ու տեխնիկական հեղաշրջումների այս պայմաններում ընդլայնվել են նաև ընդհանուր գործի համար սուբյեկտիվ պատասխանատվության շրջանակները։ Ընկեր Բրեժնևը պարզ ու որոշակի դրեց խնդիրը՝ «Մենք ղեկավարներին քննադատում ենք, երբ նրանք սխալ են գործել, թույլ են տվել այս կամ այն զանցանքը։ Եվ սա ճիշտ է՝ պահանջկոտությունը հարկավոր է բարձրացնել։ Բայց կարծում ենք, պետք է ավելի խիստ քննադատել ո՛չ միայն նրանց, ովքեր սխալներ են գործում, այլև նրանց, ովքեր բոլոր հնարավորությունները չեն օգտագործում արտադրության զարգացման համար, չեն ցուցաբերում նախաձեռնություն, պասսիվ են ապրում»։

Այսօր տնտեսության մասին կարելի է գրել թափանցելով արտադրապրոցեսի խորքերը, գիտենալով, թե արտադրության կազմակերպումը ինչպես է ներառնում գիտությունն ու առաջավոր փորձը, որքանով է համապատասխանում գիտա-տեխնիկական հեղափոխության պահանջներին։ Հին պատկերացումը, թե պլանը կատարվել է, նշանակում է ամեն ինչ բարեհաջող է, այլևս չի կարող գրելու շարժառիթ լինել։ Ժամանակն է կտրական անցում կատարել փաստագրությունից պրոբլեմայնություն, պասսիվ հայեցողությունից ակտիվ վերլուծություն։

Հասարակական, տնտեսական զարգացման օրենքների հիմնավոր իմացություն և կենդանի իրականության մանրազնին ուսումնասիրություն՝ միայն այս հողի վրա կարող է պտղաբերել ժուռնալիստի ստեղծագործական միտքն ու վարպետությունը, միայն այս կերպ կարելի կլինի գործուն մասնակցություն ունենալ հնգամյակի խնդիրների լուծմանը։

*ՄԵՐ ՏՈՒՐՔԸ ԴԱԼԻՔԻՆ*

ՍՈՎԵՏԱԿԱՆ մարդուն իր ողջ հարստությամբ ու վեհությամբ ներկայացնելը եղել ու մնում է մեր ամենահիմնական և կարևորագույն խնդիրներից մեկը։ Եթե նկատի ունենանք ամենօրյա պրակտիկան, այստեղ ևս էական թերացումներ ունենք։ Խնդիրը ո՛չ միայն ժուռնալիստական վարպետության պակասն է, այլև տասնամյակներ շարունակ մշակված տրաֆարետը, որից չեն կարողանում խուսափել նույնիսկ փորձված ժուռնալիստները։ Բովանդակության առումով, մեր ժուռնալիստների գրչի տակ մարդու նկարագիրը հաճախ այսպիսի պատկեր է ստանում. անկետային տվյալներ՝ տարիքը, սոցիալական վիճակը, ստաժը և պլանների կատարումը։ Ձևի առումով, սովորաբար ակնարկի հերոսը համեստորեն հրաժարվում է իր մասին խոսել, այդ անում են նրա աշխատանքային ընկերները։ Բուն հեղինակին մընում է հերոսի արտաքինի, շրջապատի տեխնոլոգիական պրոցեսների լուսանկարչական պատճենահանումը։ Բայց ավելի վատթարն էլ կա։ Երբ մտածող, ստեղծագործող մարդու պատկերը ուղղակի ածանցվում է նրա իսկ սեփական աշխատանքի արդյունքից. և ահա մարդու փոխարեն թղթի վրա երևում է մի երկու թիվ, ազգանուն և ուրիշ ոչինչ։ Սա հին հիվանդություն է և, անշուշտ, ունի իր պատճառները։

Մեր երկրում, ուր սոցիալիզմի կառուցումը, իսկ այնուհետև հետպատե-

ռազմյան վերականգնումը սկսվեց մեծ մասամբ ձեռքի աշխատանքով, ժուռնալիստի ներկապնակի գույներն ավելի շատ օգտագործվում էին անձնավորության ուժերի գերմարդկային հնարների նկարագրմանը: Ստեղծագործական նման մոտեցումը, երբեմն սողանցք էր ստեղծում նահանջելու հոգեբանական նկարագրից: Այժմ, երբ մենք ապրում ենք գիտատեխնիկական հեղաշրջման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջանում, բնականաբար փոխվել են մարդուն ներկայացվող պահանջները, մարդու գնահատման չափանիշները: Հիմա արդեն «քրտնաթոր», «անձնազոհ», «անձնվեր», «քրտնաջան», «հայրենանվեր» ածականները չէ, որ պետք է արտահայտեն մարդու էությունը այն պարզ պատճառով, որ ժամանակակից մարդուն դժվար է պատկերացնել առանց ինքնահաստատման, գիտելիքների ու փորձի կուտակման: Եվ այսօր գրել մարդու մասին հին եղանակով, առնվազն միամտություն է: Դժբախտաբար, մեր խմբագրությունները շարունակաբար հեղեղվում են հենց այդպիսի նյութերով:

Կյանքում կաղապարներ չկան, ինչպես չկան նույնօրինակ մարդիկ ու կոլեկտիվներ: Կա անցյալի բեռ, կա կաղապարված գրելաձև, ստանդարտ մոտեցում կյանքի երևույթներին ու մարդկանց նկատմամբ: Ահա սրանից է, որ պետք է ձերբազատվենք: Նա ով չի գնում այս ուղիով, այսօր կամ վաղը, կամա թե ակամա պետք է հրաժեշտ տա ժուռնալիստիկային:

Արտադրության ավտոմատացման և արտադրանքի ստանդարտացման արդի պայմաններում աստիճանաբար սղվում է միայնակ մտածող, համարյա միայնակ գործող շարքային հերոսների այնքան տրադիցիոն, այնքան տեսանելի շրջանակը: Հիմա արդեն արտադրության առաջատար ճյուղերում այդ շարքայինների «հերոսականը» այնքան էլ տեսանելի չէ: Մարդու մտորումների ու ջանքերի արդյունքը թաղված է մի ինչ-որ մեքենայի կամ ավտոմատ սարքի հարյուր կամ հազարերորդ, գուցե և երկրորդական հանգույցի մեջ, կոլեկտիվ աշխատանքի ընդերքում ,և, թվում է, գրչի սովորական շարժումներով, իսկապես մարդուն վեր չես հանի: Գուցե հենց այդ է պատճառը, որ մամուլի էջերում ու եթերում չի երևում ավտոմատ գծերի մոտ կանգնած աշխատավոր մարդը, հաշվիչ մեքենաների ծրագրողը այս կամ այն հանգույցի կարգավորողը: Սրանք հիմա արդեն եզակիներ չեն, իսկ հեռանկարում կդառնան հասարակության արտադրողական հիմնական ուժը: Եթե այսօր չմտահոգվենք, ապա ինչպես և ում մասին պետք է գրենք վաղը:

Մեր աշխարհայացքին ու սոցիալիստական իրականությանը խորթ է այն ըմբռնումը, թե ատոմի ու ավտոմատացման դարը, անհատի փոշիացման ու անհետացման դար է, այն պարզ պատճառով, որ մարդուն մենք գնահատում ենք ո՛չ թե իրապաշտության պատվանդանից, այլ իր իսկ մարդու մարդկային էության, որպես հասարակական էակի զարգացման տեսանկյունից: Ուրեմն, մեր ժամանակակիցներին կարելի է իսկապես մեծարել այն կոլեկտիվի գաղափարական, բարոյական, աշխատանքային նկարագրի հենքի վրա, ուր ծնվել, ձևավորվել և իմաստնացել է նա:

Աշխատավորական կոլեկտիվները, Լ. Ի. Բրեժնևի բնորոշմամբ, սովետական մարդկանց աշխատանքային և հասարակական ակտիվությունը բարձրացնելու պայքարի կարևոր ասպարեզ է: Այստեղ են ձևավորվում աշխատավորների նոր, սոցիալիստական հատկությունները, ստեղծվում բարեկամության և ընկերական փոխօգնության հարաբերությունները: Ամեն մեկի պատասխանա-



տվությունը կոլեկտիվի առջև և կոլեկտիվի պատասխանատվությունը յուրաքանչյուր աշխատողի համար՝ ահա մեր ապրելակերպի անքակտելի գիծը: Հիմնականում այստեղ, աշխատանքային կոլեկտիվում է կոփվում այսօրվա և գալիք օրերի ամենամեծ գանձը՝ մարդկային հարաբերություններով հարուստ մարդկայնությամբ գեղեցիկ անհատը: Լինել մարդկային նոր, կոմունիստական բնավորությունների հետախույզն ու պրոպագանդիստը՝ սա է ժուռնալիստներիս տուրքը գալիքին:

## ԳՈՐԾՈՎ ԵՎ ԱՊԱԳԱ ԳՐՉՈՎ

ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ հավաստում է, որ յուրաքանչյուր 7—10 տարվա ժամանակահատվածում կրկնապատկվում է մարդկության ձեռք բերած գիտելիքների ընդհանուր ծավալը: Այս փաստը ուրախացնում է որպես մարդկային մտքի ու գործի անսահմանափակ հնարավորությունների վկայություն, բայց և սթափ խորհրդածությունների տեղիք է տալիս: Արդյոք մի կյանքը բավակա՞ն է ձեռնհաս մասնագետ դառնալու համար:

Տնտեսության ոլորտում այս խնդրի լուծումն ընթանում է արտադրության մասնագիտացման և կոոպերացման ուղիով: Այդ հունով է ընթանում նաև ռադիոյի և հեռուստատեսության զարգացումը: Միայն այս տարի ռադիոյի մանկապատանեկան և երիտասարդական հաղորդումների խմբագրությունների բազայի վրա ստեղծվեց երկու գլխավոր խմբագրություն՝ իրենց ճյուղային բաժիններով: Գրական-գեղարվեստական հաղորդումների գրականության ու արվեստի խմբագրությունը երկփեղկվեց հայ գրականության ու արվեստի, սովետական և արտասահմանյան ժողովուրդների գրականության ու արվեստի խմբագրությունների:

Մասնագիտացումը, թեպետ որոշ առումով նեղացնում է խմբագրությունների գործունեության շրջանակը, բայց ռեալ հնարավորություն է ընձեռում ավելի բազմազան ու բովանդակալից դարձնելու հաղորդումները, հենց այդ շրջանակի ներսում:

Չմանրատել, չցրել ստեղծագործող մարդու ուժերը, բազմապիսի ու բարդ պրոբլեմների միջև՝ այս է ժամանակի պահանջը: Հետևաբար, արտադրության մասնագիտացումը տրամաբանորեն հանգեցնում է մասնագիտացված կադրերի պահանջին: Այս խնդրի անտեսումը ժուռնալիստիկայի ասպարեզում նույնպես հղի է տխուր հետևանքներով: Այսպիսի մի փաստ: Մեր հաղորդումների զգալի մասը լսելի չէ, ոչ թե այն պատճառով, որ թեման չի հետաքրքրում ունկնդրին, այլ պարզապես ժուռնալիստը ձեռնհաս չէ մասնագիտական գրավչությամբ մատուցելու այն:

Մասնագետ ժուռնալիստների եթերում հանդես գալը ռադիոն ու հեռուստացույցը կձերբազերծեն դիլետանտության ծանր բեռից, որը կպահանջի արտահաստիքային հեղինակների ավելի մեծ ընդգրկում: Սա նոր խնդիր չէ, բայց այսօր նորովի է ծառանում մեր առաջ: Որքան ընդլայնվում է գիտելիքների ծավալը, այնքան արագանում է գիտության ու արտադրության տրոհումը նոր բաժինների ու ճյուղերի՝ հետևաբար, մեծանում է նաև մասնագետ հեղինակների կարիքը: Խոսքը սովետական թղթակցական ակտիվի համալրման, առավել ևս հաշվապահությամբ առաջնորդվելու մասին չէ: Հեռանկարում մեր պրոպագանդան ավելի և ավելի պետք է կողմնորոշվի դեպի բազմակողմանիորեն

պարզացած ու կրթված մարդկանց լսարանը: Իսկ այդպիսի լսարանին՝ «Թող հեղինակը բերի, մի բան կսարքենք» համքարական գործելակերպով չես գոհացնի: Ուրեմն, գործի հաջողությունն ապահովելու համար ժուռնալիստների խնդիրն է՝ արդեն այսօրվանից լրջորեն հոգ տանել այնպիսի հեղինակների ներգրավման մասին, որոնք ո՛չ միայն տիրապետում են անհրաժեշտ գիտելիքների, այլև գրելու հակում ու շնորհք ունեն: Սովորել ու սովորեցնել՝ գրչի ու գործի վարպետների այսպիսի համագործակցության պայմաններում միայն ժուռնալիստիկան կլինի մեծ իրագործումներին համընթաց:

Ժուռնալիստը պետք է գիտենա ու խորապես գիտակցի, որ ինքը գործիչ է: Եվ որպեսզի նա բարոյական իրավունք ունենա գրելու, պետք է մշտապես գտնվի իրադարձությունների շրջապտույտում, դառնա նորի, առաջավորի ջատագովն ու իմաստավորողը: Զգտի այն բանին, որ բոլոր բանվորները, կոլտնտեսականները, մտավորականները դառնան կուսակցության քաղաքականությունն իրականացնող գիտակից մարտիկ, լիովին դրսևորեն իրենց ունակությունները, նախաձեռնությունը, տնտեսական ձեռներեցությունը: Դրա համար պետք է, որ ժուռնալիստն անձամբ կամ իր ստեղծած թղթակցական ակտիվի միջոցով գիտենա ամեն մի կոլտնտեսության, ձեռնարկության, ուսումնական, կուլտուրական հաստատության, շրջանի, գյուղի, քաղաքի, հանրապետության գործերի վիճակը, գործարար կապեր հաստատի կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, սովետական ու վարչական օրգանների հետ:

Որքան մեծանում ու բարդանում են երկրի, ժողովրդի առջև ծառացած խնդիրները, այնքան ավելի նշանակալից է դառնում ժուռնալիստ կազմակերպչի դերը: Երևույթները, իրադարձությունները ուսալ սկզբնավորման պրոցեսում, լինել այդ պրոցեսի ակտիվ մասնակիցը և ապա գրիչ վերցնել՝ այսպիսին պետք է լինի ստեղծագործական բնականոն ընթացքը:

Մեզ՝ ժուռնալիստներիս համար կենսական նշանակություն ունի ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի առաջադրած հետևյալ խնդիրը՝ «Կուսակցությունը շատ կարևոր է համարում, որ կոմունիստները հաստատակամորեն տիրապետեն մարքսիզմ-լենինիզմի տեսությանը, հասարակական զարգացման օրենքների իմացությանը, կարողանան վստահորեն կողմնորոշվել կյանքի նոր երևույթների մեջ, ճիշտ գնահատական տան դրանց և գործնական ճիշտ հետևություններ անեն»:

Գործով և ապա գրչով՝ այսպիսին պետք է լինի կոմունիստ ժուռնալիստի, ժուռնալիստ քաղաքացու, ժուռնալիստ մտածողի նշանաբանը:


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции.— Ереван-33, Барекамутян, 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03441 Պատվեր 1193 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 12.300 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 17/VIII 1971 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Իսահակյան փող. № 28:





## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Էնգելս Ֆ.*— Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը: *Մ.,* Политиздат, *1970, 150 էջ:*

Էնգելսը և պատմության խնդիրները: *Հոդվածների ժողովածու: Մ.,* «Наука» *հրատ. 1970, 440 էջ:*

*Լենին Վ. Ի.*— Լև Տոլստոյը որպես ռուսական հեղափոխության հայելի: *Մ.,* Политиздат, *1971, 23 էջ:*

*Լենին Վ. Ի.*— Մեր օրերի գլխավոր խնդիրը *(Մանկական «ձախության» մասին և մանրբուրժուականության մասին): Մ.,* Политиздат, *1971, 40 էջ:*

Վ. Ի. Լենինի աշխատությունների ժողովածու միջնակարգ դպրոցի և միջնակարգ մասնագիտական դպրոցի աշակերտների համար: *Մ.,* Политиздат, *1970, 496 էջ:*

Վլադիմիր Իլյիչ Լենին: *Կենսագրական ժամանակագրություն: 1870—1924: Հատոր առաջին: 1870—1905: Մ.,* Политиздат, *1970, 12, 627 էջ:*

*Կրուպսկայա Ն. Կ.*— Լենինի մասին: *Հոդվածների և ելույթների ժողովածու: Մ.,* Политиздат, *1971, 304 էջ:*

Աշխարհի երկրները: *Քաղաքական-տնտեսական համառոտ տեղեկատու: Մ.,* Политиздат, *1970, 432 էջ:*

ՍՍՀՄ արտաքին քաղաքականության վավերագրեր: *Մ.,* Политиздат, *1970, 920 էջ:*

Արտասահմանյան պետությունների հետ ՍՍՀՄ կնքած գործող պայմանագրերի, համաձայնագրերի և կոնվենցիաների ժողովածու: *Մ.,* «Международные отношения» *հրատ., 1970, 661 էջ:*

*Լեյյուշկո Դ. Դ.*— Մոսկվա—Ստալինգրադ—Բեռլին—Պրագա: *Հրամանատարի նոթագրություն: Մ.,* «Наука» *հրատ, 1970, 391 էջ:*

ՍՄԿԿ պատմության սեմինար պարապմունքների վերաբերյալ: *Ուսումնական ձեռնարկ բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատությունների համար: Մ.,* «Высшая школа» *հրատ., 1970, 287 էջ:*

Դասախոսություններ գիտական կոմունիզմի մասին: *ՍՄԿԿ ԿԿ առընթեր բարձրագույն կուս. դպրոցում ղեկավար կուսակցական ու սովետական կադրերի վերապատրաստման դասընթացների նյութերից: Մ.,* Политиздат, *1971, 264 էջ:*

Քրեստոմատիա դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի: *Օգնություն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների ունկնդիրներին: Մ.,* Политиздат, *1971, 384 էջ:*

*Կոժևնիկով Ֆ. Մ. և Շարմազանաշվիլի Գ. Վ.*— Միավորված ազգերի կազմակերպության միջազգային դատարանը: *Կազմակերպումը, նպատակը, գործունեությունը: Մ.,* «Международные отношения» *հրատ., 1971, 160 էջ:*

*Կումբս Ֆիլիպ*— Կրթության ճգնաժամը արդի աշխարհում: *Սիստեմային վերլուծություն: Մ.,* «Прогресс» *հրատ., 1970, 264 էջ:*

*Այս մենագրության մեջ ուսումնասիրված է կրթական սիստեմի վիճակը ամբողջ աշխարհում, հիմնականում զարգացած կապիտալիստական երկրներում, հատկապես ԱՄՆ-ում և նոր զարգացող երկրներում:*

*Նիկոլսկի Ն. Մ.*— Գիտա-տեխնիկական հեղափոխությունը. համաշխարհային տնտեսությունը, քաղաքականությունը, բնակչությունը: *Մ.,* «Международные отношения» *հրատ., 1970, 280 էջ:*

Պատանի աթեիստի գիրքը: *Մ.,* «Просвещение» *հրատ, 1970, 424 էջ:*

*Մագիլևսկի Ս. Լ.*— Ինժեներ Կրասինի կոչումը: *Մ.,* Политиздат, *1970, 128 էջ:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՈՒՆԻՎԵՐՍԱԼ ՏՈՄՈԳՐԱՖ

*Սովորական ռենտգենյան ապարատը կարող է տալ հետազոտվող օրգանի միայն ընդհանուր պատկերը։ Բայց ինչպե՞ս հայտնաբերել դրա տեղն ու չափերը, եթե վնասվածքը գտնվում է թոքերի կամ որևէ օրգանի խորքերում։*

*Ստեղծված է հայրենական առաջին ունիվերսալ տոմոգրաֆը։ Դրա հարմարավետ, «սահող» սեղանը հնարավորություն է ընձեռում ուսումնասիրելու ցանկացած օրգանը՝ առանց հիվանդին մըտցընելու ռենտգեն սարքավորման մեջ։*

*Տոմոգրաֆն ունի հատուկ սարք, որը նվազեցնում է ճառագայթային ներգործությունը բուժսպասարկող անձնակազմի վրա։ Ավտոմատացված է տոմոգրաֆի կառավարումը հեռավորության վրա։ Մասնագետների կողմից այն արժանացել է բարձր գնահատականի, քանի որ դրանով հնարավոր կլինի կատարել ցանկացած օրգանի շերտավորված ռենտգենագրեր։*

*Այժմ բժշկական տեխնիկայի՝ Կիևի արդյունաբերական միավորումն սկսել է տոմոգրաֆի սերիական արտադրությունը։*

## ՀԱՏԻԿԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ՉՈՐԱՑՈՒՄԸ ՄԵԿ ԱՊԱՐԱՏՈՒՄ

*Վերջերս ժողովրդական տնտեսության նվաճումների համամիութենական ցուցահանդեսում ցուցադրվեց թմբկային հատիկավորիչ-չորացուցչի մակետը, որն ստեղծել է քիմիական մեքենաշինության համամիութենական գիտահետազոտական կոնստրուկտորական ինստիտուտը։ Այդ ապարատը՝ մանիպուլյատորը, նախատեսված է ապրախյուսից հատիկավորված ու չորացված պարարտանյութ ըստանալու համար։ Այս ապարատը մեկ ժամում արտադրում է 10—18 տոննա պարարտանյութ։ Ներկայումս գործող թմբկային ստանդարտ չորացուցիչները հեշտությամբ կարելի է վերասարքավորել, դարձնել հատիկավորող չորացուցիչ, մանավանդ որ այդ մոդեռնիզացված ապարատի կիրառմամբ տարեկան տընտեսվում է 100 հազար ռուբլի։*

## ԹՈՒՅՆԸ ՑԱՎԱԶԵՐԾԻՉ

*Ճապոնական ֆուգու ձուկը, ինչպես հայտնի է, խիստ թունավոր է։ Նրա մեջ եղած տետրոդոտոքսինը թույն է, որ 400 անգամ ավելի զորեղ է ստրիխնինից, միաժամանակ ցավազերծման հիանալի միջոց։ Ֆուգուի այդ հատկությունն ուսումնասիրվել է ԱՄՆ-ում։ Օրեգոնի համալսարանի դոկտոր Ջոն Քեանը հայտնում է, որ շուտով կավարտվեն այդ դեղամիջոցի ստացման լաբորատոր աշխատանքները. այն լիովին ցավազերծում է և զերծ է որևէ վնասակար ներգործությունից։*

## «ԽԱՐԴԻՄԵՆ»

*Ամերիկյան «Ջեներալ էլեկտրիկ» ֆիրմայի ինժեներներն այժմ աշխատում են «Խարդիմեն» մանիպուլյատորի ստեղծման վրա, որը մի ձեռքով, առանց դըժվարության, բարձրացնում է 340 կիլոգրամ ծանրություն։ Այդ մանիպուլյատորը արտաքուստ մի կմախք է, որ ճշգրիտ պատճենում է դրանում գտնվող օպերատորի բոլոր շարժումները և մի քանի անգամ հզորացնում դրանք։ Ամեն մի ձեռքն ունի 8 միակցում, որոնք ապահովում են նրա մեծ շարժունությունը։ Խարդիմենն ունենալու է երկու ոտք, երկու ձեռք և կարող է բարձրացնել մինչև 680 կիլոգրամ բեռ։*